# ԼՐՈՒՄՆ
# ԼԻԱԿԱՏԱՐ ՎԱՐՈՒՑ
## ԵՒ ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԵԱՆՑ
## ՍՐԲՈՑ.

Որայս են համառօտ Ճառք 'ի մէջ Տէրունական տօնից, ընդ կարգի Տնօրէնութեանց :

Յորս և Համեմատաբար Վարուց սրբ և վերջին մերոյ Յովհ. Քահ., և Սօրին Յովհ.' որք Ածածնի :

'Ի Հ. Մկրտիչ Վրդպտ Աւգերեան, 'ի միաբանութենէ մեծին Մխիթարայ Աբբայ հօր :

Հրամանաւ Տն Տն Ստեփաննոսի Ագոնց' Աբբայի և Արքեպիսկոպոսի :

Ա[...] ածաւէր Մանուկ Աղայի Կարնեցւոյ մահտեսի Ածատուրեան :



## ՀԱՏՈՐ. ԺԱ.

Տօնական Ճառք :

Համանգերձ յաւելուածով Ներածութէ, որ է բովանդակութիւն գործոյս ողջոյն :

---

1814. 'Ի ՎԵՆԵՏԻԿ. ՌՄԿԳ.

'Ի Վանս Սրբոյն Ղազարու :



# ՏՕՆԱԿԱՆ ՃԱՌՔ

Ըստ կարգի Տնօրինական խորհրդոց ։

## ՃԱՌ. Ա։

### Ի Յղութիւն անարատ կուսին Մարիամու 'ի յաննայէ ։

ՏՕՆԵԼ ԵԿԵՂԵՑԻ ուրախութեամբ՝ ոչ միայն զօր գաբրիէլեան աւետեաց, յորում յղացաւ կոյսն անարատ անարատաբար և անսերմնապէս զա̃ծորդին Հոգւովն ս̃բվ, այլև զօրն՝ յորում ինքն անարատն մարիամ յղացաւ 'ի մօրէ իւրմէ յաննայէ գործակցութեամբ Հօր իւրոյ յովակիմայ. այս է օր ստեղծմանն մարիամու, և հիմնարկութե̃ն նորոյ Ծ̃ի ։ Աւետմանն օր՝ յղութի̃ն յ̃սի, իսկ այսօր յղութի̃ն կուսի. յայնմ աւուր ա̃ծ մարդացաւ, իսկ այսօր ծնօղ ա̃յ հաստատեցաւ. և եթէ այս ոչ լինէր, և ոչ բանն մարմին լինէր. եթէ ոչ աննա աւետեաց յղանայր զմարիամ, զիա̃րդ մարիամ աւետեաց յղանայր զա̃ծ.

զեան . ապա ուրեմն ոչ օրհնեալ է պտուղ ո-
րովայնին մարիամու ։ Ոչ , օրհնեալ է և նոյն
Մարիամ 'ի կանանց՝ պտուղ որովայնին ան-
նայի . և ոչ ուրախուն տիեզերաց աւետա-
րանեցաւ մարդեղուն բանին 'ի կուսէն , նոյն-
պէս և եղանուն կուսին զաւակ յովակիմայ
և աննայի՝ սկիզբն և արմատ ուրախութե-
մերոյ ճանաչի . վսյ և խրատամբք եղև տօ-
նելը՝ յերկրորդ գոգցես կարգի տէրունական
տօնից՝ յետ առաջնոց գլխաւորագոյն տօնա-
խմբութեց :

Ապաքէն յիշատակ լինի առ ոմանս և յղուն
կարապետին յովհաննու յեղիսաբեթէ , իբ-
րև սուրբ սկզբնաւորիչ տիեզերական ցըն-
ծուեն . զի ոչ ծագումն արուսեկի՝ աւետա-
բեր է ծագմանն արևու , նոյնպէս և եղանուն
ոչ կարապետին՝ մարդեղութեան բանին :
Այլ ոչ անբաւ միջոցաւ տարատարահի աշտե-
ճան յովհաննու 'ի տիրամօրէ , ապա և յարգ-
տօնի միոյն 'ի միւսոյն նոյնպէս ։ Ոչ ի յով-
հաննէս ճրագ , իսկ մարիամ մայր լուսոյ
և ծնօղ արեգականն արդարութե . յովհան-
նէս մարգարէ՝ մեծ 'ի ծնունդս կանանց .
մարիամ օրհնեալ 'ի կանանց՝ թագուհի ան-
սանողաց , և մայր մարգարէութե և տոն մար-
գարէից . յովհաննէս սպասաւոր թագաւորին
երկնաւորի , մարիամ դուստր և հարսն և
մայր և դշխոյ՝ երկնի և երկրի արքայուհի .
և որ յառաջիկայս հայր խորհուրդ առաւել ,
մկրտիչն յովհաննէս յորովայնի մօր դրդի 'ի
ձեռն կուսին . իսկ կոյսն անարատ՝ ոք սանեղ-
ծեալ

ծնեալ յորովայնի մօր իւրոյ ․ վ̃յ և յղութի̃նն անարատ կոչի և է ․ զոր արժան է պանծացուցանել յաւուրս հանդիսի ։

Մարիամ եթէ անարատ մայր, ապա և անարատ զաւակ ․ եթէ յղացաւ անարատաբար ներգործապէս, և զնոյն վայելչապէս ծնաւ, ապա և յղացաւ անարատաբար կրաւորանօք, և ն̃յ ծնող սահմանեցաւ վայելչապէս՝ ծննդեամբ 'ի յանձնայէ ։ Յայս ածցես ինձ զեկեղեցւոյ ըղձաձայնութիւն ․ Անթառամծաղիկ, անդաստապարտ շառաւիղ ․ դու ծաղիկ անթառամ տոհմի սեռիս մարդկութեան, և շառաւիղ օրհնութեան նախնոյ ծնողին մեր բնութեան ․ և՝ անդաստան մաքուր 'ի փշոց մեղաց ․ և՝ ամպ թեթև լուսաւոր, անընդդունակ խոնաւութեան ․ և՝ ամպ թեթև յերկրային ցանկութեանց 'ոք կոյս ։ Եդ և զանհրաժեշտ առածս հոգեկիր հռետորին գրիգորի ․ Մեղուցելոյ կնոջն առաջնոյ՝ առանց յանցանաց զաւակ գովեցաք, և ն̃մ անբծից ընտրութեան՝ պսակ սրբութեան դու դաւանեցար ։ Անկըցորդ 'ի մասնէ հողածնելոցս հասարակաց ․ ոչ բերող ծանրութեան բնակակիր համաստեղծս կարեաց, այլ քրովբէօրէն հրաբերան թռչող նշուլից ։ Իսկ զայս ն̃մ իմանամք պաշտօնեայքս լուսածին կուսին, նաև յորժամ առէպ նուագեմք, սրբուհի անարատ, անարատն խսկուհի ․ մաքուր աղաւնի, և հարսն երկնից մարիամ ։ Եդ և զասելըն մաքրագարդեալ կն̃ սրբեալ յորովայնէ, ոչ ը̃ մարգարէիցն երեմիայի և յովհաննու՝ յանսրբութէ

'ի

ծնունդն . մեք զաստուածընկալս գիտեմք նոյ և կա-
րելի և կամելի . իսկ որ զհակառակն խոր-
հին , տեսցեն՝ թէ կարօղ իցեն իրաւամբք
ժխտել նոյ կամ զկարելին կմ զկամիլն :

Սմանք առ այս զի՞նչ . ենթադրեն՝ ոչ եթէ
զած անկարող գոլ , այլ՝ զիրն անկարելի ըստ
ենթադրութեն նոյ . զի մի հակասութի 'ի
ներքս մտցէ . զի որովհետև ըստ մարմնոյն նոյ՝
նմ ադամորդի ազգամանն մեղաւ , կմ գրե-
ցաւ ապստամբ յնոյ , և շաղախեցաւ զանգ-
ուածն ադամեան ողջոյն , ապա և կոյսն ըստ
որում դուստր ադամայ ոչ մնայ աանն արտա-
քոյ վճռոյս . ապա թէ ոչ՝ լինի նմ ստորասա-
կան , և ոչն բացասական . որ է ըստ իմաստա-
սիրաց հակասական :

Տէր պղնձի նմանէր դու՝ յետինդ գիտութ
'ի տխմար անուանեալ ժողովրդեան , միայն
թէ իցես նախապատիւ 'ի ջերմեռանդն պաշ-
տամանն անարատ կուսին . գոգջի՞ր . զհակա-
սութեան մարդկան զկանոնս անփիտանեամ ,
բայց ոչ և յայսմ՝ տգիտանեամ , զի նծ ամե-
նակալ և ամենաբարի բազում անգամ արար
և առնէ ինչ ինչ 'ի միում կարգի արտաքոյ
նոյն կարգի , և այնպէս լինի մին արտօնութ
ըստ առանձնաշնորհ ձրիւք անմաան 'ի վճռա-
կէ վճռականաց իւրոց . քն նմ հուր է այրե-
ցող . բայց արար նծ , զի հուր հնոցին բա-
բելոնի , և մորենւոյն՝ որ էր տիրապէս օրի-
նակ կուսին , իցէ ոչ այրեցող . վս զի նր է
բնութե և շնորհաց . վնյ և զայրեցող բնու-
թին անկիզանող առնէր . զջուրն կարկա-
ռա

ռակոյտ ապառ , և 'ի միջի ջուր բղխեցոյց , որ և այս օրինակ կուսական ծննդեան . իսկ Նշանակ անապականութեան հոգւոյն և մարմնոյն՝ կրկնակի 'ի գեղմն գեդէոնի . է զի յամ վայրս տեղացեալ՝ անխոնաւ պահեաց զգը-զայթն . և է զի 'ի ցամաքուտ վայրի զգեղմն ևեթ կացոյց ջրալից , իմա՛ զմարիամ շնոր-հալից՝ ազատ 'ի հասարակացն արկածից , Լուսնարան եօթնարփին շնորհաց հոգւոյն ,
և վերընկալ ածայնին բանին :

Ա՛ռ և Թանձրագոյն օրինակ . 'ի սաստկա-սառոյց վայրս 'ի ձմերայնի ոչ միայն ջուրք պա-ղին , այլև գինին ողջոյն 'ի կարասն . բայց սակայն 'ի միջակին մնայ բնաւորական ջեր-մութիւն մասն անարատ գինւոյ . և զիա՞րդ չմնայր վառարան սիրոյն մարիամ անարատ 'ի պաղիլ անդ բնութեամբ 'ի սիրոյն այ : Ա՛ռ Թանձրագոյն քեզ օրինակ . եթէ կապտեա-ցէ ոք 'ի ձեռաց քոց զհարիւր ոսկին , դու մարդկօրէն ուժով տկարութեանդ բուռն առ-նես և հնարիւ գէթ զմին պահել քեզ 'ի բուռին ; մանաւանդ եթէ մին այն առաւել է արժողութեամբ քան զիննսուն եւ իննն . քանի՞ ևս ած զկոյսն , որ էր միակ ընտրեալն և սահ-մանեալն 'ի մայրութի իւր , կարօղ էր և կա-մէր պահել , զի մի՛ անկցի 'ի ձեռս աներևոյթ
աւազակապետին :

Տե՛ս , զի՞նչ ասէ գիր . վաթսուն են թագու-հիք , և ութսուն հարճք , և օրիորդք՝ որոց ոչ գոյ թիւ . մի է աղաւնի իմ , կատարեալ իմ . և զիա՞րդ մին անհաման և անհամեմատ

գտաւ

գտաւ 'ի կանանյս ․ ոչ ապաքէն յօրինակ կուսին ․ որ̃պս և 'ի վ̃րի բերէ ․ ամենևին գեղեցիկ ես մերձաւոր իմ, և արատ ինչ ոչ գոյ 'ի քեզ ․ և թէ՝ մայր քո ծնցի մարմին անարխեղծ ։ Եւ այն զի՝ ասացեալ էր սողոմոնի այլուր, եթէ յարանց զմի 'ի հազարաց գտի, 'ի կանանց և ոչ զմի ․ այլ ա̃ծ եգիտ զխնդրելին ․ զի այնպիսի իսկ վայել էր մեզ տիրամայր կոյս՝ նոր և անարատ, զատեալ 'ի մեղաւորաց ։

Ապա ուրեմն կարող էր ա̃ծ և կամեցող պահել զմարիամ 'ի սկզբնական մեղացն արատաւորութե̃՝ առանց իրիք հակառակե̃ ․ այնպէս՝ որ̃պ պահեաց զանարատ կուսութի̃ նր̃ 'ի յղանալ և 'ի ծնանել զա̃ծորդին ․ զոր եթէ ոչ հաւատքն ուսուցանէր, թերևս հակառական իսկ կարծիւր ․ ուր գիտէ ա̃մ բնախօս, թէ ա̃մ կին մայրանայ կորստեամբ կուսական ծաղկի ․ բայց սակայն ը̃ն հաւատոց եղև ոմն կին՝ մայր, անթառամ և անխախտելի կուսութբ̃ ․ վ̃ն զի եղև ա̃յ մայր, և ա̃ծ եղև մարդ 'ի կնոջէ ․ որ 'ի վեր է քան զմիտս և զխորհուրդս ․ ուստի և հրաշափառ հաղորդութիւք յատկութեց 'ի քս̃՝ ը̃ն ձայնին հակասականք, անմեղն եղեալ, անչարչարելին չարչարեալ, անմահն մեռեալ և կենդանի ․ որ̃պ և յահաւոր խորհուրդ ամենանոր հաղորդութե̃՝ անկարելիք ներգործութբ̃ եղանին հանապազօր ։ Եւ զի ա̃ծ զայս ա̃մ անհնարինս հնարաւորեաց, զի ոչ տկարասցի առ ա̃յ ա̃մ բան, զիա̃րդ երկմտեսցի ոք ընդ-

կա

հնարի փրկել, և ապա զայլս . և կամ եթէ ազգ. նր և տուն նր իցէ աննշան և անշուք, զխոստացեալն 'ի ձեռն նշանին նշանաւոր առնէ, զանազան ազատագրէ, զի արժանի լիցի ինքեան : 'Ի փոքր օրինակէս զմեծն իմասջիր խնամակալութն այ 'ի վր հանդերձեալ հարսին իւրոյ և մօր իւրոյ՝ անարատին մարիամու . զոր այլ 'ի յաւիտենից սահմանեալ էր պահել ինքեան, նոյնպէս և պահեաց 'ի ժամանակի՝ նախափրկելով շնորհօք և ազատագրելով . սիրեաց զնա 'ի յաւիտենից, և միշտ սիրելի ծանեաւ . մայր այ վճռեաց զնա գոլ, և միշտ իբրև յածամայր հայէր 'ի նա ակն ամենատես . վսյ և էր կոյսն մաքուր՝ միշտ անարատ յաչս այ՝ 'ի դիտմանն և 'ի գործադրութն, սուրբ և փրկեալ նախագրաւ փրկութբ . սուրբն վն 'ի վր բերէ նր ածածինն . * հայեցաւ 'ի խոնարհութի աղախնոյ իւրոյ . արար ինձ մեծամեծս հզօրն . և նր է անուն նր ‖ :

Ցոյց է ձեզ ով տօնասէրք և ածասէր պաշտօնեայք կուսին՝ այսչափ ինչ գիտել 'ի գիտելեաց . միայն միայն զպտուղն քաղել տօնիս յածատուենկ 'ի դրախտէս . զի թէ պարգևաւ տօն յղութն կոչեսցի անարատ կուսին, և եթէ տօն անարատ յղութն անուանեսցի կուսին, չիք ձեզ խտիր կմ օգուտ 'ի զանազանութէ այսր առ ածաբան վճռօ հետաքննելոյ, որ առ անձն կուսին հայի . այլ ձեր օգուտն է հայել յանձինս ձեր : Խնդակից լերուք ածամօր կուսի՝ ընդ անարատ

տեղծումն նո՛ր ։ ուրախակի՛ց և ծնողաց նո՛ր ընտրելոց յովակիմայ և աննայի ։ այլ առաւել նմանօղ լերուք՝ անարատ քաղաքավարութե ծնողացն , և՛ս առաւել ծնիցելոյն անարատ կուսի :

Հապա ո՜վ կարեւոր յորդորանացս տօնիս՝ առցուք օրինակ յանարատ կուսէն՝ յանփորձական օրինողէն՝ յանվտանգելի ապաւէն , մաքուր և անարատ վարուք փայլել համապատաշի նմայ ։ Լուացեալքս և սրբեալքս և արդարացեալքս 'ի սկզբնական արատոյ մերղատին ծննդեամբ որ աւազանին՝ անձնապահ լիցուք 'ի ներգործական մեղացն աղտեղութե ։ և եթէ աղտեղեցաք զպատմուճան հոգւոց մերոց , կա՛մ թէ պատառեցաք խակ զլխովին , նորոգ յղասցուք հոգեպէս , նորոգ ծնցուք հոգեւորապէս , և վերստին զգեցցուք զպատմուճանն առաջին՝ ճշմարիտ խոստովանութե և ապաշխարութե , և յայսմհետէ և անդր զգո՛յշ լիցուք անձանց յամե՛ մեղաց , և նախ յառիթից մեղաց ։ զի առիթքն են զգուշալի՝ առ 'ի կարօղ լինել աղատանալ 'ի մեղաց :

Այսմ ծագեաց ո՛չ երկինք պայծառ 'ի յերկրի , և որքան զօր արտափայլեաց զջող շնորհաց իւրոց ո՛չ զլոյս տուէ՞նջենացին ։ մեք եկեալքս նովաւ 'ի խաւարէ 'ի լոյս՝ մի՛ մեղքէն միւսանգամ զանձինս յածեսցուք 'ի խաւար մեղաց ։ նա արեգակնաբար ծագեաց ընդհանրոյս մաքրութե ջինջ յստակութե և անսաղօտ լուսաւորութե , և ժամ 'ի ժամէ վե-

րացեալ և բարձրացեալ՝ 'ի գեղեցիկ կամարն եղև հասու ածամայրութե՝ 'ի գերագոյն գագաթն երրորդ երկնից, ուստի լուսաւոր առնէ միածնիւն իւրով զամ մարդ՝ որ գալոց է յա. մեք գրեալքս նովաւ յորդորս լուսոյ և յորդորս տուընջեան՝ մի տայցուք տեղի խաւարին խորհրդոց խաւարասէր թշնամւոյն: Այսոն մաքուր՝ ոչ միայն բաշտասականաւ, այլ ասէ, մաքրութբ՝ էր կատարեալ անարատ աննշատին 'ի յղութե և 'ի ծնէ, քզի ազատ յամ անմաքրութէ մեղաց, այլև լրութբ գեղապանծեալ դրական մաքրութե, քզի կատարեալ սրբութբ՝ որ 'ի լրութե շնորհաց. մեք եթէ 'ի դրականէն անբաւ տեսանեմք զանձինս, խմասցուք՝ եթէ և 'ի բացասականն պակասիմք. չեմք, ասեմ, ազատ յաղտից և յախտից մեղաց, և զիարդ շնորհօք զարդարեսցուք զհոգիս:

Ո՛ն առեալ, առ սրբուհին անարատ դիմեսցուք՝ աւուրս շնորհին, և բարեխօս ունելով առ նա զծնօղս նր զյովակիմ և զաննա, և զնա առ միածինն իւր և հօր երկնաւորի, մաղթեսցուք մաքրել զմեզ 'ի յաղտոյ մեղաց, և մաքրազարդել շնորհօք նր հոգւոյն. տալ մեզ անարատ լինել յամի, և որբափայլ զարդուք Ձոխանալ ամ առաքինութեց. շուշանափայլ պայծառութբ, վարդագեղ փայլեցութբ, և լուսատեսիլ զուարթութբ ազգի ազգի շնորհաց իւրոց պսակել զմեզ՝ ըստ նմանութե փառաց իւրոց և ածորդւոյն. այլ զի եղիցուք որդիք արժանաւորք մօրն լուսոյ, և

եղ-

եղբարք անդրանկին մերոյ Հարազատի՝ յսի քսի տն մերոյ և փրկչի՝ Նախափրկողի Մօր իւրոյ անարատի . և պարզերես համարձա-կութք մատիցուք յերկնային խորանս՝ հան-դիպել փառաւորութե փառաւորեալ դշխոյիս մերոյ, ցնծալ ընդ փառս նր յաւերժական տօ-նախմբութք ը դասս երջանկաց, և օրհնել և փառաւորել զփառաւորիչն նր զերեքսրբ-եան մի ութի և զմիանական նր երրոր-դութի յաւիտեանս յաւիտենից . ամէն :

---

## Դարձեալ ՚ի նոյն խորհուրդ, ՚ի վերայ բնաբանին .

### Ի.Յ [illegible] ՚ի Ներսեսյ :

Հրաշապայծառ կոյս անարատ, արփիա-գեղ լուսածին մայր անեղ արեգին, առ քեզ են աչք իմ, ՚ի քեզ է ակնկալութի իմ՝ ՚ի դիմաց բոլորից քոց պաշտօնէից, որպ յամ ժամ, եւս առաւել յաւուրս հանդիսի . զի լուսաւոր արասցես զաչս մտաց իմոց, և տա-ցես ինձ բան ՚ի բանալ բերանոյ իմոյ՝ խօսել զքէն զարժանն ըստ կարգի տօնախմբութե յղութե Մօրդ անարատի : Իսկ եթէ ոչ այս, գէթ չխօսել զանարժանն քումդ գերարժա-նապատիւ բարձրութե, մանաւանդ թէ՝ և անսահմանելի վսեմութեդ . որ յամ կողմանց է գերագոյն, ըստ մասամբ է պանծագոյն, և ըստ ամ տեսութե լուսաքուն . և այն՝ ըստ այնմ, որ մեզս է ընդ աղօտ երևելի բացուստ

՚ի բաց և արտաքուստ արտաքս. զի՞նչ ապա պա՛րտ է առնել զներքնոցն և զանտեսիցն, յորս հիմնացեալ են երևելիքն :

Հիմն քո աներևոյթ ո՞րքան է խորանիստ ՚ի խոնարհութե, որ ՚ի վեր ունի զերկնաբերձ շինուա՛ծ հրաշակառոյց ա̃ծամայրութե. արմատ քո անտեսանելի՝ ո՞րչափ արդեօք համայնածաւալ ՚ի խուրապարտիկ առաջս խորին բարեմասնութե, որ ՚ի վեր ունի զերկնատարած վերբերութ̃ն անհասականն տնկոյն՝ որթոյն ճշմարտի, որ է որդի ա̃յ և որդի կուսիդ միածին անճառ : Հոտ անուշութե քումդ սրբութե իբրև ՚ի դրախտէ հոգևոյն ծաւալեալ՝ զմայլեցուցիչ է երկնի և երկրի. զո՞ր ապա ՚ի ներքս ՚ի հոգևոյդ բուրաստանի ընաւորեալ ունիս բուրումն անմահութե : Հոտ հանդերձից քոց՝ քան զա̃մ խնկեղենաց գերազանց. և արդ զի՞նչպիսի իցէ անձնականն անուշութ̃ն մայրօրինակ սրտիդ, որ այսչափ ՚ի մեզ քաղցրանայ յարտաքին վերարկուէս, այս է ՚ի հովանաւորութիւս բազմազեղ քո բարեգթութե :

Եթէ այսչափ ազնուա՛գին, և տիրանիշս անդին զգեստուք պատիս ՚ի հանդերձս ոսկեհուռս զարդարեալ և պաճուճեալ, այս է՝ զարեգակն արկեալ զքև, և զլուսինն ը̃ ոտիւք ստորերատեալ, քանի՞ն իցեն իսկութիք այսոց փառաւորութեց ՚ի ներքին անդսահմանի գոյացութե անձինդ փառաւորելոյ՝ յերկնից արքայէն իբրև դուստր Թագաւորի, հարսն Թ̃րի, և մայր Թ̃րի, ով Թա-

գու-

դուհիդ օգոստափառուհի երկնի և երկրի ։ Զի ոչ վայրապար վկայեաց հոգին . Ամ փառք դստեր թագաւորի ՚ի ներքոյ ։

Ո՞ր այն իցեն ամ փառք , ո՞ տայր մեզ գիտել՝ ով պաշտօնեայք կուսին . զի՞նչ այն իցէ ՚ի ներքոյ , ո՞ պատմիցէ . զի արտաքոյ մերոց մտաց տեսութեց . և ոչ եթէ մերոցն միայն , այլև բազմաչեայ քերովբէից ։ Ամ քանզի ուր անձեռնհաս են միտք , այնչափ հասանել օրէն՝ որչափ և զօրեն , եթէ բնաձիր փութով , և եթէ երկնաձիր լուսով , համարձակիմք ՚ի սիրոյ սրտին բաղձանաց՝ գործակցութբ շնորհաց անարատ կուսի , յորոյ ՚ի փառս հայի բանս , մանր կրկտել զիմաստ դաւթեան ասածին զիւրմէ հարազատ դստերէն մարիամայ , որ և դուստր հօրն երկնաւորի , թէ Ամ փառք դստեր թագաւորի ՚ի ներքոյ ։

Փառքդ անուն՝ նշան է արտաքին՝ ներքին մեծութե . նշան երևեցուցիչ իմիք արտաքոյ՝ բաց յիսկութէ ներքնոյ . մն զի նախ՝ որպէս նոյն ըն ձայնիւն և ըստ իրի՝ փառքն է վարկ , այս է համարումն և կարծիք բարելաւութե . յորմէ և առ հելլենացիս՝ փառք և կարծիք՝ միօրինակ վերաձայնին , տօքսա . և ՚ի մեզ հրաշափառն՝ զգերագոյնն փառօք ; և զարտաքոյ կարծեացն՝ անխտիր ակնարկէ . որ առ հելլենս բառատօքսոս ։

Փառք ասին երկրորդ՝ պանծալի պանծալի ձիրք երևեալք ըն արժանաւորութե յանձին փառաւորելոյն , և գործք արժանիք ճշմա-

րիտ պարծանաց . և ը̄ն այսմ փառքն և պար-
ծանքն նոյնանման երբէք երբէք . որպէս և
հռովմայեցիք զերկպաքանչիւրն միով բացա-
դրեն ձայնիւ , կլօռիա :

Փառք ասին երրորդ՝ շուքն և պատիւն և ա̄մ
գովութիւնք և փառաւորութիւնք ընծայեալք ար-
ժանաւոր անձին՝ եթէ բանիւ և եթէ սպա-
սահարկութ̄բ : Ապա ա̄մ փառք՝ ներքին են
միանգամայն , և արտաքին . ունին հիմն 'ի
ներքս , և զեղուն զիմն արտաքս : Այլ 'ի
դուստր թագաւորի 'ի փառաւորեալ կոյսն
անարատ՝ ասէ հոգին ՛սբ , որ փառօք պսա-
կեաց զնա , ա̄մ փառք են 'ի ներքոյ :

Ո՛վ սքանչելեացս . խորհուրդ ամենահնար
ա̄ծամերձութե̄ գեղեցիկ բովանդակեալ տե-
սանի 'ի խորութե̄ բանիցս . զոր այսպէս ինձ
իմասջի՛ք : Ապաքէն ա̄մ փառք երկրաւո-
րացս՝ առաւել արտաքին են , քան ներքին .
յայտ է 'ի գերապանծ կարծեցեալ փառաց
արքունեաց , որ եթէ ոչ արտափայլեսցէ՝
կա՛մ իշխանութ̄բ 'ի վ̄ր հպատակաց , որ են
արտաքին անձինք , կա̄մ մեծութ̄բ գանձուց՝
որ նոյնպէս արտաքոյ են անձին արքայի , կա̄մ
շքով մեծագին սպասուց և զարդուց , հան-
դերձանաց և հանդերձից՝ որք նոյնօրինակ
արտաքոյ իւր են , ո՞չ և գովութ̄ , երկրպա-
գութ̄ , և այլ ա̄մ նշանակօք պատուոյ՝ որք
արտաքուստ ընծային , ևս առաւել վարկ-
մամբ կա̄մ կարծեօք , որ 'ի միտս այլոց , և ո՛չ
'ի միտս անձին մեծ համարելոյ , լինէր թա-
գաւորն գլխովին ո՛չ եթէ արքայ փառացի ,

կա̄մ

կմ՟ փառաւոր Թգ՟ր, այլև ոչ Թգ՟ր անգամ,
այլ իբրև զմի 'ի ռոսկականաց ։ Ո՛չ այսպէս
է յա՟ծ փառաց Թգ՟րն ․ ա՟մ փառք Նր՟ են 'ի
ներքոյ՝ յիսկութե՟ էութե՟ ինքնաբաւ ա՟ծպե-
տութե՟ ․ և միայն նշանակք փառաց Նր՟ ար-
տափայլեն ո՟պ զարեգակն ։

Յորմէ քաջայայտ է և աներկուանալի, թէ
նա է յորդիս մարդկան և յարարածս ա՟մ ա-
ռաւել ա՟ծամերձ և ա՟ծանման, ոյր փառքն
իցէ առաւել ներքին՝ քան արտաքին ․ իսկ
արդ՝ լսեմք 'ի հոգւոյն ա՟յ, զի ա՟մ փառք ա-
մենասր՟ կուսին են 'ի ներքոյ, ապա չի՛ք ոք
իբրև զնա ա՟ծամերձ և ա՟ծանման, ո՛չ միայն
իսկութե՟ էական ազգակցութե՟ ը՟ ա՟յ՝ բանի՛
ա՟ծամայրութե՟, այլև լրու՟ կատարելութե՟
անձին իւրոյ, որով ընտրեցաւ անարատն մա-
րիամ 'ի լինել դուստր և հարսն և մայր ա՟յ ։
Մինչ զի՝ ո՟պ չի՛ք 'ի մարիամն ամենափառա-
ցի՝ ինչ մի անփառաւոր, նոյնպէս և չի՛ք ինչ
մասն փառաւորութե՟ Նր՟՝ որ չիցէ ներքին և
ա՟ծատիպ ․ փառաւոր է՝ նոյնպ՟ս և ա՟ծային՝
ներքսապէս և էապէս՝ նախասահմանութե՟
Նր՟ ․ նոյնօրինակ և համաքատակ փառաւոր՝
ստեղծագործութե՟ Նր՟ ․ նմանօրինակ փա-
ռաւոր՝ հրաշափառ յղութե՟ և ծննդ՟ նորա՝
ներգործական և կրաւորական ․ յար և նման
և ա՟մ տնօրինականք Նր՟, որ այն իսկ են տնօ-
րէնութիւնք պանծալի զաւակի Նր՟ որ՟ միած-
նին, որոց ա՟ւի գործակից և գործօնեայ
գլխովին ճանաչի մայրն ամենօրհնեալ ։
Այս պարզաբար ասել ․ միօրինակ 'ի ներքուստ

 են

եաց , եթէ մի երկնչիր Մարիամ , զի գտեր շնորհս յԱյ · ոչ եթէ այժմ լինիս , այլ անդըս-տին յերկնաւորէ քումմէ · զի եղեր աս 'ի լինել մայր Այ ։ Նայս թէ ոչ՝ և ոչ զաղաղաւմնս և զերկայինն գերադաշանցէր , որ 'ի շնորհս հաւ-տեցան · ուստի և ոչ զուտաներօք և զդատերօք նոյ զանցանէր՝ յորոց մէն մի խոստավան լինի , և ոչ կարէ ուրաստ լինել , թէ անօրէնութե յղացայ , և 'ի մեղս ծնաւ զիս մայր իմ · և ո՞ւր մնայր այնուհետև զարդարանք պարծանաց տուեալ Մարիամու 'ի Հոգւոյն , եթէ նմ փառք նորա 'ի ներքոյ , եթէ զուգապէս ընդ մեզ հեռի լինէր յԱյ անդստին յեղանութենէ իւրմէ մեղօք հասարակաց , և գերեալ օրինօքն մեղաց · և այսպէս ազատել 'ի գերութէ , մաքրել յաղտոյ , և նորոգել 'ի հնութէ · որ են փառք անփառացիք , հասարակաց՝ հասարակ ։ Զոր ոչ տանի ածել անդամ զմտաւ ընդդամեան ընտանեակն կուսին՝ հրեշտակն 'ի մարմնի սբն Գրիգոր Նարեկացի՝ աղաչեալն 'ի սորոյ կուսական կաթլին անարատ յղացելոյն մարիամու , անկցորդ զնա անուանելով 'ի միամանէ հողածնելոցս հասարակաց · մաքուր որպէս զղայս , անխառն խըրև զօդ · նոյն են և իմաստք երգաղին , անթառամ ծաղիկ՝ անդաստապարտ շառաւիղ · ոչ այլ են և հարցոյն իմաստք 'ի ընդարձանին , նմ փառք գտեր թագաւորի 'ի ներքոյ ։

Գեղեցիկ յանդգնուէ 'ի վր բերեմ · այնչափ պայծառ նշմարել կնձ․ թուի 'ի բանս

յայ-

յայտնութիւն զանարատ յղութիւն կուսին , ('ի
տունչութէ ., որպէս խոստովանիմ յուսով , նորին
անարատ մօր և կուսի ) , մինչ զի զայսօրի-
նակ պարզաբանեալ մերձանեմ . Մեծ փառք
պարծանաց և մեծ փառաւորութի̃ն ն̃ք ա̃ծած-
նի , ք̃ի մօրն ա̃յ երկնաւոր Թ̃գրի , հաստա-
տեալ է 'ի ներքին յայն փառս գոլոյ նորա
դուստր Թ̃գրին երկնաւորի . ք̃ի 'ի ստեղծա-
նիլ և 'ի յղանալ ն̃ր իբրև զաւակ ծնեալ՝ ոչ
'ի մարմնոյ և յարենէ , այլ՝ յա̃յ . ոչ որպէս
դուստր յովակիմայ և աննայի , և սերունդ-
.ադամայ և եւայի , այլ իբրև դուստր երկ-
նից արքայի՝ հօր ա̃յ բարձրելոյ , հանդեր-
ձեալ հարսնանալ հոգւոյն ա̃յ , և մայր լի-
նել որդւոյն ա̃յ ։ Եւ զիա՞րդ այնուհետև
արատ մարդկայինն 'ի կոյսն անարատ . զի
ծնեալն 'ի մարմնոյ մարմին է , և ծնեալն 'ի
հոգւոյն՝ հոգի է . և որպէս ծնեալն յա̃յ գոյա-
ցապէս՝ ք̃ի միածին բանն հայրական , ա̃ծ է
ճշմարիտ , նոյնպէս և ծնեալն յա̃յ բարոյա-
պէս՝ ք̃ի միամայրն մարիամ սահմանեալ 'ի
մայրութիւն ա̃ծորդւոյն , ա̃ծային է բոլորովին
ստուգապէս . և եթէ ոչ լինէր այսպէս փա-
ռաւորութիւն ն̃ր ներքին , ք̃ի բոլորովին ա̃ծայ-
ին , ոչ լինէր արգելօք և ա̃ծածին . այլ զի
ծնաւ նախ յա̃յ հոգեպէս , մարթացաւ և
զա̃ծ ծնանել մարմնապէս , և լինել ազգա-
կից ա̃յ ճշմարտապէս ։ Եւ վ̃նկ ճշմարտեալ
տեսանեմք այլևայլ տեսութ̃բ զգերահրաշ
բանս գրոց 'ի վ̃ր ա̃ծորդւոյն և ա̃ծամօր .
Ո՞վ է սա՝ որ երևեալս է իբրև զառաւօտ ,
գե-

գեղեցիկ ո՟պ լուսին, ընտիր ո՟պ զարեգակն,
իբրև զհիացումն կարգեալ ։

Ծագէր երբեմն է՟ առաւօտս և արուսեակն առաջին լուսատեսիլ ․ այլ եղև ընդ երեկս գիշերավար՝ խաւարասէրն ․ վ՟յ և անկանէր յերկնից որ՟պս փայլակն, և լինէր խանձող դժոխային ․ ծագեաց և ադամ է՟ եւայի ո՟պ լուսին լուացեալ, այլ անդէն և անդ սկսաւ մաշիլ և պակասիլ ․ մինչև վերածնիլ և նորոգիլ՝ զօրութ՟բ նոր արեգական, և նորոյ լուսնի՝ որ մայր ընտրեցաւ արեգականս ․ զօրութ՟բ ասեմ ք՟սի և տիրամօր կուսի ․ զի սոցայս ծագումն էր ա՟ծահրաշ և անաղօտ, լոյս, և լուսածին կոյս, անմասն 'ի խաւարէ, անշաղախ 'ի մեղաց, անարատ ամենևին և գեղեցիկ ․ զի և 'ի դէմս յ՟սի և մարիամու յայլևայլ կարգի արդարացեալ է բանն ․ ամենևին գեղեցիկ ես մերձաւոր իմ, և արատ ինչ ոչ գոյ 'ի քեզ ։ Գեղեցկութի՟ հոգւոյն մարիամու՝ 'ի յղէ առեալ լինի, և գեղեցկութ՟ի մարմնոյն յ՟սի 'ի մարիամայ առաւ ․ քանզի և անարատ հոգւին մարիամու 'ի յղէ արարաւ, և անարատ մարմին յ՟սի 'ի մարիամայ մատակարարեցաւ ․ և այս լիցի վերջին ապացոյց անարատութե՟ զանգուածոյ կուսին, և լրումն ներքին փառաւորութեան
դստեր թ՟գրին՝ որ եղև մայր թ՟գրին ։

Տեսե՞ր զփառս ա՟մ դստեր թ՟գրին 'ի ներքոյ ․ տեսե՞ր զներքին փառս նո՟ր անպատում ․ միակ փառք՝ միանգամայն և ա՟մ փառք ․ և զի՞նչ ասեմ, եթէ տեսեր ․ գէթ է՟ աղօտ

ակն-

անկնարկեցեր . զի որ ինչ ասի 'ի մէնջ զփառաց կուսին՝ է սին ասել նշանակ, ոչ վարկ արտաքին 'ի ներքին փառացն յիշատակութէ յղացեալ 'ի միտս մեր . և իցէ՞ թէ անարատ խորհրդով յղասցուք զխորհուրդս ածայինս : Իսկ զի՞նչ իցէ ներքինն նր̃ փառաց իսկութի, որ անմերձենալին է մերումս տեսութե . փափաքել և եթ մնայ, և ասել ստէպ . իցէ՞ թէ հասցուք, երբ իցէ՝ զի մտցուք, և տեսցուք զներքինս նորա զփառս՝ յարքունիս վերինս միածնին իւրոյ :

Ո՛վ տիրամայր կոյս անարատ, այդմ յանկամք տեսութե՝ 'ի դէմ յանդիման տեսութե յերանաւէտն արքայութե . զի զկնի անճառական պայծառութե երրեակ լուսոյն՝ մօրդ լուսոյ հանդիպումն է մեզ ըղձալի և ուրախարար յաւէժաբար : Ո՛չ շատանամք աստանօր վարկմամբ փառաց քոց, այլ զբուն պանծալի փառս քո անձկամք տեսանել, և փառաւորել արժանապէս վերապատուութբ . ո՛չ զարտաքին շուք հանդիսին վերականել բաւական գրեմք, այլ տենչացեալ եմք փարիլ զներքին ճոխութբ փառաւորութե անձինդ . փարեա՛ց զմեօք աստ մայրաբար, զի և մեք համարձակ լիցուք փարիլ անդ զքև որդիաբար . մաքրեա՛ զմեզ յանմաքրութենէ մերոց 'ի յերկրի, զի արժանասցուք զամենամաքուրդ ողջունել յերկինս . տո՛ւր մեզ անարատ քաղաքավարութբ անցուցանել զանցաւոր զկեանս Դիս, զի զանարատ մայր մեր տօնեսցուք յանանց 'ի կեանս անսպառում

փա-

փառաւորութիւնք յաւիտեանս :

Մ. յորժամ և որ սոցին հանգոյն խանդակաթ ձայնարձակութիւնք առ. 'ի մէնջ առ. Տր. ամենածինն՝ լինին, և պարտին լինել յամ ժամ, ևս առաւել 'ի տօնս տօնս՝ զորս կատարեմք 'ի պատիւ նորա և 'ի փառս : Մ. յլ Ե նմին պարտ է և ունկնդիր լինել ներքին ազդաբարութեան մօր մերոյ, զոր առնէ հանապազ իբրև 'ի պնին նախաասացեալ հեծութեն սրտի մերոյ, ոչ թէ ասելով առ մեզ. Գրկտեմ, զի ցանկայք գալ և տեսանել զներքին փառս իմ առ աթոռոյ ամծութեն բարձրելոյն. և յիրաւի. զի այժմ Ե հայելի օրինակաւ ձաւ նաչէք զիս, թերևս ոչինչ աւելի քան զմար գարէս, որք զնմանութիս իմ՝ քան զիսկութի թարգմանեցին, մորենեաւ, ծաղկեալ գաւազանաւ, պարտիզաւ, աղբերաւ, փակեալ դրամբ տաճարին, տաճարաւ, տապանակաւ ուխտի, ոսկի սափորով, այլովքն հանդերձ. այլ ինձ 'ի ժամուս հերիքանայ չափաւոր ձեր գիտութի, միայն թէ Ե չափու գիտութեն և յարգիցէք զպաշտօնն իմ. եթէ զայս գիտէք, երանելի ևս էք՝ եթէ առնիցէք զայդ : Տ ա՛տ են ինձ փառքն իմ, զոր ունիմ առաջի ձեր ըստ ձերումդ տկարութեն, այն է վարկն՝ որով վարկանիք զիս ստուգապէս. ոչ և եմ իսկ մայր Այ և մայր ձեր. հապա գէթ ըստ այսմ՝ օրդ, թէպէտև անքացայայտ՝ ծանօթութեն հաւատոց, վարեցարուք յիմ ծառայութի որդիական. և ես ցուցից ձեզ յերկինս զլրումն ներ-

ներքին փառաւորութեանց իմոց՝ որ յերկնաւոր արքայէն և յիմմէ անդրանկէն։

Եթէ դստեր երկրաւոր թագաւորի, կամ հարսին արքայի, և կամ մօր ինքնակալի 'ի ծառայութեան կայիք, եւս առաւել եթէ յորդեգրութ՟ն վերառեալ լինէիք, զորպիսի վարձ յանձին բերէիք. զի՞նչ առնէիք, զի՞նչ ոչ առնէիք. ըս՟ մարդկութեան ասեմ և ըս՟ անարգանաց ձերոց, գոնեա նովին չափով զիս պաշտեցէք, ուրախամիտ, զուարթամիտ, 'ի սերտ սրտէ, ամ՟ սիրով և հաւատով, մաքուր և անարատ սրբութ՟բ, և կատարեալ համբերութ՟բ, լի ամ՟ յուսով բարութ՟ն, եթէ վարձս ըս՟ վաստակոց առնուք՝ բիւրապատիկ առաւելութ՟բ հանդերձ. թող զի և ձեզ անզուգական փառք են՝ սպաս տանել իմումս փառաւորութ՟ն, եթէ գիտէք՝ թէ ում ծառայէք, և եթէ գիտէք զպատիւ անձանց ձերոց. արդ այսուհետև գիտասջիք շնորհօք միածնի իմոյ և այլն։

Իսկ մինչ չիցե՞ն իրաւացի ամ՟ իրօք մայրենի առաջարկութիւնս տիրամօր մերոյ. ապա ուրեմն և հետևորդքն 'ի մէնջ իրաւամբք և արդեամբք կատարեսցին։ Ապա ուրեմն և բանիւ և գործով՝ զփառս կուսին մեծացուսցուք 'ի փառս այ՟, փառաւորելով զնա արժանաւոր երգովք, գովութ՟բ, ներբողական ճառիւք, յորդորական քարոզիւք, տօնախմբութ՟բ, և անմոռաց մտածութ՟բ և յիշատակութ՟բ մեծութ՟ն նր՟ յինքեան, և մեծութ՟ն երախտեաց նր՟ առ մեզ. ըս՟ ազգա-

ազգս

ազգս շնորհաց և խնամոց ածամայրութե ։ Այլ գլուխ ամի, մեք լիցուք փառք անարատ կուսին՝ անարատութի(ւ)ն վարուց . որ է վախճան և նպատակ բանիցս, զի է գործ ։ Որով և վերջին փառացն նր յերկինս արժանասցուք լինել ժամուն, տեսանել ասեմ զամենօրհնեալն 'ի կանայս դշխոյական մեծութի(ւ)ն ընդ աջմէ միածնին 'ի փառս անճառս, յաւիտեանս յաւիտենից . ամէն ։

XXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXX

# ՃՌ. Ա. Բ ։

## Ի Ծնունդ սբ ածածնի ։

Նորանշան սքանչելիք բարձրելոյն յերկիր 'ի խոնարհ յայտնեցաւ այսօր, ով՝ հանդիսացեալ ժողովուրդք . իբրև նոր առաւօտ ծագեալ, և արուսեակ զուարթարար . նոր արևելք լուսաւորութե հոգւոց . մինչև 'ի հիացման լինել և դասուց հոգեղինաց, և բարբառել առ միմեանս . ո՞վ է սա՝ որ երևեալս է իբրև զառաւօտ, գեղեցիկ ոպ զլուսին, ընտիր իբրև զարեգակն . որպէս հիացումն կարգեալ ։ Երգեցէք երգ նոր, ցնծացէք որդիք մարդկան, ոպ յորդորական նուագէ եկեղեցի յաւուրս հանդիսի . քանզի և 'ի վեր նոր երգովք պարեն այսօր զուարթունք երկնից, և երկրինք զարդուք իւրեանց՝ իբրև օրինակօք ծնիցելոյն սքանչելւոյ՝ ձայնակից լինին ուրախութե ձե-

րոյ

ըՍ՝ 'ի նորոգել հրաշապէս զհնութիւս մեր · քանզի այսօր ծնաւ մայր նորոգողի բնութեան՝ յուր փրկչին մերոյ · այսօր ծնաւ մայր նորածնեալս եկեղեցւոյ · այսօր ծնաւ մայր նորոյ օրինաց շնորհաց, մայր շնորհաց, և մայր շնորհալի :

Եկայք նորաւէր որդիք մարդկան՝ սիրեսցուք զնորութիւն նորոգիչ հնութեան, և ոչ եղծիչ լաւութեան · գովեսցուք զնորն՝ որ ոչ հնանայ, և ոչ ապականի, այլ տայ մեզ նորոգիլ յանապական և յանմահական 'ի կեանս · և պահեսցուք յանձինս զնորոգութիւն նոր մարդոյն՝ որ ըստ նմին հաստատեալ է, և մի կերպարանեսցուք հնութեամբ հին մարդոյն, որ զնորն իսկոյն հնացոյց : Ո՞չ ապաքէն նորաստեղծն ադամ ըստ նորօրինակ նորածնին եւայի՝ անդէն և անդ հնացան մեղօք · և 'ի նորասքանչ երկրատարդութեան յանկարծակի իւր ծերացան և ապականեցան՝ անձամբ յանձինս վճիռ ընկալեալ մահու · զնոր պատմուճանն անախտութեան պատառեցին, և կարօտացան հնոտի կարկատանաց տերևոյ :

Իսկ զի՞նչ զորդւոց նց համարիցիս · ո՞չ ապաքէն թշնամութիւն 'ի թշնամութիւն հասին յետին · յապականութենէ ապականութիւն ևս պատժարագոյն, և 'ի փտութենէ փտութիւն աննորոգելի գլխովին երևեցաւ սերունդ մարդկութեան մինչև ցայս օր · որ օրհնեալ 'ի դարուց յաւուրս տարւոյ, յորում նոր և գերահրաշ ծնունդ ընծայեցաւ անապական կուսի ամենածաւոր ; անկցորդ 'ի մասանէ հնութեան

շնորհս՝ երթալով երթայ զօրութե̃ ՚ի զօրութե̃ լիուլի շնորհօք՝ հովանաւորութե̃ հոգւոյն տյ̃ . իսկ մեք՝ զի շնորհօք ծնաք նր̃ մկրտութե̃ , զիա̃րդ որ քան զօր տկարութե̃ ՚ի տկարութե̃ անկաք ։ Մ՝արիամ ՚ի մայրութե̃ տյ̃ ծնանի , և ըստ նմին արժանաւոր զանձն ընծայեցուցանէ՝ քաղաքավարեալ ՚ի մարմնի անարատ վարուք սերովբէն հողեղէն և մարմնաւոր քերովբէն , հոգեղինաց՝ հրեղինաց՝ և լուսեղինաց վերագոյն , իբրև դուստր միական՝ հօր երկնաւորի , և հարսն անարատ հոգւոյն սրբոյ ։ Եւ մեք քն̃եանքս , որով և մկրտեանքս , յորդեգրութե̃ հօր տյ̃ կոչեցեալք եղաք , այլ ո՛չ ընտրելք , զի օտարախորթ գտաք երկրաքարշ վարուք ախտաւորութե̃ և ստահակութե̃ և ստամբակութե̃ . յեղբայրութե̃ քն̃ի հրաւիրեցաք , և անհարազատ երևեցաք . տաճար հոգւոյն սբ̃յ աննշանեցաք , և անձամբ զանձինս քակեցաք՝ զ շինածն տյ̃ ։

Եւ արդ եկա՛յք յաւուրս շինութե̃ նոր տաճարին անձառ լուսոյ , և նոր խորանի արեգականն արդարութե̃ , հնարեսցուք նովաւ նոր նորոգութե̃ հոգւոց մերոց , ՚ի նորայսն ակնարկելով ձիրս գեղեցիկս , և ՚ի նմանութե̃ անդր նր̃ թևակոխելով . զի եթէ հրամանն առաք լինել կատարեալ՝ ոպ̃ հայրն մեր երկնաւոր կատարեալ է , նովին և պատուէր ընկալա՛ք լինել նմանօղ կատարելութե̃ց մօր մերոյ՝ ըստ մերումն կարի , և առաւել քան զկար՝ ո̃ն կարօղութե̃ և տիրամօրն ձեռն-

տօնութ՟ : Ու այն զի՝ դիւրագոյն է մատուցել ՚ի նմանութի նմանւոյ մերոյ՝ հողեղէն մարմ֊նոյ . և ես առաւել նորածին մանկան տղայոյ միայն թէ կամիցիմք . զի ՚ի նմանութէ ան֊տի գեղեցիկ արարածոյ՝ ՚ի նմանութի արար֊
չին ՚ի վեր ելանիցեմք :

Տես ինձ ո՛վ նախանձաւորդ սրբութե՟ ամե֊նասրբուհւոյն, տես զմարիամ նորածին՝ առ մենևին գեղեցիկ և անարատ՝ ըստ անսուտ վկայութե՟ ստեղծողին . տես զմի աղաւնեակն կատարեալ, մաքուր աղաւնի, և աչք նորա աղաւնոյ՝ ըստ հոգերգողին . ձիւնափայլ մաք֊րութե՟ հոգւոյ պայծառ, և մարմնով կայ֊տառ, հեզիկ և քաղցր բարուք՝ համնգոյն ա֊ղու աղաւնոյ, և ամ՟ շնորհօք և պարգևօք հոգւոյն առլցեալ, և Ըաբոյս առաքինու֊թե՟ք դրախտ ա՟յ զարդարեալ . զաւակ սի֊րուն յաչս ծնողաց՝ միամայրն մարիամ, և նա սիրելի յաչս արարչին, որ ընտրեաց զնա յիւր ծնողութի : Այլ և անկարանայ բանս նկարել զնմանութի՝ ինչ մարիամու նորած֊նելոյ, եթէ ոչ զհանդերձեալ պտուղ որո֊վայնի նորա յուշ ածելով, յորժամ տեսցեն հրեշտակք և մարդիկք զառ ՚ի նմանէ ծնեալ ա՟ծորդին՝ յարևնման ծնողին . զի յայնժամ լինի ՚ի միտ առնուլ զկատարեալ գեղեցկու֊թի կուսին ծնելոյ յաւուր յայսմիկ . զի եթէ նման զնմանն ծնանի, ո՞ւմ արդեօք զա՟ծ ծնա֊նել անկ, բայց ա՟յ՝ կամ ազգականցին ա՟յ : Ու ահա այսպիսի ոք ընծայեցաւ այսօր ՚ի լոյս՝ սահմանեալ ՚ի ծնողութի ա՟յ . և զի՞նչ զնա

ան

անուանեսցուք. երանական, այլ 'ի վեր քան զերանականս. արարած, բայց 'ի վեր քան զարարածս ամենայն. վասն զի եթէ ոչ Աստուածուհի, ոչ ոմն իղձ լինէր անուանել 'ի տեսանել զնա, իրաւամբք ազգակից Աստուծոյ` կամ Աստուածազգի ճանաչի, նախ շնորհօք Աստուածամայրութեան, և ապա բնականն առնչութեամբ յԱստուածամայրութեան վիճակի: Տեսցէք, զի որ զչափ առնուլ կամի գեղեցկութեան հոգւոյն Մարիամու, և մեծութեան շնորհաց նորա, և Տեառն կատարելութեանց, յանչափն Աստուած 'ի վեր նայել ունի միտք. այս է յարաբերել անդր վերականել, զի ծանիցէ` թէ որպիսի արարած է Մարիամ` ծնօղ Արարչին:

Իսկ արդ ասէ ասա, որպիսի նորահրաշ և անպատում գեղ փայլման ունէր լինել 'ի Մարիամ այն ինչ ծնեալ` ընդունարան եօթնարփին շնորհաց, և որպիսի 'ի մնեալն օր ըստ օրէ շնորհալի հասակաւ` և իմաստութեամբ և առաքինութեամբ 'ի վեր քան զտեսութիւն մեր: Վասն զի և էացաւ և գոյացաւ, և ծնաւ և սնաւ, և աճեցաւ և մեծացաւ հոգւով և մարմնով` առ ինչ. առ 'ի լինել Աստուածածին, Յիսուսի Աստուծոյ մայր. որով և տիեզերաց մայր և թագուհի, Տատիկին` դշխոյ երկնի և երկրի. հրեշտակաց տիրուհի, մարդկան արքայուհի, և սանդարամետականաց սարսափ ինքնակալուհի: Ով խորք շնորհաց Մարիամու, ով բարձրութիւն փառաց նորածին և լուսածին կուսի. ով լայնութիւն արձակածաւալ և անվայրափակ մեծութեան օթարանի անպարագիր Աստուածութեան: Իսկ ո՞ւր այնուհետև մնայ մեզ զա-

առաքինութիւն նորա ստորերագրել՝ առ 'ի յանձինս կերպարանել:

Ո՛չ այդպէս. եթէ ած ինքնին խոնարհեցաւ առ մարդիկ 'ի տալ նոց զօրինակ, խոնարհի և ածածին 'ի նոյն պէտս սիրողացն. զի որ մեծն էր և 'ի նորածին փոքրկութեան, խոնարհ է նմին և 'ի ծայրագոյն մեծութեան: Ո՛չ հայիք աստ 'ի բարձրութիւն իմ, այլ նմանող ինձ կամիք լինել, այլ 'ի խոնարհութիւն. նմ և ած իմ հայեցաւ 'ի խոնարհութիւն աղախնոյ իւրոյ, և հաճեցաւ առնուլ զիմ կատարեալ նմանութիւն Աստուածային մարդեղութ՟ 'ի կուսէս. Մի՛ հայիք լոկ 'ի մեծութիւն իմ, զի արար ինձ մեծամեծս հզօրն 'ի վեր քան զտեսութիւն մտաց ձերոց, այլ և 'ի փոքրկութիւն իմ. զի փոքր էի յաչս իմ քան զամ որդիս մարդկան, որով և մեծացայ յաչս այ: Տեսէք, զի որչափ աճեցի և անայ շնորհօք, ոչ բարձրացաւ և ոչ մեծացաւ սիրտ իմ յիս, այլ 'ի տր ած իմ. վոյ և խոնարհութեա՟ մեծացուցանէր անձն իմ զտր, և ցնծայր հոգի իմ յած փրկիչ իմ: Ո՛չ զի ոչ յայն ակնարկէի, զի մայր ընտրեցայ, այլ՝ զի աղախին գտայ. ոչ յայն՝ զի ծնօղ եմ այ, այլ՝ զի արարած եմ. ոչ զի զաւակ իմ է ածորդին, այլ զի է արարիչ իմ և փրկիչ իմ:

Բա՛րէ հրաշալի քաղաքավարութեան տիրածին կուսի, և գերազանց առաքինութեան մօրն լուսոյ. հնարս իմանալ փոքրկանալոյ յաչս անձին յանպայման մեծութեան, և խոնարհելոյ ևս քան զևս 'ի գերակատար աստիճանի ան-

բաւ

բաւ բարձրութեն ։ Արդ զայս գիտելով չափ՝
ո՞ կարէ այսուհետեւ ասել ՚ի մէնջ, թէ չկա-
րեմ նմանել Մարիամու յայսպիսում առա-
քինութեն յետին խոնարհութեն ․ ո՞չ ապա-
քէն դիւրագոյն է խոնարհիլ ՚ի ցածագոյն
վայրէ՝ քան ՚ի բարձրաւանդակէ ․ և ո՞ այլ
ցածագոյն քան զմեզ յանմի, և ո՞ բարձրա-
գոյն քան զՄարիամ՝ բաց ՚ի բարձրելոյն ․ և
սակայն Մարիամ խոնարհի մայր բարձրե-
լոյն, տիրոն և բարձրեալն ինքնին խոնար-
հի ․ և դու ո՞չ կարես խոնարհիլ ․ ո՞վ անբե-
րելի ամբարտաւանութեա ․ և ոչ միայն չխո-
նարհիս քան զայլս, այլև բարձրանալ կա-
միս յայլոց վՐ ․ ո՞վ յանդգնութեն լրբութեա ։
Դու ո՞չ գիտես, զի վՐ ոչ խոնարհելոյդ՝ ՚ի
խոնարհ անկանիս, և լինիս ՚ի վայր և ՚ի վայր ․
ապա եթէ խոնարհէիր, լինէիր ՚ի վեր և ՚ի
վեր ․ զի ամ որ բարձրացուցանէ զանձն, խո-
նարհեսցի ․ և որ խոնարհեցուցանէ զանձն,
բարձրասցի ։

Խոնարհութե Մարիամու լե՛ր նախանձօղ ո՛վ
դու, զի հասցես ըն կարի և ՚ի նմանութի բար-
ձրաբերձ պարծանացն Տր ․ զի՝ մաքուր կուսութե
և միշտ կուսութե ․ ջերմ սիրոյ և կատարեալ սի-
րոյ և գերագոյն սիրոյ ․ խոպառ համբերութե,
կամաւոր աղքատութեն, յԾկ մեռելութեն,
և ամ հանդիսից արիական առաքինութեն,
և անսպառ գանձուց հոգևորական մեծու-
թեն ․ զոր չէ՛ մարթ բանիւ՛ բովանդակել ․ զի
ամէնի՛ մեծամերձ և մեծատեսակագոյն գոա-
նի ձոխութե Մարիամու ․ քանզի առ ՚ի կա-

Ներքին փառաւորութեանց իմոց՝ որ յերկնաւոր արքայէն և յիմմէ անդրանկէն :

Եթէ դստեր երկրաւոր թագաւորի, կամ հարսին արքայի, և կամ մօր ինքնակալի 'ի ծառայութե՛ կայիք, և՛ս առաւել եթէ յորդեգրութե՛ վերառեալ լինէիք, զո՞րպիսի վարս յանձին բերէիք. զի՞նչ առնէիք, զի՞նչ ոչ առնէիք. ընդ մարդկութե՛ ասեմ և ընդ անարգանաց ձերոց, գո՛նեա նովին չափով զիս պաշտեցէ՛ք, ուրախամիտ, զուարթամիտ, 'ի սերտ սրտէ, ամ սիրով և հաւատով, մաքուր և անարատ սրբութ՛բ, և կատարեալ համբերութ՛բ, լի ամ յուսով բարութե՛, եթէ վարձս ընդ վաստակոց առնուք՝ բիւրապատիկ առաւելութ՛բ հանդերձ. թո՛ղ զի և ձեզ անզուգական փառք են՝ սպաս տանել իմումն փառաւորութե՛, եթէ դիտէք՝ թէ ո՛ւմ ծառայէք, և եթէ գիտէք զպատիւ անձանց ձերոց. արդ այսուհետև գիտասջի՛ք շնորհօք միածնի իմոյ և ամն :

Եւ մի թէ չի՞ցեն իրաւացի ամ իրօք մայրենի առաջարկութիւնս տիրամօր մերոյ. ապա ուրեմն և հետևորդքն 'ի մէնջ իրաւամբք և արդեամբք կատարեսցին : Ապա ուրեմն և բանիւ և գործով՝ զփառս կուսին մեծացուսցուք 'ի փառս այ, փառաւորելով զնա արժանաւոր երգովք, գովութ՛բ, ներբողական ճառիւք, յորդորական քարոզիւք, տօնախմբութ՛բ, և անմոռաց մտածութ՛բ և յիշատակութ՛բ մեծութե՛ նորա յինքեան, և մեծութե՛ երախտեաց նորա առ մեզ ընդ ազգս

ազգս

ազգս չնորհաց և խնամոց ա̃ծամայրութեան ։ Այլ գլուխ ա̃մի , մեք լիցուք փառք անարատ կուսին՝ անարատութեամբ վարուց ․ որ է վախճան և նպատակ բանիցս , ք̃ս է գործ ։ Արդ և վերջին փառաց նորա յերկինս արժանասցուք լինել ժամանն , տեսանել ասեմ զամենօրհնեալն ՚ի կանայս դշխոյական մեծութեամբ ընդ աջմէ միածնին ՚ի փառս անճառս , յաւիտեանս յաւիտենից ․ ամէն ։

XXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXX

# ՃՌ. Ա․ Բ․

## Ի Ծնունդ ս̃է ա̃ծածնի ։

Նորանշան սքանչելիք բարձրելոյն յերկիր ՚ի խոնարհ յայտնեցաւ այսօր , ո՜վ հանդիսացեալ ժողովուրդք ․ իբրև նոր առաւօտ ծագեալ , և արուսեակ զուարթարար ․ նոր արևելք լուսաւորութեան հոգւոց ․ մինչև ՚ի հիացման լինել և դասուց հոգեղինաց , և բարբառել առ միմեանս ․ ո՞վ է սա՝ որ երևեալս է իբրև զառաւօտ , գեղեցիկ ո̃պ զլուսին , ընտիր իբրև զարեգակն ․ որպէս հիացումն կարգեալ ։ Երգեցէք երգ նոր , ցնծացէք որդիք մարդկան , ո̃պ յորդորակաւ նուագէ եկեղեցի յաւուրս հանդիսի ․ քանզի և ՚ի վեր նոր երգովք պարեն այսօր զուարթունք երկնից , և երկիրք զարդուք իւրեանց՝ իբրև օրինակօք ծնիցելոյն սքանչելւոյ՝ ձայնակից լինին ուրախութ̃ե ձե-

րոյ

րոյ բնակիչք երկրի :

Իսկ արդ ասիցէք . միթէ քո՞ ծնաւ այսօր՝ փրկիչ և նորոգիչ Ցի նոր արարչութե՛ն . զոր երկինք առհասարակ մեզ երկրաւորացս աւետարանեցին Իմ աւետարանի՝ լուսանշոյլ փառօք , փառաբանութե՛ն հրեշտակաց , և ծագմամբ նորանշան աստեղն Էն արևելս :

Գեղեցիկ իմաստասիրեք , և ոչ օտարանայք 'ի ճշմարտութէ . զի զծագումն տեսեալ ամենօրին՝ ամօրդւոյն ծագման լինիք խելամուտ , այլ լիցի ձեզ նախ քան զճանաչել զպայծ ծննդեան ծնողին , զի և զծնեալոյն առ 'ի նմանէ ըստ ժամանակին 'ի միտ առնուցուք զմեծութի՛ն : Ոչ եթէ ոչ մարիամ , ո՞ւր յօ . եթէ ոչ արևելք , ուստի՞ արև . եթէ ոչ առաւօտ կանխեալ , զիա՞րդ միջօրեայ պայծառացեալ . եթէ ոչ նոր աքանչելիք լինէին յա՛յ այսօր ծագմամբ աննորատ կուսին 'ի յանմնայէ , իբ՛ր անկանանէաք աքանչելի նորոգումն մերոյ ծագմամբ փրկչին 'ի կուսէն :

Նոր և նորահրաշ ձայնեմ զխորհուրդ առնիս՝ զծնունդ աստեմ որ ամծամօր . ոչ Իմ կերպի հրաշակերտ ծագման յամուլ արգանդէ և 'ի ծնողաց անցելոց զաւակք . զի այդ և 'ի հնումն հրագործեցաւ յօրինակ նորա առ աբրահամաւ 'ի սառայէ , և 'ի հնոյն աննայէ՝ 'ի մօրէն սամուէլի , այլ և 'ի մուտ նորոյն հրաշագործեցաւ ծնունդ մկրտչին յեղիսաբեթէ ազգականէ կուսին . այլ Իմ կուկումն անձին ծնելոյ , որ պարգևեցաւ մեզ յա՛յ նոր և անզուգական պարգև անհնարին ,

 Լի՝

լի՛ ՚ի նորոգել հրաշապէս զհնութիւն մեր · քանզի այսօր ծնաւ մայրն նորոգողի բնութեա՛ յոյր փրկչին մերոյ · այսօր ծնաւ մայր նորա-ծնեալս եկեղեցւոյ · այսօր ծնաւ մայր նո-րոյ օրինաց շնորհաց , մայր շնորհաց , և մայր շնորհալի ։

Եկա՛յք նորաւէր որդի՛ք մարդկան՝ սիրես-ցո՛ւք զնորութիւն նորոգիչ հնութեան , և ո՛չ եղ-ծիչ լաւութեան · գովեսցո՛ւք զնորն՝ որ ոչ հնա-նայ , և ո՛չ ապականի , այլ տայ մեզ նորոգիլ յանապականն և յանմահականն ՚ի կեանս · և պահեսցո՛ւք յանձինս զնորոգութիւն նոր մար-դոյն՝ որ ք̃ս ի̃յն հաստատեալ է , և մի՛ կեր-պարանեսցուք հնութե̃բ հին մարդոյն , որ զնորն խսկոյն հնացոյց ։ Ո՞չ ապաքէն նորաս-տեղծն ադամ ք̃ս նորօրինակ նորածնին ե-ւայր՝ անդէն և անդ հնացան մեղօք · և ՚ի նորաօքանչ երիտասարդութեան յանկարծա-կի իմն ծերացան և ապականեցան՝ անձամբ յանձինս վ̃ճիռ ընկալեալ մահու · զնոր պատ-մուճանն անախտութեան պատառեցին , և կո-րուսացան հնոտի կարկատանաց տերևոյ ։

Եւ զի՞նչ զօրդւոց նց̃ համարիցիս · ո՞չ ապա-քէն թշուառութէ ՚ի թշուառութի հասին յետին · յապականութէ ապականութի և՛ս վատթարագոյն , և ՚ի փտութէ փտութի անհո-րոդելի գլխովին երևեցաւ սերունդ մարդ-կութեան մինչև ցայս օր · որ օրհնեալ ՚ի դա-րուց յաւուրս տարւոյ , յորում նոր և գերա-հրաշ ծնունդ ընծայեցաւ անապական կու-սի ա̃ծածնի ; անկցորդ ՚ի մամանէ հնութեան

հողածնելոցս հաստատակաց ։ Այլ որպէս անարատ յղութիւն գոյացուցեալ անշաղախ ՚ի ախտական յանցաւորութենէ, նոյնպէս և նախահրաշ ծննդեամբ ծագեալ յՔս՝ որպէս լոյս գերամաքուր, եկաց միայն յամ ՚ի կեանս՝ անմերձ ՚ի թունից հնոյ օձին, նմին ազատ և ՚ի ներգործական յանցանաց · որպէս անարատ՝ նոյնպէս և անախտ, մաքուր և անբիծ, անբաւպէս միշտ նոր և անհնանալի՝ այստրածինս այս դշխոյ փառաց շնորհալի · որպէս ծաղիկ անթառամ, որպէս ոսկի անապական, որպէս աստղ բևեռական, որպէս երկինք վերնական · լուսաճեմ խորան, տաճար սրբութեան, հարսն երբորդութեան, դուստր աննման ։

Այլ զի այս այսպէս, յաւուրս տիեզերական ցնծութեան ԺԲ ծնունդ Տր. ածածնին՝ յանթիւ համարոյ բարի բարի արդասեաց սրբութեան և շնորհաց նորա զմին զայս տացուք մեզ օրինակ, որ նմանօղ լինել նմա ՚ի պահել զձիրս շնորհալի նորածնութեան յամ ՚ի կեանս անապական վարուք, աւուրս շնորհիւ և բարեխօսութեամբ նորածին կուսին ։

Նմա և դու հոգևորականս ՚ի հոգւոյն՝ ով հաւատացեալդ. քոյ՝ վերածնութեամբ Տր. աւազանին · և ո՞ւր ՚ի քեզ նշանակ այդր հրաշալի ծննդեան · ո՞ւր շնորհն այն պանծալի՝ ով ապաշնորհ · ո՞ւր նորութիւն և գեղեցկութիւն ածապարգև, որ ոչ այլ երևի · զի ես տեսանեմ որպէս զիս, նոյնպէս և զքեզ հնացեալ մեղօք, և ծերացեալ և ապականեալ հնոտի վարուք տգեղութեան ։ Մարիամ ծնեալ ՚ի

շնորհս՝

շնորհս՝ երթալով երթայ զօրութեան 'ի զօրու-
թիւն լրութի շնորհօք՝ հովանաւորութեամբ հոգ-
ւոյն այ․ իսկ մեք՝ զի շնորհօք ծնաք նր մկր-
տութեան, զիա՞րդ որ քան զօր տկարութեան 'ի
տկարութիւն անկաք ։ Մարիամ՝ 'ի մայրութիւն
այ ծնանի, և ըստ նմին արժանաւոր զանձն
ընծայեցուցանէ՝ քաղաքավարեալ 'ի մարմնի
անարատ վարուք սերովբէն հողեղէն և մար-
մնաւոր քերովբէն, հոգեղինաց՝ հրեղինաց՝
և լուսեղինաց վերագոյն, իբրև դուստր միա-
կան՝ հօր երկնաւորի, և հարսն անարատ
հոգւոյն սրբոյ ։ Իսկ մեք քննեանքս, որով
և մարմնեանքս, յորդեգրութիւն հօր այ կո-
չեցեալք եղաք, այլ ո՛չ ընտրելք, զի օտա-
րախորթ գտաք երկրաքարշ վարուք ախտա-
ւորութեան և ստահակութեան և ստամբակութեան․
յեղկայրութիւն քնի հրաւիրեցաք, և անհա-
րազատ երևեցաք․ տաճար հոգւոյն սբյ ան-
ոճանեցաք, և անձամբ զանձինս քակեցաք՝
զշինածն այ ։

Իսկ արդ եկա՛յք յաւուրս շինութեան նոր տա-
ճարին անձառ լուսոյ, և նոր խորանի արե-
գականն արդարութեան, հնարեսցուք նովաւ
նոր նորոգութիւն հոգւոց մերոց, 'ի նորայն
ակնարկելով ձիրս գեղեցիկս, և 'ի նմանու-
թիւն անդր նր թևակոխելով․ զի եթէ հրա-
մանն առաք լինել կատարեալ՝ ոպ հայրն մեր
երկնաւոր կատարեալ է, նովին և պատուէր
ընկալաք լինել նմանող կատարելութեանց մօր
մերոյ՝ ըստ մերումս կարի, և առաւել քան
զկար՝ ընդ կարողութեամբ և տիրամօրն ձեռն-

տուչութ̃ե ։ Այլ այն զի՝ դիւրագոյն է մատչել 'ի նմանութի նմանւոյ մերոյ՝ հողեղէն մարմնոյ · և ևս առաւել նորածին մանկան տղայոյ, միայն թէ կամիցիմք · զի 'ի նմանութէ̃ տատի գեղեցիկ արարածոյ՝ 'ի նմանութի արարչին 'ի վեր ելանիցեմք ։

Տե̃ս ինձ ով նախանձաւորդ սրբութե̃ ամենասրբուհւոյն, տե̃ս զմարիամ նորածին՝ ամենևին գեղեցիկ և անարատ՝ ըստ անսուտ վկայութե̃ ստեղծողին · տե̃ս զմի աղաւնին կատարեալ, մաքուր աղաւնի, և աչք նորա աղաւնոյ՝ ը̃ս հոգերգողին · ձիւնափայլ մաքրութե̃ հոգւոյ պայծառ, և մարմնով կայտառ, հեզիկ և քաղցր բարուք՝ համագոյն աղու աղաւնոյ, և ա̃ծ շնորհօք և պարգևօք հոգւոյն առլցեալ, և ը̃աբոյս առաքինութե̃ք դրախտ ա̃յ զարդարեալ · զաւակ սիրուն յաչս ծնողաց՝ միամայրն մարիամ, և ևս սիրելի յաչս արարչին, որ ընտրեաց զնա յիւր ծնողութի ։ Այ̃ և անկարանայ բանս նկարել զնմանութի ինչ մարիամու նորածնելոյ, եթէ ոչ զհանդերձեալ պտուղ որովայնի նորա յուշ ածելով, յորժամ տեսցեն հրեշտակք և մարդիկք զա̃ծ 'ի նմանէ ծնեալ ա̃ծորդին՝ յարևնման ծնողին · զի յայնժամ լինի 'ի միտ առնուլ զկատարեալ գեղեցկութի կուսին ծնելոյ յաւուր յայսմիկ · զի եթէ նման զնմանն ծնանի, ո̃ւմ արդեօք զա̃ծ ծնանել անկ, բայց ա̃յ՝ կամ ազգակցին ա̃յ ։ Այլ ահա այսպիսի ոք ընծայեցաւ այսօր 'ի լոյս՝ սահմանեալ 'ի ծնողութի ա̃յ · և զի՞նչ զնա

անե

զծանուցեալ ճշմարտութիւն, և է՛ որ առհամարհէ ՅՈ հերովդեսի զանմեղունց ազդեցութիւն իմ 'ի հոգիս. անն զճշմարիտն հացանեն կեղծաւորութբ, և 'ի լուր ճշմարտութե զայլրանեայ ոմն զկայսերափառ: Նաղումք 'ի սիրելեաց իմոց թողուն զիս միայնակ 'ի նեղութիւն, երբ փախչին 'ի նեղութենց. այլք ուրանան զիս գործովք, զի անուն քրիստոնէի ունին, և գործ անհաւատի: Այլք դահիճ լինին 'ի տալ ինձ հարուածս դանից՝ ազգի ազգի մեղօք, որ խորհրդով, որ բանիւ, և որ գործով. և այլք խաչահանուք՝ այլ ևս ծանր ծանր յանցանօք: Այս առ հասարակ չար օրինակօք մեծամեծք ըզփոքունս, իշխանք և քահանայք զժողովուրդս ուսուցանեն՝ վերստին 'ի խաչ հանել զիս զխաչելեալս վ՛ն նց, և կրկնամահ և բիւրամահ սպանանել զիս նորանոր ապիրատութբք՝ զ'ի սպանող վարեալս միանգամ յաղագս փրկութե նց:

Տեսանե՞ք արդ, եթէ իցե՞ն երբէք ցաւք ՅՈ ցաւոցս լեալ՝ որ 'ի վ՛ր իմ հասին. ո՞չ ապաքէն մի մի մահ է ինձ մէն մի մահուչափ մեղք միոյ միոյ 'ի ձէնջ. և քանի՞ցս անգամ կամիք՝ զի մեռայց մեռեալս միանգամ 'ի վ՛ր խաչին վ՛ն ձեր: Ներեմ ձեզ, եթէ և զկօղս իմ խոցեսջիք յետ մեռանելոյս 'ի ձեր ոտից. զի բղխեսցէ ձեզ կրկնավտակ աղբիւր կրկին կենդանութեան. զմարմինս իմ ետու ձեզ 'ի կերակուր, և զարիւն իմ յարբումն. խորհրդաբար ետու 'ի մկրտա-

տան

տանս, և տամ մինչև 'ի կատարած Ծի . այլ գիտելով զի դուք տակաւին արեան իմում էք ծարաւի, մատնեցէք զանձն իմ կամաւ 'ի ձեռս ձեր՝ տանջել և չարչարել զմարմինս իմ մահուչափ, և հեղուլ զարիւն իմ 'ի քաւութիւն և 'ի թողութիւն մեղաց . զի առանց արեան ոչ լինէր թողութիւն : Արդ եթէ և յետ աւանդմանն հոգւոյս տակաւին կամիք խոցոտել զիս և գազանաբար գիշատել, թող բղխեսցէ արիւն հրաշալի 'ի կողէս 'ի զուարթացուցանել զպապաքումն սրտից ձերոց, և ջուր 'ի լուացումն ամ անօրէնութեց ձերոց . միայն թէ յայսմ հետէ դադարեսջիք 'ի մեղաց, և հանգիցջիք 'ի գործոց ձեռաց ձերոց . զի ես հանգեայց քնով մահու 'ի տապանի, և 'ի յառնել իմում յարուցից և զձեզ 'ի կեանս անմահս : Օ այսոսիկ և զայսոցին նման բանս քարոզէ յամպիոնէ խաչին հանապազ առ մեզ խաչելեալ փրկիչն մեր, և յուշ առնէ զարիւն նորոյ կտակին՝ հեղեալ վս փրկութե մերոյ . և մեք մի անհոգացուք սակայ վերծանել զայս կտակ ածային՝ գրեալ արեամբն այ, և ճանաչել զերախտիս նր և զսէր նր, զի սովին եւեթ կտակալինի մեզ լինել ժառանգ այ և ժառանգակից քի : Այլ ժամ է լռել և զածամօր կամի կենդանախառնուկելոյ սիրով միածնին առ խաչին՝ զազդու բանս առ ունկնդիրս իւր :

Ձեզ ասեմ ձեզ ասեմ ( ձայնէ տիրամայր ) անցաւորք ճանապարհաց՝ խորհրդածուք

անցից լերինս գողգոթայ յաւուր աստ խաչելութեն միածնիս , դարձարուք հայեցարուք և յիս 'ի ցաւագին մայր խաչեցելոյն՝ որ կամս առ խաչին մինչև ցյետին շունչ ածորդւոյս , և տեսէք , եթէ իցէ՞ն երբէք ցաւք ըստ ցաւոցս լեալ՝ որք 'ի վրս իմ հասին ։ Ա՛ի պատուական ունէի մարգարիտ՝ անգին և անգիւտ , կոյս մարգարիտ և կուսածին՝ 'ի ցօղոյ երկնից 'ի հայրական ծոցոյ՝ հոգւոյն գործակցութբ գոյաւորեալ 'ի գոյացութեն անձին իմոյ , միածին որդի հօրն լուսոյ և մօրս լուսոյ , լոյս գեղանշոյլ . որդցաւիմ , ոչ զի կորուսի , այլ զի դուք որդիք մարդկան կորուսանել կամեցայք և կամիք զօրհանապազ . զայն մարգարիտն իմ ասեմ զյս՝ գեղեցիկ տեսլեամբ քան զամ որդիս մարդկան զածորդին իմ , որ վս ձեր վաճառեցաւ , զի զձեզ գնեսցէ . և ահա արկաւ առաջի խոզաց և երգիծաւ և անշքացաւ . տեսէք զնա , և ոչ գոյ նր տեսիլ և ոչ գեղեցկութի . յարիւն թաթաւեալ բոսորային՝ անձն նր ածային . թքով շաղախեալ՝ դէմք նր ածային . փշով պսակեալ գլուխն ածային . բևեռօք հեղուսեալ ձեռք և ոտք նորա ածային . գեղարդեամբ խոցեալ կող նորա ածային . գանիւք կապտատակեալ թիկունք նր ածային . արեամբ լցեալ լանջք նորա ածային . սիրով վառեալ սիրտ նր ածային , և 'ի սէր մարդկան աւանդեալ զհոգի իւր մարդկային 'ի ձեռս հօր իւրոյ երկնաւորի ։ Ա՛ի արեգակն էր իմ՝ լոյս աչաց իմոց արեգակն

գակն

զաւէն արդարութե̄ ջո̄ , ծագումն ՚ի հօրէն լուսոյ անժամանակ որդին՝ ծագեալ ՚ի ժամանակի ՚ի կոյս մօրէս իբրև յարևելից լոյս գերարփիական , եկեալ յաշխարհ ՚ի լուսաւորել զա̄մ մարդ որ գալոց է յաշխարհ . տեսէք այսօր , զիա՛րդ վ̄ն ձեր խաւարեցաւ անշէջ ճառագայթն իմ . և ինձ իբրև լուսնի խաւար եհաս յետին մթութե̄՝ յամփոփիլ լուսոյ լուսատու արեգին իմոյ ։ Օ՜ի թէ նա զպդամայն կրեաց պարտիս , և ինձ անկաւ բաժին զեւայն կրել զկիրս ։ Ով դուք որդիք ադամայ և եւայի , տեսէք թէ որո̄ւմ մասին էք վիճակեալ . գէթ ցաւակից ինձ լերուք և միածնիս . զի ո̄ ցաւակցութե̄՝ և մխիթարակցութե̄ լինիջիք արժանիք , և մի՛ յաւելուք ցաւս ՚ի ցաւս իմ և ա̄ծորդւոյս՝ ապերախտութե̄ք և ապիրատութե̄ք ձերով ։

Ա՛ի որդեակ էր իմ , միամօր որդի , միածին որդի , և միոյ կուսիս հարազատ որդի , ա̄ծորդին իմ ջո̄ . և ես միակ մայր նո̄ կուսամայր . արդ յետ մեկնելոյ նո̄ յինէն ի՞ւ մխիթարեսցի անձն իմ , եթէ ոչ մխիթար լինիցիք ինձ փոքր ՚ի շատէ ծառայքդ որդւոյ իմոյ յանձնեէ̄ք ՚ի նմանէ փոխանակաւ յորդխութի յանուն յովհաննու սիրելւոյ . և արդ տեսէք , զո՞ր վիշտ հասուցանէք ինձ մօր ձերում որդեգրեալքդ որդիք երկանց իմոց առ խաչին՝ հաւատացեալքդ միածնին իմոյ . և ո՞ր այլ վիշտ մեծ քան զայն , ցորչափ տեսանեմ զձեզ օտարս ՚ի նմանութե̄ և ՚ի շաւղաց ա̄ծորդւոյս՝ հեզոյն և խոնարհին և ան-

մե-

մեղին և անարատին և օծին օծից . և ահա
այս է իմ ցաւ 'ի վերայ ցաւոց, զի կորուսի զիմ
միածինն, և ոչ գտանեմ զձեզ՝ ուստի նա կամի,
կամ ուստի եաս կամիմ ըստ կամաց նորա . զի փոքր
մի մխիթարէր անձն իմ :

Մ'ի նոր էր իմ և ձեր, պսակ գլխոյ իմոյ և
բարձրացուցիչ գլխոց ձերոց՝ գլուխն ամե-
նեցուն, որ փառաց և Թագր փառաց՝ միա-
ծինն իմ յիս . և ահա 'ի հող մահու խոնար-
հեցաւ վասն սիրոյ ձերոյ, և փառաւորեալն
եւ զանձն յանարգանս յետինս վասն ձեր . ան-
մեղ բնութիւն Տն անօրէնս համարեցաւ վասն
անօրինացդ : Նա 'ի մահ մատնեցաւ, զի
դուք նմանեալքդ մարդասպանին յեսուայ
Բարաբբայ՝ ապրեսջիք . մանաւանդ թէ դուք
ձեզէն սպանիք զարդարն զարքայորդի՝ 'ի
մտանել 'ի ժառանգութի նր . և զի ոչ կա-
մեցայք՝ կամթէ և կարէիք իսկ ոչ՝ տալ զվասն
մեղացն, միածինն իմ անմեղանչական՝ մեղք
եղև վասն ձեր, և մատնեալ առ մեղս ձեր մե-
ռաւ, զի զմեղս մեռուսցէ . և դուք տակա-
ւին մեղօք կամիք սպանանել զայն, որ 'ի
վասն ձեր մեռաւ սիրով :

Ո առաջին մահն ներեաց ձեզ, զոր կամաւ
յանձն էառ, և ես առի յանձն՝ զերի մայրս
նր՝ վասն Քի փրկութե, և պատարագեցի սի-
րով զիմ միածինն հօր իւրում երկնաւորի .
այլ զերկրորդն զիա՞րդ ներեսցէ . կամ ես
զիա՞րդ առից յանձն : Յառաջնումն ասաց
ինքնին : հա՛յր Թո՛ղ սոցա, զի ոչ գիտեն՝
զի՞նչ գործեն . իսկ յերկրորդումն ոչ այլ ինձ

բռ

բողոքել . մի՛ թողուր սոցա ո՛րդի , զի գի-տեն՝ զի՛նչ գործեն : Նմանզի զիմ՛որդ յան-գիտութիւն համարեսցի քրիստոնէից զքո վերատւ՛ն 'ի խաչ հանել մեղօք . զվերադր-նողն իւրեանց միւսանգամ կամիլ վաճառել . զազատարարն ջանալ կորուսանել . զիմ՛որդ լինիցի ոչխարաց զհովիւն անարգել , աշա-կերտաց զվրդպն հերքել , ծառայից զտ͞րն թշնամանել , որդւոց զհայրն ուրանալ , և արարածոց զարարիչն դառնացուցանել : Այլ ահա այս ցաւք են իմ աննմանք . ո՛չ է իմ ցաւ այսուհետև վ͞ս միածնիս , զոր միան-գամ պատարագեցի ողջակիզմամբ մարմնոյ ն͞ր և սրտի իմոյ , այլ 'ի վ͞ր ձեր՝ եղբարք անուանեալք յորդւոյ իմմէ և ինձ յորդե-գրութի ընծայեալք . երկնչիմ , եթէ 'ի ձեզ ելանիցեն այն աւանդք վրէժխնդրութե հօրն երկնաւորի , եթէ տաց զչարս փոխանակ գե-րեզմանի ն͞ր . զի որ ոչն օգտի 'ի չարչարա-նաց յ͞սի , տուժեսցի 'ի տանջանս աններե-լիս . և որ չարչարել կամի վերստին զմ͞ծոր-դին , չարաչար կորիցէ . և ես դարձեալ ան-զաւակիմ և 'ի ձէնջ . որ է անզաւակութի չար քան զառաջինն :

Այլ արդ՝ այս կտակ սիրոյ լիցի և յիշէն առ-ձեզ յաւուր ցաւոց իմոց ո՛վ որդեակք ցա-ւոցս . մի՛ խոցէք զմեռեալն վասն ձեր զիմ միածինն . և մի՛ խոցոտէք զսիրտ մօր ն͞ր և ձեր՝ զցաւագինն կուսիս . զի այն ոչ յօգուտ ձեր է . այլ լերուք նմանօղ յովհաննու սի-րոյ աշակերտին՝ որ որդեգրեցաւ ինձ յորինակ ձեր ,

ձեր, և ելից հլութ՟բ զպակասութիւն որդ-ւոյս. և հանգոյց զսիրտ իմ զ՟մ աւուրս կենաց իմոց՝ սկսեալ յօրէ անտի խաչելութե միածնիս. և դուք թէ չկարէք յ՟ի լինել, յովհաննէս լերուք սիրելի յ՟ի. և ես մայր յ՟ի՝ եղէց ձեզ 'ի մայր:

Լուա՛յք ով հաւատացեալք, 'ի փոքունց մինչև 'ի մեծամեծս ձեր, զպատճառս ցաւոց յ՟ի փրկչին և մօրն յ՟ի. տեսէ՛ք, եթէ ի-ցէ՞ն երբէք ցաւք ը՟ն ցաւոցս լեալ՝ զոր մեք հասուցաք և հասուցանեմք ՟տն և տիրա-մօր: Եթէ լուա՛յք և տեսայք՝ առաւել քան զոր կարծէայք, գիտասջի՛ք՝ զի ունիմք լսել և տեսանել և՛ս մեծամեծս 'ի միւսանգամ գալստեան ՟ածորդւոյն՝ առաւել քան զոր իմացայք այժմ. զի յայնժամ ոչ ևս այլ 'ի խրատ խօսեսցի ը՟ն մեզ, այլ 'ի պատուհաս աններելի, եթէ յայժմուս անլուր գտանի-ցիմք առ գորովական ազդմունս նորա. և պարզաբար՝ եթէ այժմ անտես առնեմք զցաւօք փրկչին որ վ՟ն մեր, և նա անտես արասցէ զմեզ յօր ցաւոց մերոց 'ի դատաս-տանն ահաւոր. և իրաւամբք պարտաւո-րեսցէ զմեզ 'ի մահն յաւիտենից. որպէս և մայրն ցաւագին եթէ ոչ գտցէ այժմ մխի-թարութի 'ի մէնջ, և նա ո՛չ լիցի մեզ մխի-թար յաւուրն յետնում: Ապա այժմէն հա՛շտ արասցուք զփրկիչն մեր, և զմայրն փրկութե, զի որդւովք փրկութե եղիցուք. ցաւեսցո՛ւք ը՟ն ցաւս յ՟ի, և ցաւակցեսցո՛ւք ցաւոց մարիամու, զորս կրեցին 'ի մեր պատ-ճառս.

ձառս ․ և սփոփեսցուք զսիրտս մեր՝ ցաւելով ճշմարտապէս 'ի վր մեղաց մերոց ․ խաչակից լիցուք տն և տիրամօր յամ՛ 'ի կեանս մեր ․ մեռցուք ձի , մեռուսցուք զմարմինս մեր , զի կեցցուք այ ․ կեցցուք հոգւով քի այ , զի փոխեսցուք՝ ոչ 'ի մահուանէ 'ի մահ , այլ 'ի կենաց 'ի կեանս , շնորհօք և մարդասիրութբ տն մերոյ և փրկչին յոր քնի , և բարեխօսութբ տիրամօր մերոյ ։ Աղեսցուք զքն քնի՝ որպ մեռեալ և կենդանի ․ նա մեռաւ մարմնով , և անմահ մնաց ածութբն ․ և մեք լիցուք մեռեալ մեղաց , և կենդանիք արդարութե ․ և եթէ անկակից մահու նր լինիմք , այլև յարութե նր լինիցիմք , կրկին շնորհօք և փառօք՝ 'ի փառս հօր ամենակալի , և որդւոյն միածնի կենարարի , և ազատարար սբ հոգւոյն յաւիտեանս յաւիտենից ․ ամէն ։

XXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXX

# ՃՌ. Ա․ ԺԳ ։

## 'Ի Յարութեն Քի ։

Այսօր է՝ զոր արար տր , եկայք ցնծասցուք և ուրախ եղիցուք 'ի սմա ․ այս օր է սկիզբն աւուրց՝ միաշաբաթ , յորում առեղծաւ լոյսն եզական ․ և այս օր է՝ որ օրհնեալ յաւուրս դարուց և ամաց և ամսոց և շաբաթուց , յորում ծագեաց լոյսն ան-

անեզական 'ի կոյս գերեզմանէն՝ լուսաւոր առնել զտիեզերս նոր արարչութն. յորմէ և միաշաբաթն կոչի և է յայնմ օրէ և այսր՝ կիւրակէ, քն տէրունական. իմա՛ որ փառաւորութն տն մերոյ՝ 'ի յառնել նր յերեքօրեայ 'ի թաղմանէ, որպէս 'ի քնոյ զարթուցեալ, մանաւանդ թէ և՛ս դիւրագոյն ի՛նքնիշխանաբար յարուցեալ տէրն կենաց և մահու:

Այս կարի իսկ քաջ. միթէ որ ննջիցէն՝ ոչ և՞ս յաւելուցու յառնել. և միթէ որ լռիցէն՝ ոչ և՞ս խօսիցի. միթէ որ տայ զշունչ՝ ո՞չ առնու անդրէն զշունչ. և որ աշխատիցին՝ ո՞չ ոգի առնուցու: Այս քուն առիւծուսեմ, որ 'ի նախահայրէն յակոբայ նախաձայնեալ. 'ի շառաւիղէ ելեր որդեա՛կ իմ, ելեր բազմեցար 'ի խաչ. ննջեցեր իբրև զառիւծ և իբրև զկորիւն առիւծու. ո՞ յարուցանէ զնա, եթէ ոչ անձամբ զանձն: Այս ձայն զառիւծուն ասեմ, որ գոչէր 'ի քառաթևի խաչին զէլի էլին, և դարձեալ արձակէր ձայն մեծ, հա՛յր 'ի ձեռս քո աւանդեմ զհոգի իմ, և անդէն աւանդէր զհոգին. զի միւսանգամ առցէ զնա յաւուրն երրորդի. արձակէր զշունչ վաստակեալ, զի անդրէն առցէ հզօրացեալ: Ա՛յն որ աշխատեցաւ զերեսուն և զերեք ամ, և՛ս առաւել աշխատ եղև երեքօրեայ չարչարանօք՝ 'ի խորհրդոյ անտի մատնութեն մինչև յաւանդումն հոգւոյն 'ի խաչելութեն, հանգեաւ 'ի տապանին՝ անդ [illegible] 'ի փոր վիմին՝

և-

երեքօրեայ քնով մահու. արդ զարթեաւ առիւծն հզօր՝ ահաւոր զօրութեամբ իւրով. արդ յարեաւ Տէրն, և ցրուեցան թշնամիք նորա։ Եթէ մահ մարդոյ՝ քուն ասի, զի ունի Տէրն յարուցանել զնա յաւուրն յետնում. իսկ զի՞նչ մահանալն Նորուն Աստուծոյ մարդացելոյ, եթէ ոչ քուն կամաւոր և առօրեայ. որպէս ինքն ասաց բանիւն, իշխանութիւն ունիմ դնել զանձն իմ, և իշխանութիւն ունիմ միւսանգամ առնուլ զնա. ոչ ոք հանէ զնա յինէն, այլ ես դնեմ զնա և առնում. այս է տիրապէս կամաւոր մահ, և ինքնազօր ամենազօր յարութիւն. և այն որպէս սահմանելոյ յիւրմէ՝ յաւուր երրորդի որպէս օրինակին յովնանու, և յառաւօտուն պահու՝ վաղայարոյց օրինօք թեթև քնոյ արթուն և զուարթուն ոգւոյ, որպէս դաւթեան նախերգութեան. զարթի՛ր փա՛ռք իմ, զարթի՛ր, և ես զարթեայց առաւօտուց. աղէլուիա։ Ողո՛ղ զի և ինքն իսկ դաւիթ յորդոր մատուցանէր Տեառն՝ մի՛ յամենալ ՚ի քուն մահու, և մի՛ յամեցուցանել զփրկութիւն մեր. զարթի՛ր ասէ, ընդէ՞ր ննջես Տէր. արի՛ Տէր օգնեա՛ մեզ, և փրկեա՛ զմեզ վասն անուա՛ն քում սրբոյ։ Արդ զարթեաւ փառօք Տէրն փառաց՝ ակն անքուն, և յարեաւ ՚ի մեռելոց՝ յարուցիչն մեռելոց, պտուղ կենաց և անդրանիկ ննջեցելոց, նորափետուր զուարթութեամբ հոգւոյ, անապական մարմնով, և Աստուածահրաշ տեսլեամբ։

Արդ զարթի՛ր զարթի՛ր և դու սիոն, և զգեցի՛ր զզօրութիւն քո և զզարդացուցիչն քո

զքո՝

զքեզ՝ նոր եկեղեցի. հա՛ն 'ի քէն զհանդերձ սգոյ և տրտմութե, և ա՛րկ զքև պատմուճան ուրախութե զփառաց յաւիտենականին յաւուր յարութե նր։ Չարչարակից եղեր անախտ փեսային քում հա՛րսն անարատ, և խաչակից, և տնկակից մահու նր. արդ և յարութե նր լինիջի՛ր. արի՛ ժողովեա՛ 'ի քեզ զնորածնեալ մանկունս քո, և արա՛ տօն ուրախութե աննման. և ասա՛. ա՛յս օր է՝ զոր արար Տր. եկա՛յք ցնծասցուք, և ուրախ եղիցուք 'ի սմա. ուրախութի ոչ մի, այլ բազմապատիկ. զի Տր բազում ցաւոց սրտի քո մխիթարութի տն բազմապատիկ ուրախ արար զքեզ, և ուրախ արասցէ յայսմհետէ մինչև յաւիտեան։

Ապաքէն առաջին և մեծ ուրախութի եկեղեցւոյ՝ յաւուր յայսմիկ Տրունական յարութե՝ է փառաւորութի անմահ փեսային իւրոյ քնի. զի կենդանի է այսուհետև՝ կենդանին յաւիտենից քն, այսուհետև ոչ մեռանի, և մահ նմա ոչ ևս տիրէ. զի մահուամբ իւրով մեռոյց զմահ, յաղթեաց իշխանին մահու և իշխանի Ծիս. և յամօթ արար բարութբ իւրով զչարն և զգործակիցս նր։ Զի զոր կարծէին հրեայք և հեթանոսք սատանայիւքն հանդերձ գլխով իւրեանց՝ մահու խայտառակութեան բառնալ զկեանս, Տր զյն, 'ի միջոյ, նա մահուամբ մահու յաղթեաց, և կեանս պարգևեաց Ծի՝ ցուցեալ յարդեանց Տր կենաց և մահու՝ կամաւոր մահուամբ և ինքնազօր յա-

րութիւն. որով և խաչ նախատանաց՝ զոր վաղագոյն իսկ փառս կոչէր անձին, ՚ի փառաւորութիւն փոխեցաւ յելից իրացն. զի կախեցաւ զնմանէ կեանքն, և արար զնա նախանձելի ։

Յարեաւ խաչելեալն, և խաչն փառաւորեցաւ՝ երբեմն գործի սպանման և փայտ անիծից. քանզի անէծքն յօրհնութիւն փոխեցաւ ։ Յարեաւ խաչելեալն. և խաչն եղև պարծանք պաշտօնէից խաչեցելոյն ։ Յարեաւ ած՝ մեռեալն մարմնով ՚ի խաչի. և խաչն և մահն՝ որ վն այ, այսուհետև պանծալի ցուցաւ, և նշանակ և գրաւական և տուհաւատչեայ յարութեան մերոյ ։ Յարեաւ մեռեալն որդի մարդոյ, ոպ և յառաջին ասաց. և յայտնի եղև՝ եթէ արդարև որդի այ էր. մարդ էր՝ որով մարթ եղև նմա մեռանիլ, և ած էր՝ որով կարող եղև անձամբ զանձն յարուցանել. Ըն այնմ, եղև և որդս մարդ առանց օգնականի, և ՚ի մեռեալս ազատ ։ Յարեաւ նորն ադամ, և յարոյց ըն իւր զազգամն հին. յորոյ ՚ի նշանակ՝ ՚ի ժամ խաչելութեան նն գերեզմանք բացան ծառայից նր. և բազում մարմինք ննջեցելոց սբց յարեան. և յետ յարութեան նր մտին ՚ի քաղաքն սբ, և երևեցան բազմաց ։ Ապա ուրեմն օրս յարութեան է որ փառաւորութեան քնի այ մերոյ, և տիրապէս ածայայտնութեան առաջի նմ տիեզերաց. և տօն ուրախութեն ք զնմ տօնս տէրունականս իբրև գլուխ և պըսակ նմ փրկական տնօրէնութեանց. և առա-

Ջրին տօն մեծ յառաջելոց անտի պահեալ և աւանդեալ եկեղեցւոյ փոխանակ հնոյ զատկին. զի ոչ ուրախութիւն և փառք փեսային՝ փառք և ուրախութիւն է հարսին, նոյնպէս և փառաւորութիւն Քրիստոսի՝ փառք և պարծանք է եկեղեցւոյ ։

Այն իրի՝ երկրորդ, և այն ոչ փոքր ուրախութիւն եկեղեցւոյ յաւուր յայսմիկ յարութեան փրկչին՝ է ուրախակցութիւն ընդ փառաւորութեան նորածնեալ եկեղեցւոյ. որ էր 'ի ժամուն հօտ փոքրիկ թուով, այլ զօրութեամբ մեծ, և ստուգապէս մայր եկեղեցի, բաղկացեալ 'ի պանծալի հիմանց եկեղեցւոյ՝ յառաջելոց և յաշակերտաց՝ հանդերձ Մարեմաւ մարբն Յսի, որ է մայր եկեղեցւոյ ։ Եւ ո՞ բաւական իցէ պատմել զուրախութիւն սոցա 'ի լուր և 'ի տես յարութեանն Քրիստոսի յաւուր յայսմիկ. ուրախութիւն ամեն հասարակաց, և ուրախութիւն միոյ միոյ առանձինն, որ և բոլորից էր միանգամայն. զի էր ամենայն ինչ նոցա հասարակաց ։

Հասարակաց ուրախութիւն և փառաւորութիւն անպատմելի. վասն զի ուր ընդ մեռանիլ Քրիստոսի անարգական մահուամբ խաչի՝ անարգեալ էին և քննեանքն առ հասարակ յաչս հրէից և հեթանոսաց, ոչ հաւատացեալք ստուգբ 'ի սուտ մեսիայ, ոչ մոլորեալք հետևողք մոլորեցուցչի, ոչ ապստամբք՝ գործակիցք ապստամբ կարծեցելոյ, ոչ հայհոյեալք իբր հայհոյիչք մարդապաշտք՝ իբր այն թէ յարեալք 'ի նմա, առ որ ասէին, դու մարդ ես՝

և

և զանձն քո ած առնես. և պարզաբար՝ ոչ
նազովրացիք ամօթապարտք և յուսահատք
'ի բառնիլ յերկրէ կենաց նազովրեցւոյն յսի,
ահա այսօր ընդ փառաւորիլ քսի գլխոյ իւ-
րեանց ածապէս յարութեն՝ փառաւորեցան և
անդամք նր քնեանք. ը յաղթօղ հանդիսա-
նալ զօրագլխին հաւատոց յսի՝ յաղթական
գտան և զինուորեալ մանկունք նր. և միա-
բան ը մարիամու մօրն այ զյաղթողականն
երգէին զօրհնութի՝ ոչ անցեալք ը ծով
դառնութե աւուրց չարչարանաց 'ի սահման
շատկական ուրախութե. օրհնեսցուք զտր,
զի փառօք է փառաւորեալ. օրհնեսցուք զտր
և զյաղթօղ զօրութի նր՝ որով յարեաւ և
յարոյց զմեզ ը ինքեան 'ի նոր կեանս. օրհ-
նեսցուք զտր՝ որ օրհնեացն զինէլ զմօրս ե-
կեղեցի: Սա է ած մեր, ճշմարիտն մեսիայ՝
յոր հաւատացաք և հաւատամք. գալոցն
եկեալ՝ ակնկալութի ինէլի տր, և արեգակն
արդարութե ծագեալ երբեմն 'ի բարձանց,
և այժմ 'ի խորոց գերեզմանի, լոյս 'ի յայտ-
նութի հեթանոսաց, և փառք ժողովրդեան
իւրում ինէլի: Յամօթ լիցին այսուհետև
հակառակորդք մեր և նր՝ հրէայք և հեթա-
նոսք և դեք առ հասարակ. և մեք առ հա-
սարակ ցնծասցուք 'ի տր մեր, և բարձրաս-
ցուք փառօք 'ի փառս նր, և փառաւորես-
ցուք զնա նորանուէր սաղմոսերգութբ:

Ի ցաք առաւօտուց ը առաւօտս միաչաբա-
թուս ողորմութբ քով տր, ցնծացաք և ու-
րախ եղաք և եղիցուք յաւուր յարութե քո և

զամ աւուրս կենաց մերոց. ուրախ եղաք փոխանակ աւուրցն՝ յորս խոնարհ արարեր զմեզ 'ի խոնարհութե քում, և աւուրցն՝ որք հաւասար ամաց երևեցան մեզ, յորս տեսաք զչարչարանս քո: Ահա այժմ կատարեալ են բանք քո ով բանդ Ած, զի ասէիր. դուք տրտմեսջիք, և աշխարհ խնդասցէ. այլ տրտմութիւնն ձեր յուրախութիւն եղիցի. և եղև այնպէս: Որ օրինակ յառաջնումն արարչութեան՝ 'ի փարատումն անդնդայինն խաւարին՝ յօրն առաջին և 'ի միաշաբաթն առաջին՝ ասացեր, եղիցի՛ լոյս, և եղև լոյս. Նոյնպէս եղև և այսօր յերկրորդ արարչութե 'ի նորաստեղծեալ միաշաբաթուս 'ի ձեռն լուսափայլ ծագման քո յարութե 'ի մթին գերեզմանէ. որով և մեք լուսով երեսաց քոց տեսանեմք զլոյս փառաց և անպատում ուրախութե. փառք քեզ Տր, փառք քեզ. փառք յարութե քո Տր. Թող նորոգեսցեն և հրեշտակք զերգս ծննդեան քո յաւուր վերստին ծննդեան 'ի կոյս գերեզմանէ. փառք 'ի բարձունս Այ, և յերկիր խաղաղութե, 'ի մարդիկ հաճութիւն:

Դարձեալ ուրախութե հասարակաց արտափայլէր 'ի նորածնեալս եկեղեցի այսօր ընդ տես և Ը լոյր յարութե փրկչին՝ աւետաւորէն 'ի հրեշտակաց առ մարդիկ, և 'ի մարդկանէ 'ի մարդիկ. որս ողջոյն կիւրակէի զատկին՝ էր առնուլ և տալ աւետիս միմեանց. Հրեշտակն աւետէր կանանց մարխամանց. Նոքա միմեանց և աշակերտաց. աշակերտքն իրե-

ծերերաց. և էր զի որոց կարծէին տալ աւե-
տիս, ՚ի նոցունց առնուին զաւետիս, եթէ
տեսաք զՏր̃ ։ Մագդաղենացին ասէր, տե-
սի զՀրեշտակս՝ որք ասէին, յարեաւ խաչե-
լեալն. և ես տեսի, զի բարձեալ է Տրն̃ ՚ի
գերեզմանէ, այլ ոչ գիտեմ ուր եդին զնա.
չէ ասա՝ լսեմ ՚ի զուարթնոյն, և ուր իցէ՝
ոչ լսեմ ։ Մայք յիւղաբերից զնոյն երկրոր-
դեն ահիւ և խնդութ̃, և զսիրտս և զխոր-
հուրդս տատանեն աշակերտաց ։ Պետրոս
և յովհաննէս ընթանալ ընթանան ՚ի գե-
րեզմանն, և թափուր և ունայն գտանեն
և դառնան. զհետ հասանէ Մագդաղենա-
ցին. ձայնէ աւետիս նոր, եթէ ետես նա
զՏր̃ ՚ի պարտիզի, և զայս ինչ ասաց ցնա. ՚ի
վ̃Տ հասանեն ընկերք նր̃, եթէ և մեք տե-
սաք ՚ի ճանապարհի. նա ողջունեաց, և մեք
երկրպագեցաք ։

Յայնժամ վայրի երևի Տր̃ առանձին կեփայի,
և առանձին յակոբայ. դարձեալ երկուց յա-
շակերտաց՝ որք երթային յԷմմաւուս. և ՚ի
գալ նց̃ աւետաւորել՝ լուան, եթէ արդարև
յարեաւ Տր̃, և երևեցաւ կեփայի ։ Նաւե-
տիս Է աւետեաց խառնի, ուրախութի̃ Է
ուրախութե̃ զուգախառնի. և յայնպիսում
միաբան խնդութե̃ աշակերտաց ՚ի վերնատան
սիոնի՝ ինքնին Տրն̃ երևի դրօքն փակե-
լովք. և ողջունիւ խաղաղութե̃ լնու զսիրտս
նց̃ և զհոգիս. և տայ տեսանել և շօշափել
զինքն, զի նոյն ինքն է նովին մարմնով. ո-
րով մեռաւ՝ նովին և յարեաւ. կամաւ մե-

 ռաւ,

նաւ , և տիրաբար և աստուածապէս : յարեաւ . Արդ ո՞ կարէ բանիւ ճառել զայնր աւուր և ժամու ուրախութի , որ 'ի սիրտս բոլորեցուն միանգամայն և ուրոյն ուրոյն . ուրախութի անպատմելի և նախանձելի . և իցէ՞ թէ նախանձեսցուք , զի արժանի լիցուք այնպիսում ուրախութե . և արժանի լինիմք , եթէ համապազ փափաքեսցուք՝ Քս թօվմայի , որ ոչն գտաւ անդ 'ի ժամու . միայն մի թերեհաւատեսցուք , և մի մարմնաւոր աստ տեսութիւն խնդրեսցուք . այլ հաւատոյ աչօք այժմ տեսօղ լիցուք , և զդէմ յանդիման տեսութի 'ի հանդերձեալն ժամեսցուք , ասելով . Հաղորդս արա և զմեզ Տր Քս սրբց քոց առաքելոց , որք արժանի եղեն տեսանել զքեզ 'ի յարութե քո . արժանաւորեա Տր տեսանել զքեզ 'ի միւսանգամ քո գալստեան . օրհնութի առաքողին 'ի բարձունս : Նորևցար խնկաբերից՝ յողջոյն կենաց ուրախալից , և 'ի լերինն գալիլեայ՝ առաքելոց մետասանից . արժանացո զմեզ Քս նոսին՝ զքեզ տեսանել յօրն վերջին . եկայք փրկեալք Քի զուարթնոյն՝ տուք օրհնութի յարուցելոյն :

Նաև զի ոչ պարտ է ասել զառանձին ուրախութէ միոյ միոյ , որոց միանգամ երևեցաւ Տր առանձին յաւուր աստ յարութե : Ո՜ մագդաղենացւոյն սէր եթէ ոք ունի 'ի սրտի առ Տրն իւր , նա առնու զճաշակ այնպիսի ուրախութեան . ես անկարանամ 'ի պատմել : Ո՜ պետրոսի ջերմ սիրելւոյն քնի զսէր եթէ ոք ունի առ վէմն իւր , նա առնու զփորձ

այն

այնպիսի ուրախութե. ես անկար եմ 'ի ճառելլ։ Զնոյն և զյակոբայ իմաստնիք, որ արդարն կոչեցեալ և եղբայր տն անուանեալ. լերուք արդարք և հարազատ նմանողք յնի ոպ եղբարք սիրունք և սիրեցողք, և յայնժամ առնուք զհամեղուն քաղցր ուրախութես 'ի քաղցր տեսոյն քնի, աստ շնորհօք և յերկինս փառօք։ Զայսօրինակ իմաստասիրեսջիք և զայլոց աշակերտաց և զեղբարց, եթէ երկուք իցեն տեսողք միանգամայն, և եթէ մետասանք, և եթէ եւս բազումք, ոպ և հինգհարիւր միանգամայն. եթէ 'ի տան և եթէ 'ի ճանապարհի, եթէ 'ի ծովու և եթէ 'ի ցամաքի, եթէ 'ի պարտիզի, և եթէ 'ի լերին. զի ուր և խորհիք և խօսիք զյնէ, անդ է և տրն 'ի մէջ ձեր. որպէս և 'ի սրտի ձերում գտանի՝ ցորչափ սիրէք զնա, և սիրով խոսակից լինիք ĕ փեսային հոգւոց ձերոց։

Նաւ մի՛ ոք ասիցէ. զիա՞րդ զամենեցուն ուրախութի յիշեցեր, և զտիրամօր կուսին լռեցեր։ Մն զի զոր աւետարանն ոչ իբրև անճառելի և անթարգմանելի՝ լռութբ պատմեաց, ինձ զիա՞րդ էր համարձակելի բանիւ բացայայտել։ Բա՛ւ է ձեզէն 'ի սրտի ձերում որոճել, թէ ոպ ոչ ոք էր մերձաւոր յնի քան զմայր նր մարիամ կոյս ամենօրհնեալ, և ոչ ոք սիրելի և սիրեցող ոպ զնա, և ոչ ոք չարչարակից և ցաւակից քնի որպէս զնա, ապա և ոչ ոք ուրախակից ուրախութե յարութեն միածնին՝ ոպ զմարիամ մայր նր.

Այլ ամ՟ն խորհրդով ծածկի 'ի խորհրդեանս . զի գրեալ է , թ՟մ փառք դստեր Թգ՟ւորի 'ի ներքոյ . ը՟ն նմին և մօր Թգ՟րի : Մի սիրտ էր և մի հոգի տիրամօրն և ն՟ն . վ՟նյ և տեսութ՟ի նց՟՝ նց՟ միայն գիտելի . զորոյ զճաշակն յայնժամ լինիցի մեզ առնուլ փոքր 'ի շատէ , յորժամ և մեք մի սիրտ և մի հոգի լինիցիմք ը՟ն յն՟ի և ը՟ն մօրն յն՟ի , ը՟ն նմանութ՟ե որդիացելոյն յովհաննու սիրելւոյ . զի և վ՟ս նր՟ լռութ՟ի է յաւուր յարութ՟ե , թէ երբ և ո՞ւր և ո՞րպէս ետես զն՟ր . բայց յայտ է թէ ետես սրատես արծուի՞ն յառաջ քան զբազումս . ո՟պ և 'ի տիեզերական ծովուն ետես

և եցոյց պետրոսի :

Մնայ մեզ այսուհետև՝ տեսութ՟ի և ուրախութ՟ի խնդրել վ՟ս մեր հասարակաց և միոյ միոյ առանձին . միաբան ցնծութ՟բ տօնախըմբեմք զօր յարութ՟ե փրկչին մերոյ , իցէ՞ թէ այսպիսի միաբանութ՟բ տեսցուք զնա . և 'ի հանդերձեալն՝ երկնաւոր տօնախմբութ՟բ հանդերձ , մինչև և ոչ միում՝ 'ի միաբան ժողովելոցս՝ արտաքոյ գտանիլ երկնից ժողովոյ : Ապաքէն և Թովմաս մի՞ էր յառաքելոցն քն՟ի . բայց զի ոչ գտաւ այսօր 'ի ժողով միաբանութ՟ե ընկերաց իւրոց , զրկեցաւ 'ի տեսութ՟է ն՟ն և յուրախութ՟է հասարակաց . մինչև ուսաւ եօթնեակ մի ապաշխարել բազում տռճայտանօք երկօճանաց , և անհնարին կարօտանօք փափաքանաց , կալ միաբան յայնմ հետէ զօրհանապազ ը՟ն եղբարս իւր , և այնպ՟ս արժանի եղև յետ ութ

աւուրց

աւուրց տեսանել զնա ԺԱ ժողովոյ առաքե-
լոց։ Այլ մեք եթէ զգաստացուք յառաջին
ընթացից մերոց՝ յինքնագլուխ և յինքնա-
հաճ խորհրդոց մերոց ասեմ, և միաբանա-
սէր լինիցուք և եկեղեցասէր, արժանանամք
տեսոյն քս̃ի. ապա թէ ոչ՝ յաւիտեան ան-
տես լինիմք ԺԱ յուդայի, որ 'ի թիւս առա-
քելոց էր, այլ անձամբ զանձն ճեղքեաց 'ի
մէջ հօտէն. ոչ չարչարանաց քս̃ի կցորդ եղև,
և ոչ յարութեան հաղորդ. այլ պատճառ եղև
չարչարանաց տն̃ իւրոյ, և այն՝ սկզբնա-
պատճառ՝ չար և անօրէն մատնութե̃, վ̃յ
և փոխադրոյն մատնեցաւ 'ի տանջանս յաւի-
տենից 'ի խաւարին արտաքին. ուր յաւիտեան
ոչ տեսցէ զլոյսն և զյոյսն բոլորեցունց զքս̃։
Զայս յիշեցի եղբարք յահարկուի̃ մեզ յա-
ւուր ուրախութե̃. զի ահիւ և խնդութ̃բ կա-
տարեսցուք միշտ զտօն փրկական յարութե̃ս,
ո̃պ և արժանն է, զի մի անմասն ելցուք 'ի
պարգևաց փրկութե̃. զոր արժա՛ն է և այլ-
ազգ պարզաբանել կրկին անուամբ տօնիս,
որ կոչի միանգամայն Յարութի̃ և Զատիկ։
Յարութի̃ ասի և է տօնս ուրախութե̃, ոչ
միայն՝ զի Տ̃ր յարեաւ 'ի մեռելոց, մահ-
ուամբ զմահ կոխեաց, այլ զի և Յարութ̃բ
իւրով մեզ յարութի̃ և կեանս պարգևեաց.
ապա նա տօնէ ճշմարտութ̃բ զյարութի̃ քս̃ի,
որ միանգամ յառնէ ընդ քս̃ի 'ի նոր կեանս
ո̃պ ճշմարիտ անդամ գլխոյն իւրոյ. և այս
յայնժամ յաջողէ, յորժամ յանձն առնու-
ոք սիրով չարչարիլ և խաչիլ և մեռանիլ և
թա.

Թադիւ ԺԷ քնի . զի եԹ չարչարանացն կցորդ եղիցուք, այլև յարութեն հաղորդ լինիցիմք : Նաև Օ աւուրն կոչի և է տօնս ուրախուն, զի յարուն քնի եղև 'ի կատարիլ աւուրց հնոյ զատկին՝ որ և պասեք կոչիւր . և այսպէս հինն 'ի նորն փոխեցաւ, ստուերն 'ի լոյս ճշմարտեցաւ : Նպաքէն զատիկն հին էր սահմանեալ 'ի յիշատակ ելիցն իւրեանց յեգիպտոսէ, յորժամ զատուցաւ տունն առ տուն իւրեանցին յեգիպտացւոցն, ըստ որում արիւն զատկական գառին ԺԴ հրամանի ածն նշանակեալ 'ի վր սեմոց դրանց որդւոցն իսրի՝ պահեաց զնս 'ի կոտորածէ անդրանկացն եգիպտացւոց . և 'ի նմին իսկ աւուր՝ յորում ուտէին երբայեցիք զգառն զատկին՝ զկոշկեցեալն զատիկ, զառատն և ելին յեգիպտոսէ՝ ըստ փութացուցանելոյ նոցին իսկ եգիպտացւոց . և այսպէս կոչեցաւ այն օր և պասքա կմ փասէք, որ ԺԴ ամսոց՝ զատուումն և ազատումն, ԺԴ կիսոյ անցք Թարգմանի, և ըստ այլոց՝ չարչարանք . զի ելին 'ի չարչարանաց վայրէ՝ չարչարանօք ուտելով զգառն, ցուպ 'ի ձեռին, կօշիկ յոտս՝ պատրաստեալ 'ի ճնհ, հանդերձ գառն եղեգով . և Ծր եանց ընդ ծնմ տունս եգիպտացւոց, յորս ոչ գոյր նշանակ արեան զատկական գառին, և եհար զանդրանիկս նց . և զիէլ զանդրանիկն իւր անցոյց 'ի չարչարանաց 'ի հանգիստ, և ընդ ծովն կարմիր յանապատ : Այլ ահա այն ԾմԼ անցանէր ԺԷ նմ յօրինակ չարչարանաց և յարութեն քնի, որոյ ճշմարտութեն եղաք մեք

ժա

ժառանգորդք ։

ՈՉ այսպէսն և յն յաւուրս զատկի զենաւ՝
անարատ գառն մյ . նախ խորհրդաբար՝ տա-
լով մեզ յաւուր բաղարջակերաց զմարմին
իւր և զարիւն իւր նք 'ի ճաշակումն փոխանակ
զատկական գառինն . և ապա էրօք տալով
զանձն 'ի զենումն 'ի վր խաչին յուրբաթու
զատկին . ուր և խոցոտեալ նմ չարչարանօք՝
մատոյց զանձն 'ի վր սեղանոյ խաչին՝ զոհ
հաշտութե և ողջակէզ փրկութե . միայն ոսկր
նր ոչ բեկաւ՝ ըս օրինակին նախանկարելոյ .
և արիւն նր փրկական դրոշմեալ 'ի սիրտս
հաւատացելոց իւրոց՝ պահեաց և պահէ զնս
'ի սատակմանէ հոգւոց . և ճաշակումն ա-
նապական խորհրդոյ մարմնոյ և արեան կե-
նարարին՝ լինի մեզ առհաւատչեայ յարութե
հոգւոց և մարմնոց ։ Այլ զի եհան փրկիչն
մեր յարութբ իւրով զերամն արդարոց 'ի
դժոխային եգիպտոսէ, և ազատեաց 'ի ծե-
ռաց անմարմին փարաւոնի, վսյ և տօն զատ-
կին ըս մի համար եղև ըս տօնի յարութե . զո-
րոյ զկատարումն տացէ մեզ տր տեսանել և
յաւուր յարութե մերոյ ։ 'Ի սոյն կրկին խոր-
հուրդ յարութե և զատկի ածցես ինձ և զսո-
վորութի ռամկին, ուտել 'ի տօնի աստ ձու
կարմիր . զի ձու է նշանակ յարութե, ոպ յոյս
կենդանւոյ, կամ կենդանի՝ յուսով 'ի նմին
պարունակեալ . իսկ կարմրութիւն օրինակ ար-
եան կենարարին . յորոյ 'ի ցօղելն 'ի վր մեր
կենդանանամք և յառնեմք ըս նմա, շնորհօք
և ողորմութբ նորին՝ կենարար փրկչին մե-
րոյ

քայ յարուցելոյ և զմեզ յարուցանողի . Նմա փառք յաւիտեանս . ամէն :

XXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXX

# ՃԻԱ . ԺԳ .

## Ի Համբարձման Տնի :

Օրինչ է՝ զոր տօնեսք երկրաւորս եկեղեցի այսօր տօն ցնծութեան վն վերանալոյ՚ի քէն երկնաւոր փեսայիդ . եթէ համբարձումն է քն՚ի փրկչին քո և ոչ՝ յերկրէ յերկինս , որպէս և է , ապա տօն փառաւորութեան նր է յերկինս երկնից՝ ուր ելն , և ոչ յերկրի՝ ուստի մեկնեցաւ . երկնաւորաց է տօն ցնծութեան , իսկ երկրաւորացս գոգցես օր տրտմութեան . զոր արժան է հետազօտել քննութբ՝ առ ՚ի տօնել ճշմարտութբ , որպէս արժանն է :

Իրաւամբք տօնեն այսօր երկնաւորք , և ցնծան և ցնծացեն անանց ուրախութբ և յաւիտենական տօնախմբութբ , վն զի զԹագաւորն իւրեանց երկնաւոր յերկինս առ իւրեանս ընունին , որպէս այն թէ դարձեալ գայ ՚ի տար Տէ ՚ի հայրենիս իւր . և այն զի՝ փառօք և յաղթութբ դառնայ որպէս զօրագլուխ յաղթական ՚ի մարտէ . և յաղթութն՝ տկար մարմնով ընդէմ անմարմին ոսոխին բռնացելոյ . որ է մեծ հիացումն անմարմնոցն դասուց . զի նմքեանք թէպէտև հոգեղէն զմն-

ռւն-

ուժորութի՟ն ձակատեալ՝ վանել վանեցին զա-
րուսեակն յերկնից կայանաց, այլ նա իշ-
խան եղև օդոյս; և յերկիր սողեալ՝ իշխան-
ծի անուանեցաւ, և 'ի դժոխս անդամ ըն-
կեցեալ՝ առ անմարմինն գոլոյն ոչ փակեր 'ի
ներքոյ, այլ ելանէր և արտաքոյ, և վարէր
անդադարելի պատերազմ ընդ մեր երկրաւո-
րաց ։ և ոչ Թողոյր զոք 'ի նոցանէ յերկինս
ելանել, այլ առ հասարակ 'ի դժոխս իջու-
ցանէր՝ զմեղաւորս 'ի խորս անդնդոց, և
զարդարս 'ի վերնակողմն բանտին՝ 'ի գոգն
կոչեցեալ աբրահամու ։ որպ՟ յայտ է յօրինա-
կէ մեծատանն և ղազարու ։

Արդ զի տեսին զօրութիւք վերին, զի Թագա-
ւորն փառաց՝ երկնաւոր արքայն ք՟ո, բանն
էական, այն՝ որ յերկնից յերկիր իջեալ և
մարմնազգեստեալ՝ մարմնով եհար վանեաց
զանմարմինն սատանայ զԹշնամին հասարա-
կաց, կոխան արար զնա զօրութ՟ն ն՟ր, կապ-
տեաց զիշխանութ՟ն ն՟ր, զնա կապեաց ան-
լոյծ կապանօք ։ և զգերեալսն յանիրաւի՝
իրաւամբք արձակեաց 'ի բանտէն, և զան-
կեալսն յարոյց ընդ իւր 'ի յարութ՟ն իւրում,
այսօր յաւուր համբարձման իւրոյ յերկինս
եբաց զդրունս երկնից, և գայ միածանէ ընդ
իւր զաւարն 'ի շտեմարանս արքայութ՟ն,
իմն՝ զերամս նահապետաց և մարգարէից,
անպայման լցան ուրախութ՟ն ։ և ընդ առաջ
ելեալ ք՟նի և ոք՟ց ն՟ր 'ի ձայն ցնծութ՟ն հռ-
գեղէնքն առհասարակ՝ սկսան տօնախմբել
նոր երգովք օրհնութ՟ն իններակ դասակար-
գու-

գութիւք Հրեշտակաց զաւուրս իւր՝ զայս-
պիսի հրաշալի յաղթութիւն երկնաւոր ար-
քայիս. որ արար ուրախութիւն երկնայնոց
բազմապատիկ օրինակաւ։

Նախ՝ զի ըստ ասացելոցս, դարձաւ տէրն
և թագաւորն իւրեանց 'ի պատերազմէ,
ոչ միայն խաղաղութեամբ, այլև յաղթու-
թեամբ և բազում աւարաւ, զի որ էջն
միայնակ՝ ել բազմութեամբ։ Երկրորդ՝ զի դար-
ձաւ առ Հայրն. որ եգիտ զկորուսեալ ոչ-
խարն, 'ի լնուլ զթիւ երկնաւոր հօտին. և
զի բացեալ զդրունս երկնից՝ զոր փակեաց
ադամ, եմոյծ անդր իբրև 'ի նոր դրախտ
զնախահայրն հանդերձ ընտրեալ զաւակօք,
զատուցեալ զնոսա 'ի տեղի անկելոց հրեշ-
տակաց։ Եւ երրորդ՝ որ մեծն է քան զամ,
զի որ էջն առ մեզ, ել առ մարդ ծիրանազ-
գեստեալ մարմնով և արեամբ. մինչև այ-
լակերպեալ զտէրն տեսանելով զաւարթնոց՝
հարցանէին զմիմեանս, ո՞վ է սա՝ որ դիմեալ
գայ յեդովմայ, կարմրութիւն ձորձոց իւրոց
'ի բոսորայ, գեղեցիկ պատմուճանաւ և
բազում զօրութեամբ. և լուեալ 'ի նմանէ, ես
խօսիմ զարդարութիւն և զիրաւունս փրկու-
թեան, իբրև 'ի վն հաստին գաղտնեալ խոր-
հրդոյն, սքանչացան ի բազմապատիկ իմաս-
տութեան նյ, և առաւել քան զառաւել զե-
ղուն ցնծութեամբ։

Այսուհետև ոչ միայն իբրև 'ի հրեշտակս
ակնածն նայել ընդ հրեշտակացեալս 'ի մարդ-
կանէ, այլև իբրև յազգականաց նյ. զի տե-
սին

սեն զա̃ծ ազգակից մարդկութեան . և երկնից պատգամնելին թշ̃րին փառաց անօրինաբար խոնարհելոյ քան զհրեշտակական բնութի , և ոչ նուաճելոյ յերկրական բարձրութէ . և փառս անձանց համարելին փառաւորել ըզբանն մարմնացեալ՝ զա̃ծն մարդացեալ զյս̃ քս̃ , որ խորհրդով անօրէնութե ազգակիցս արար զերկրաւորս ը̃ երկնայնոց . և պատուելով զմարդկային բնութիւն՝ պատուականրեաց և զհրեշտակս ա̃յ զդասս անդրանիկ եղբարց ։ Այս ա̃մ և որ ՚ի սորին հային ուրախութե պատճառք՝ յիրաւի տօն փառաւորութե յերկինս առթեն այսօր երկնաւորաց ։

Այլ քեզ զի՞ է առէմ , եկեղեցի՞դ զինուորեալ յերկրի , տօնել զ՚ի յերկինս համբարձումն փեսայացեալ բանին . ո՞չ ապաքէն ա՛նկ էր քեզ ՚ի սուգ մտանել առաւել և ՚ի պահս . զի , մինչդեռ ը̃ նա էր փեսայն՝ ո՞չ է մարթ պահել . այլ յորժամ վերացի ՚ի նմանէ փեսայն , ապա պահեսցեն յաւուրսն յայնոսիկ ։ Այո յիրաւի . զի ո՞ր հարսն սիրելի կարող էր ՚ի տեղի օգոյ տօն ուրախութե կատարել ը̃ բաժանիլ փեսայիւն յիւրմէ մ̃ գնալոյ յանդարձ ճ̃պհորդութի , և հեռանալոյ այնչափ՝ որչափ հեռի են երկինք յերկրէ ։ Ո՞չ զարմանայք ընդ այս ո՜վ մանկունք եկեղեցւոյ տօնասէրք , կատարէչք աւուրս հանդիսի . այո այդ այդպէս է առէք , այլ զպատճառսն կամիմք լսել ։

Լուարուք զգեղեցիկ պատասխանիսն յեկեղեց-

ղեցւոյ անտի՝ որ է դստր վերինն սիոնի : Երկրպագումք աստ սաղմոսերգութեամբք ուսուցանեմ որդւոց իմոց յաւուրս համբարձման զկերպն պատճառս ուրախութեան իմոյ և տօնախմբութեան Քի վերանալ անմահ փեսային յերկրէ յերկինս : Ըաղեցէք՝ զօր նուագէք յաւուրս տօնի, զՏն է երկիր լրիւ իւրով . մինչև ցկատարած, սա ինքն է թագաւոր փառաց . և զԾափս հարէքն ամ հեթանոսք, մինչև ցվախճան, զի այ զօրութիւնք յերկրէ յոյժ համբարձան : Սաղմոս ասացէք հոգւով, սաղմոս ասացէք և մտօք . սաղմոս ասացէք այ իմաստութեամբ, սաղմոս ասացէք Թգրին մերում, սաղմոս ասացէք հոգւով դաւթի և պօղոսի . և յայնժամ հասու լինիք իմաստից ուրախարար տօնախմբութեան :

Ապաքէն այսօր ուսաք տօնակից հոգեղէնաց լինել հողեղէնքս . այսօր ուսաք ուրախակից լինել հրեշտակաց ուրախակից եղելոց բնութեան ազգի մարդկան . այսօր ուսաք՝ զի մի է եկեղեցի վերին և ստորին, երկնաւոր և երկրաւոր, անդրանկաց հրեշտակաց՝ և կրտսերաց մարդկան . վէմ մեր է և նոցայն ուրախութիւն, մեր է և նոցայն տօնախմբութիւն . վէմ և սաղմոսեմք . Տն է երկիր լրիւ իւրով, տիեզերք և ամ բնակիչք նր . և յերկրէ յերկինս ելեալ մեր խորհրդով՝ որ և երկիր կենդանեաց, զանդամօք բնակչացն խորհրդածեմք ցնծութիւն յառաջնել իւրեանց Քի վերելս երկնաւոր փեսայ

 սայ

տայրն ։ Համբարձէք իշխանք ասելով ըզ-
դրունս ձեր 'ի վեր, և մտցէ Թ̃գ̃ր փառաց,
և որ 'ի կարգին ։ Նա առաջին պատճառ
տօնիս՝ տօնակցութիւն երկրաւորաց ը̃ երկ-
նաւորաց ։ և ո՞ւր մնայ այնուհետև սուգ և
տրտմութիւն, երբ մտօք յերկինս մտանեմք
և յերկինս տօնեմք զվերանալ տ̃ն յերկինս ։
Իսկ երկրորդ պատճառ ձօխագոյն, այն է
առանձին ուրախութիւն մեր յերկրի, 'ի խոր-
հուրդ միւս սաղմոսին մեկն ստորագրի ։
Ծափս հարէք ասէ ա̃մ հեթանոսք, յայտ
է թէ որդիք մարդկան՝ եկեղեցի հեթանո-
սաց, աղաղակեցէք առ ա̃ծ 'ի ձայն ցնծու-
թեան ։ Ե՞ր վ̃ս ։ 'ի կարգ անկեալ բանին
տեսցես ։ քանզի ասէ ։ զի տ̃ր բարձրեալ և
ահաւոր Թ̃գ̃ր մեծ 'ի վ̃ր ա̃մ երկրի ։ իմա՛
Երևեցաւ խոնարհեալ յերկիր հեզութ̃բ,
առ 'ի բարձրացուցանել զմեզ 'ի վ̃ր երկրի
և 'ի վերոյ քան զերկինս ։ վ̃ոյ հնազանդ ա-
րար զժողովուրդս մեզ, և զհեթանոս 'ի
ներքոյ ոտից մերոց ։ այս է հաստատեաց
ք̃ս իւր հոգևոր Թագաւորութ̃ն 'ի վ̃ր երկրի՝
կացուցանելով նոր եկեղեցի և ժողովուրդ
սեպհական յա̃մ ազգաց և 'ի ժողովրդոց, և
առնելով մի հօտ և մի հովիւ ։ զհեթանոս
մարդիկն նոր իջել արար, և զխուժադուժ
դևս ը̃ ոտիւք եկեղեցւոյ արար ։ ը̃ն, ահա-
ւասիկ ետու ձեզ իշխանութիւն կոխել զօձս
և զկարիճս և զա̃մ զօրութիւն Թշնամւոյն ։
Ա̃ն զի ընտրեաց զմեզ իւր 'ի ժառանգութ̃ն՝
զգ̃եղեցկութ̃ն յակոբայ նախոյ սիրելւոյ քան

զառաջինն . կարգեալ իւր ժառանգաւորս և ժառանգակիցս զնոսա հաւատացելս , առնելով զժողով հաւատացելոց իւրոյ՝ ազգ ընտիր , ազգ սր , քահանայութիւն , թագաւորութիւն , ընդ միաձայն վկայութեան նախամարգարէին և վիմին հաւատոյ . և այս նմ կատարեցաւ զկնի յարութեան փրկչին մինչև 'ի համբարձումն նր յերկինս՝ յաւուրս քառասուն , յորս խօսէր ընդ աշակերտսն վն արքայութեան այ , այս է՝ վն կարգաւորութեան եկեղեցւոյ իւրոյ զինուորելոյ , որ է օրինակ արքայութեան երկնից կմ յաղթանակօղ եկեղեցւոյ ։ Արդ 'ի լրումն տնօրինական խորհրդոցս , յետ առնելոյ զեկեղեցի ամ երկինս յերկրէ , պէտք էին տն վերանալ յերկինս , և անդր ուղղել զգնացս մեր . վոյ ասէ , համբարձաւ տծ օրհնութբ , և տր մեր ձայնիւ փողոյ , ձայնակցութբ առաքելոց՝ որ փողք եղեն քարոզութեան աւետարանի , ընդ գաբրիէլեան դասուց ։ Այլ զինչ իցէ մեզ չլինել ձայնակից ուրախութեան երկնի և երկրի ։ Բայց թէ մեկնեցաւ 'ի մէնջ երկնաւոր փեսայն , չէ և չէ այդ՝ նշանակ կմ առիթ սգոյ և տրտմութեան . նախ՝ զի ինքն իսկ ասաց , եթէ ես ոչ երթայց , մխիթարիչն ոչ եկեսցէ առ ձեզ . ապա եթէ երթամ , առաքեցից զնա առ ձեզ ։ Երկրորդ՝ զի ասաց դարձեալ . և ահաւասիկ ես ընդ ձեզ եմ զամ աւուրս մինչև 'ի կատարած աշի . զի անմեկնելի կայ մնայ յեկեղեցւոջ իւրում հոգւովն իւրով սրբով ։ Երրորդ՝ զի թէպէտև մարմնով

վե-

վերացաւ, բայց տակաւին և մարմնով ոչ բաժանեցաւ. զի եթող մեզ 'ի մխիթարութիւն զխորհուրդ նորա մարմնոյ և արեան իւրոյ. և ոչ յերկինս նստաւ յաթոռ արքայութեան իւրոյ, նոյնպէս և յեկեղեցւոջ բազմի 'ի խորան արքայութեան իւրոյ. և այն ոչ յետ՝ ժամ ևեթ, ոչ երբեմն, այլ ը̅ ա̅մ տիեզերս յա̅մ եկեղեցիս ո̅րց։ Որդ զի գալոց է միւսանգամ ը̅ իւրում անսուտ խոստմանն, և ը̅ վկայելոյ հրեշտակաց առ առաքեալսն. այս յո՛ որ վերացաւն 'ի ձեռն յերկինս, սոյնպէս եկեսցէ՝ զոր օրինակ տեսիք զդա երթեալ ը̅ երկինս։ Սա է իմաստութիւն ո̅րց՝ պատրաստ լինել միւսանգամ գալստեան փրկչին. և այս լինի՝ եթէ սիրտք մեր իցեն հանապազ

ը̅ նմա յերկինս։

Նա ահա վերջին և վախճանական պատճառ տօնի համբարձման, ըստ համբառնալ և մեզ ը̅ քնի յերկինս, այժմ կարօտով սրտի առ երկնաւոր փեսայն հոգւոց մերոց. զի տենչ սրտի առաւելու առ սիրելին տեղափոխեալ 'ի հեռաւոր վայրս. իսկ յետ յառնեաց՝ հոգւով. ոչ փայլակնաբորբոք բոց յերկրէ յերկինս սլացեալ, ը̅ առաւելու սիրոյն. և յաւուր հատուցակաց յարութե նաև մարմնով յափշտակեալ ընդառաջ տ̅ն յօդս ը̅ լուսեղէն պարս աջակողմեան դասուն։ Նա զայս ա̅մ միաբան քարոզեն մեզ

դաւիթ և պօղոս։

Դաւիթ առէ 'ի խորհուրդ տօնիս. իջանիք ժողովրդոց ժողովեցան առ ա̅ծ աբրահամու.

մու. զի ա՟յ զօրութիւնք յերկրէ յոյժ համբարձան. այս է. փրկիչն մեր 'ի վերանալ իւր յերկինս յաւուր աստ համբարձմանն՝ ոչ ել 'ի վեր միայնակ, այլև զիշխանս ժողովրդոց մերոց զո՟ր նախահարս, զնահապետս և զմարգարէս ը՟դ իւր ժողովեալ տարաւ առ հայր իւր՝ որ կոչէր զինքն ա՟ծ աբրահամու. որով և մեզ յոյս մեծ ետ վ՟ն մեր առ նա ժողովելոյ, յայտ արարեալ՝ թէ ոչ զնա ա՟ծային իւր զօրութ՟բ եհան 'ի բանտէ, և ամբարձ յերկրէ յերկինս, նովին ամենազօր զօրութ՟բ և զմեզ ունի ամբառնալ. ըս՟, և ես յորժամ բարձրացայց յերկրէ, զամենեսին ձգեցից առ իս։

Իսկ թէ ո՞յք իցեն ամենեքին այսոքիկ, դարձեալ վկայէ ա՟ծահայրն դաւիթ յաւուրս սաղմոսի. Ո՞վ ելցէ 'ի լեառն տ՟ն յերկինս, կամ ո՞վ կացցէ 'ի տեղւոջ սրբութ՟ն ն՟ր 'ի խարանս երկնից արքայութեան։ Որ ս՟բ է աստ ձեռօք, ա՟յ բարեգործ և արդարութ՟բ արդիւնական ա՟ծ հաւատոց, և անբիծ սրտիւ, ա՟յ ս՟բ և մաքուր յա՟մ աղտոյ մեղաց. և արդարև երանելի որ ս՟բ են սրտիւք, զի ն՟ք զա՟ծ տեսցեն։ Որ ոչ էառ զնանրութիւս յանձն իւր, այս է՝ ո՛չ եղև անձնատուր յունայնութիւնս աշ՟ի, յինչս, 'ի փառս, և 'ի զրգանս աշ՟ի. այլ յանձն էառ զխաչն ք՟ի, և գնաց զկնի ն՟ր՝ հասանել լիութ՟ն երկնից բարութ՟ն. և ո՛չ երդուաւ ը՟դ ընկերի իւրում նենգութ՟բ, այլ էր այո՛ն այո՛, և ո՛չն ոչ 'ի բերանի և 'ի սրտի ն՟ր. անկեղծ, աննենգ. ճշմարտախօհ,

խոհ, ճշմարտախօս. ոք ա͞ծասէր՝ նոյնպէս և եղբայրասէր ։ Սա առցէ զօգնութիւն 'ի տ͞եառնէ իւրմէ, և զողորմութի յա͞յ փրկչէ իւրմէ, աստ շնորհօք, և 'ի հանդերձեալն փառօք ։ Այս ազգ արդարոց է՝ ճշմարիտ հաւատացելոց ք͞ի, որ խնդրէ զտ͞ր յ͞ս, խնդրէ տեսանել զերեսս ա͞յ յակոբայ, և լինել ա͞ծատես յաւիտեան. և յայտ է թէ որ խնդրէ՝ գտանէ, ը͞ս տ͞ն բանի ։

Իսկ պօղոս գեղեցիկ բովանդակէ զա͞մ 'ի մի բան. եթէ յարեայք ընդ ք͞ի, ապա զվերինն խնդրեցէք, ուր ք͞ս նստի ը͞ն աջմէ ա͞յ. զվերինն խորհեցարուք, մի՛ զայս՝ որ յերկրի աստ է. քանզի եթէ ճշմարիտ քրիստոնեայք էք՝ ո՛չ միայն խաչակից եղէք ք͞ի, այլև մեռայք ը͞նմի. և կեանքն ձեր ծածկեալ են ը͞ն ք͞ի յա͞ծ. որ է յարութի հոգւոց և կենդանութի առաջին ։ Ապա ձեզ խնդրել համբառնալ ը͞ն ք͞ի յերկինս նաև յարուցեալ մարմնով, զի յայտնի լինիցի կենդանութի ձեր անմահական. արդ ը͞ն այդ մի՛ յերկուանայք; այլ երկայնամիտ լերուք յուսով. զի յորժամ ք͞ս յայտնեսցի կեանքն ձեր 'ի միւսանգամ գալստեան իւրում, յայնժամ և դուք ը͞ն նմա յայտնեսջիք փառօք ։

Այսպիսեօք տօնեսցուք ա͞ծիմաստ և հոգեշահ խորհրդովք զհամբարձումն ք͞ի՝ ո՛վ ա͞ծասէրք. զի և վախճանի տօնիս արժանի լիցուք հասանել. որ և այն է վախճան և գիտաւորութի ա͞մ անօրէնութեց փրկչին, ա͞յ փրկութի մեր ։ Այսպիսեօք վառեալք

տենչանօք փափաքեսցուք տեսոյն քոյ 'ի յերկինս, և Տր օրինակի նոր ճանապարհորդեալ Է մեզ կիրս մարդկային կենցաղոյս առանց մեղաց, մեռցուք օրրով 'ի խաչի, և յարուցեալ այժմ հոգւով, և յաւուր յարութենան մարմնով վերասլասցուք առ Տէրն մեր. և յայնժամ տօնեսցուք զհամբարձումն մեր զոյգ Է համբարձմանն քո՝ յամենածողով տօնի երկնային հարսանեաց, անթիւ բազմութեան երկնաքաղաքացեաց՝ հրեշտակաց և մարդկան, 'ի փառս փառաւորեալ փրկչին մերոյ և Տն և Այ՝ յՈր քոյ. Է որում հօր և ամենայնոք հոգւոյն փառք և երկրպագութի յաւիտեանս. ամէն։

XXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXX

# ՃԱՌ․ ԺԷ։

## 'Ի Գալուստ Հոգւոյն սբյ։

Հոգի Այ, Հոգի Տն Որ և բարի, ով հագի հեզութե, աղբիւր բարութե, զեղումն քաղցրութե, աւետիք տերական խաստաման, մի միայն մխիթարիչ սրտից մերոց, կեանք և կենդանարար հոգւոց և մարմնոց, չնչեան յիս աղաչեմ զսիւք զոճարթութե շնորհաց քոց, խոնարհեայց էջ աղաչեմ յաւուր սատ իջմանք քո 'ի դասս առաքելոց, էջ և 'ի օրրս իմ տառապեալ և անարժան՝ բղխել զբանս քո բարին զքէն և զքոյոց պարգևաց,

ա-

առաքեալսն 'ի հօրէ որդւով՝ 'ի լինել մեզ ուսուցիչ, յիշեցուցիչ, զօրացուցիչ, և առաջնորդ 'ի կեանսն յաւիտենից ։

Զհոգւոյն զգալուստն տօնէ այսօր եկեղեցի ուրախութբ մեծաւ հանդերձ որդւովք իւրովք, որք առին զհոգին որդեգրութե. զի ոչ եթէ զհոգի ծիս առաք, այլ զհոգին՝ որ յոյն շնորհեցաւ մեզ. և երանի թէ առնուցումք յաւուրս հանդիսի զհոգին զայն Ճշմարիտ՝ զհոգին ածեղէն. որ է հոգի այ, և ած Ճշմարիտ, հոգի հօր և որդւոյ, էակից և փառակից նոցին, բղխումն անճառ և անսպառ. հոգի անեղ և կատարեալ. փչումն էական և շունչ կենդանական. օրրա ածութե, և տէր անձնաւոր, զօդ միութե անքաժանելի նր երրորդութե ։

Զայս մեր յաւուրս իջման նր հոգւոյն 'ի միտ առէք մեր հոգիք հեզք և խոնարհք, և հոգի առէք այսօր ածեղէն ը նր առաքելս. և վառեցարուք հոգւով այ. և նովին վարեցարուք յայսմհետէ յամ 'ի կեանս ձեր. զի որ հոգւովն այ վարին, նք են որդիք այ. քզի և օրս սքանչելի ինքնին զարթուցանէ և արծարծանէ 'ի հոգիս ձեր խորհուրդս մեծամեծս և հոգեշահս. մանաւանդ որոց յարուցեալ է ը քնի 'ի նոր կեանս, և յօրէ անտի համբարձման տն՝ ը տն պատուիրանի նստեալ յեմ 'ի խաղաղութիւն հոգւոյ, աղօթիւք և խնդրուածովք ակնունելով ընդունելութե հոգւոյն սբյ յաւուր աստ պէնտէկոստէի, որ թարգմանի օր յի-

ներորդ ՚ի զատկէ և այլք :

Ո՜վ սքանչելի աւուրս խորհրդոյ. մարմին մեր. քո՛ գլուխ մարմնոյ եկեղեցւոյ իւրոյ՝ տասն աւուրբք յառաջ յերկրէ յեր՚կինս վերանայ, և այսօր յաւուրն տասներորդի՝ հոգին քո՛ ի յերկնից յերկիր իջանէ, առաքել ՚ի հօրէ յանուն միածնին. մարդիկ առաքեն առ ած զած մարդացել, և ած առաքէ առ մարդիկ զած փոխան նոյ, զի հայր զհոգի իւր ընդ փոխան միածնին իւրոյ : Ո՜չ. որդին պակասի հոգւով յերկրէ՝ յելս իւր մարմնով յերկինս, և ոչ հոգին պակասի յերկնից՝ յիջանել անդ իւրում յերկիր : Ո՜վ ամենախնամ տեսչուէ, և անհասանելի մարդասիրութե մարդասէր հոգւոյն այ. որ էջն այսօր սիրով առ մեզ սէրն ածեղէն. զի ած սէր է. և սէր հայր ՚ի սիրոյ որդւոյն զսէր իւր զհոգին առաքեաց առ մեզ, ընդ-պարգևն առատութե, զծովն բարութե, զլիութի երանութե. զի այսօր ստուգապէս ճշմարտեցաւ առածն հոգեբղխին, եթէ հոգի այն ելից զտիեզերս :

Եւ միթէ ո՞չ էր յերկրի ընդ հոգին ած նախ քան զիջանել իւր այսօր յերկիր. և կարի իսկ քաջ. բայց և այն ճշմարիտ, զի որ էրն ընդ մեզ միշտ՝ նորօրինակ եղև այսօր ընդ մեզ. միշտ ծագէր անշէջ ճառագայթ իմանալի արեգական յերկիր, այլ լուսաւորութիւն փառաց նր և ջերմութի սիրոյ նր՝ ամպով մեղաց չի խափանեալ՝ ոչ այնպէս ազդէր յոգիս մարդկան. իսկ այսօր փարատեցաւ ամպն,

ամպն , և նորոգ ծագեալ երևեցաւ արե-
գակն ։ Այս այս է բան շարականոցին . * Նոյ-
սոր զուարձացան արարածք՝ ճշմարիտ գա-
- լստեամբ հոգւոյն սրբոյ ‖ ։

Գիտեմք , զի սա ինքն արարչագործ Տր հո-
գին՝ արարչակից հօր և որդւոյ՝ 'ի սկզբանէ
անտի Յի շրջէր 'ի վր ջուրց կենդանածր-
նել զարարածս . նոյն ինքն հոգին ածեղէն
էր՝ որ 'ի հօրէ բերանով որդւոյ փչեալ յե-
րեսս նախաստեղծին ադամայ , ոչ միայն
տայր նմա շունչ կենդանութե և հոգի բա-
նական , այլև զհոգի շնորհաց սրբութեան
ներքին մարդոյն և սկզբնական արդարու-
թեան . ոպ և նա ինքն էր՝ որ ելից զնահա-
պետս , խօսեցաւ 'ի մարգարէս , և խաղաց
'ի վր դաւթի և համօրէն ընտրելոց իւրոց
'ի հնութե օրէնս , ոպ հոգի կենդանութե՝
որ շարժէ զմարդ 'ի գործ կենդանական , և
ոպ ոգի զուարթութեան՝ որ ուրախ առնէ
զսիրտ զսկիզբն կենդանութե . և նս առա-
ւել . զի թէ մարմինն հոգւով կեայ և շար-
ժի , գիտեա՛ զի և հոգին մարդոյ հոգւով
այ ևեթ կեայ և շարժի հոգեպէս . և եթէ
հոգին մարմնոյ՝ է այնչափ կենսատուիթ , ըր
հոգին է կենդանարար , մարմինն ինչ ոչ օգ-
նէ , զի՞նչ իցէ այնուհետև հոգի հոգւոյ ,
Տր հոգին այ ածեղէն . քանզի ած հոգի է ,
և հոգին Տր հոգի այ . և եթէ այսպէս , ա-
պա ուր հոգի ածն է , անդ ազատութիւն է ,
անդ երանութիւն , անդ ուրախութիւն անտր-
տում , անդ խաղաղութիւն , և խնդութիւն 'ի
հո-

Հոգւոյն Սրբոյ. և վէմ մեզ գինի ուրախ առնէ, իւղ՝ զուարթ, ընդ նմին և ներգործութիւնք հոգւոյն 'ի գիրս յայտնուածս հոգևոր և յօծուածս հոգևոր օրինակին:

Այլ ո՛վ անհնարին աղետից և անկարծելի գիպուածոյս. զի ինքն հոգին մեծ՝ ուրախութիւն հոգւոց և մխիթարիչ անախտ. և անտրտում, ոչ էր ուրախ 'ի վերայ հոգւոց մարդկան՝ յորէ, յորմէ տրտմեցուցին զնա նախածնօղք մեր և զաւակք նոցա վատթարագոյնք. զի մարդասէր հոգին իմաստութեան փախչէր 'ի նենգութենէ, և հեռանայ 'ի խորհրդոց անմտաց, և ոչ բնակէ 'ի մարմնի վարեցելոյ մեղօք. մաքուր և սուրբ աղաւնի ոչ հանգչի 'ի գէշս և 'ի գարշս, այլ դառնայ 'ի տապանն. զի զի՞նչ միաբանութիւն է լուսոյ ընդ խաւարի, կամ սրբոյն ընդ պղծոյ, և առաւել՝ որքան սրբոց ընդ անսրբից. մինչև տարջանալ իւրն ընդ մեզ առնելոյն զմարդ, և առնել. մի՛ մնասցէ հոգի իմ 'ի մարդկանս յայսմիկ՝ վասն լինելոյ դոցա մարմին: Եւ այսպէս անհոգի մնաց ազգ մարդկան և դիակնացաւ հոգեպէս, մինչև 'ի լինել բանին մարմին, և բնակել 'ի մեզ հոգւովն իւրով սրբով:

Ապա ուրեմն եթէ արդարև ոմանք արժանի եղեն հոգւոյն սրբոյ՝ յետ ապականութեան հասարակաց բնութեանս մերոյ, այն էր 'ի նախնեաց արդարեանց քնի, և սակաւ ձիրս շնորհ անզուգական. և այն տակաւին թերակատար, և ոչ կատարեալ՝ որպէս յօրէնս շնորհաց.

Ոչ՝

որ՝ 'ի համարակաց արկածից մահու պահել ցայս վայր կենդանի Ենովքայ և Եղիայի՝ ոչ զայն յայտ առնէ, թէ անմահացան, զի են տակաւին մահկանացու, և կարեն մեռանել. և ունին իսկ մեռանել յաւուրս յետինս. այլ հոգին այ՟ պահէ զհոգիս նոցա 'ի մարմինս առանձին պարգեւօք տեսչութեան իւրոյ մինչեւ ցժամանակն սահմանեալ ըստ գաղտնի խորհրդոց իւրոց. և եթէ ոմանք ոմանք յարեան 'ի մեռելոց զօրութ՟ք նշանագործ հոգւոյն այ՟, եթէ նախ քան զգալուստ փրկչին յս՟՝ և եթէ 'ի գալստեան և յետ գալստեան կենարարին, ոչ եթէ անմահութեան և անապականութեան էր գուշակ, այլ առժամանակեայ նորոգութ՟ն կրկին կենդանութեան. վ՟յ և անդրէն մեռան վերստին. մինչեւ յարուցէ զն՟ս հոգին այ՟ 'ի կեանս անախտութեան և անեղծութեան ։ Այնօրինակ և հոգեպէս ընդունակ լինել հոգւոյն այ՟ թէպէտեւ ոչ սակաւուց վիճակեցաւ յառաջնոց, բայց ոչ էր համարակաց պարգեւ, և ոչ առատաբուղխ շնորհի զեղումն ըս՟ ամենառատ հաճութեան իւրոյ, այլ նշոյլ հանդերձելոյ բարերարութեան, և ըստ մասանց ձիրք առատութեան նր՟՝ իբրեւ հանդերձել փրկչին աւետիք և առհաւատչեայ և արդիւնք կանխաժամանն ։

Այլ և առաջինք թէպէտեւ բարեկամք այ՟ և մարգարէք արարան հոգւով, այլ առին եւեթ զհոգի ծառայութեան նոն. և ոչ զհոգի ազատութեան և որդեգրութեան, որով մեք ա-

ղա

զաղաղակեմք աբբայ հայր, որպէս որդիք Այ շնորհօք. ուր նք մր միայն կարգային զհետ երկիւղիւ : Եւ այս իսկ էր պատճառն, զի թէպէտև հաւատարիմ ծառայք բազում եղեն Այ հաւատարմագոյնք և քան զբազումս յօրինաց շնորհաց, այլ որպէս 'ի ծառայական կարգի մնացին արտաքոյ տանն Այ՝ երկնից արքայութեան ասեմ, բանտարգելեալ հոգւով որպէս պարտաւորք յանցաւորութեան նախահօրն 'ի սանձերս մահու. մինչև հատուցեն զպարտս ադամայինն բնութե 'ի ձեռն նորոյն ադամայ՝ իմա քնի որդւոյն Այ և որդւոյն ադամայ, և 'ի ձեռն նորա՝ որ էր ճշմարիտ որդի ազատ և ազատարար՝ առցեն զհոգի որդեգրութեան և ազատութեան. զոր և ընկալանն իսկ յիջանել քնի հոգւով 'ի դժոխս առ երանեալ արդարոց. որով և արժանի եղեն վերանալ ընդ փրկչին յերկինս, և մտանել 'ի տունն Այ իբրև որդիք և ժառանգք և ժառանգակիցք քնի՝ հոգիք ամ արդարոց կատարելոց :

Իսկ 'ի նոր օրէնս զի՞նչ. այն ինչ ծնեալ քս ընդ մարմնոյ՝ վերածնեալք աւազանաւ 'ի ն̃ք հոգւոյն, իսկ և իսկ ընծայիմք յորդեգրութի հօրն երկնաւորի և յեղբայրակցութի քնի և 'ի ժառանգութիւն արքայութե. վն զի ծնեալքս որդիք բարկութեն՝ վերստին ծնանիմք 'ի ջրոյ և 'ի հոգւոյ որդիք փրկութե : Ով անճառ շնորհիս, ով անպատում պարգևացս. միայն թէ մք ապաշնորհ ինչ գտանիցիմք, և մք զպարգևն Այ առ ոչն հար-

կա

կանիցեմք ։ Յայտնի են ձիրք պարգեւաց հոգւոյն եւ շնորհք առաքելութն նր յետ գալստեան փրկչին. զի յայնմհետէ դարձոյց հայր երկնաւոր զանէծս յօրհնութիւն, եւ զբարկութն իւր ՚ի փրկութն. իջցէ ասելով անդրէն հոգի իմ ՚ի մարդիկդ յայդ վս լինելոյ որդւոյ իմոյ մարմին, քս մարդ ճշմարիտ, յորոյ վր էջ հոգի իմ ՚ի յորդանան, եւ ես վկայեցի՝ եթէ որդի իմ ես դու, եւ ես այսօր վերստին ծնայ զքեզ, եւ քեւ զորդիս մարդկան. եւ եղիցին ինձ այսուհետեւ յուստերս եւ ՚ի դստերս. եւ տաց զհոգի իմ ՚ի նոսա, եւ մի մեկնեսցի ՚ի նոցանէ յաւիտեան ։ Ի հնումն մարգարէք ոմանք հոգիընկալք լինէին. այլ յետ մարմնանալոյ միածնիս, եւ կատարման անօրէնութն նր եւ վերանալոյ առ իս, հեղից յոգւոյ իմմէ ՚ի վր ամ մարմնոյ, եւ մարգարէասցին ուստերք ձեր եւ դստերք. երիտասարդք ձեր տեսիլս տեսցեն, եւ ծերք ձեր երազովք յերազասցին. եւ եղիցի ամ որ կարդասցէ զանուն տն, կեցցէ ։

Տեսանէ՞ք զխորհուրդ գալստեան հոգւոյն սբյ, որ եղեւ արդասիք գալստեան բանին յծ, եւ վերանալոյ անդրէն առ հայր, եւ հաշտեցուցանելոյ զնա ը արարածս. տեսանէ՞ք, զի խորհրդով ասէր մեզ տէրն, լաւ է ձեզ՝ եթէ ես երթամ. զի իջումն հոգւոյն սահմանեալ էր լինել յետ ելից որդւոյ առ հայր. արդ ոպ որդին ելանելով՝ եբաց մեզ զդրունս երկնից, նոյնպէս եւ հոգին իջմամբ

կանխեցեմք ։ Այսպիսի են ձիրք պարգեւաց հոգւոյն եւ շնորհք առատութեան նորա յետ գալստեան փրկչին. զի յայնմհետէ դարձոյց հայր երկնաւոր զանէծս յօրհնութիւն, եւ զբարկութիւն իւր 'ի փրկութիւն. իջցէ առելով անդրէն հոգի իմ 'ի մարդիկդ յայդ վ՟ն լինելոյ որդւոյ իմոյ մարմին, Ք՟ս մարդ ճշմարիտ, յորոյ վ՟ն էջ հոգի իմ 'ի յորդանան, եւ ես վկայեցի՝ եթէ որդի իմ ես դու, եւ ես այսօր վերստին ծնայ զքեզ, եւ քեւ զորդիս մարդկան. եւ եղիցին ինձ այսուհետեւ յուստերս եւ 'ի դստերս. եւ տաց զհոգի իմ 'ի նոսա, եւ մի՛ մեկնեսցի 'ի նոցանէ յաւիտեան ։ 'Ի հնումն մարգարէք ոմանք հոգիընկալք լինէին. այլ յետ մարմնանալոյ միածնիս եւ կատարման տնօրէնութեան նորա եւ վերանալոյ առ իս, հեղից յոգւոյ իմմէ 'ի վ՟ն ա՟մ մարմնոյ, եւ մարգարէասցին ուստերք ձեր եւ դստերք. երիտասարդք ձեր տեսիլս տեսցեն, եւ ծերք ձեր երազովք յերազասցին. եւ եղիցի ա՟մ որ կարդասցէ զա[illegible] տ՟ն, կեցցէ ։

Տեսանէ՞[illegible] ոգ գ[illegible]տեան հոգւոյն մե՞յ, որ [illegible] ս[illegible]տեան բանին [illegible], եւ վեր[illegible] հայր, եւ հաշ[illegible]ուցանե[illegible]ս. տեսա[illegible] զի ի[illegible]տրն, լաւ է [illegible]եթէ [illegible]մն հոգւոյն [illegible]անի[illegible]որդւոյ առ [illegible] եբաց մեզ [illegible] հոգին իջ[illegible]մամբ

մամբ իւրով եբաց զսահանս երկնից , և անձրևեաց ՚ի մեզ զԾմ յորդաւծ շնորհաց և պարգևաց իւրոց իբրև զջուրս բազումս՝ որք ծածկեն զծովս . զի հոգի տն ելից զտիեզերս ։

Նոյն այն է՝ զոր տէրն ասաց . որ հաւատայ յիս , որպէս ասեն գիրք , գետք յորովայնէ նր բղխեսցեն ջրոց կենդանութե ։ Զայս ասէր վս հոգւոյն՝ զոր ընդունելոց էին . զի չև էր հոգի , քանզի յս չև էր փառաւորեալ ։ Նաև ուրեմն օրս պենտեկոստէից է որ վայելելայ յարդիւնս վաստակոց փրկչին . զի գալուստ հոգւոյն ոչ՜ այլ եղև պտուղ մարդեղութե բանին այ և չարչարանաց նր ։ Նոյն այն է՝ զոր տէրն ասէր . ես եկի զի զկեանս ունիցին , և առաւել ևս ունիցին . կեանս ունիցին մարմնանաւոր իմով , յորոյ ՚ի նշանակ բժշկեցի զԾմ ախտս , և զցաւս Ծմ փարատեցի ՚ի մարմնոց մարդկան . այլ ես ետու զմարմին իմ յԾմ ցաւս չարչարանաց՝ մահու չափ ; և մահու խաչի , զի և հոգիք նոցա բժշկեսցին . ես մեռայ մարմնով , զի նոքա կեցցեն հոգւով . ես տուի զհոգի իմ մարդկապէս , զի տաց և մարդկան զիմ հոգի ածապէս . այս է ասել՝ առաւել ևս ունիցին ըղկեանս ինև և արգասմանց կենարար մահու իմոյ . քանզի յետ յարութե իմոյ և ելանելոյ առ հայր՝ առաքեցից զհոգի հօր իմոյ . որ և իմ հոգի , զհոգին ճշմարտութե , զկենդանարարն ազանց բոլորեցունց հոգեղէնս . զի որպէս ես մարմին զգեցայ վս մարդկան , նոյնպէս

պէս և մարդիկ հոգի զգեցցին ինէն և վասն իմ. առի զմարմին նց, տաց նց զհոգի իմ. և լինիցին կենդանիք. ըՏ, զգենուցուք զօ-

րութի՛ 'ի բարձանց ։

Որյամ օրինակ զգալի ցուցաւ տեսիլ յարու-թե մարմնոց, զոր եզեկիէլն ետես. զի նախ ոսկերքն մեռելոտիքն կցեցան յօդ առ յօդ, և ջիլք և մարմինք պատեցան զնոքօք. ձևա-ցան մարդ կատարեալ ըս արտաքնոյն. այլ զի ոչ գոյր 'ի նս շունչ, ՟թ հոգի, չէր տիրա-պէս յարութի. և տակաւին անկեալ տարա-ծեալ կային սփռեալ յերեսս դաշտի Յիս. մինչև 'ի վերստին սքանչելեաց Տն եկն ե-մուտ 'ի նս շունչ և հոգի կենդանի. և այնու-պէս եղեն մարդ կատարեալ 'ի մարմնոյ և 'ի հոգւոյ. կենդանացան և յարեան կանգնե-ցան 'ի վե ոտից. որով և Ճշմարտեցաւ յա-րութի մեռելոց։ Որգ ըս այսն օրինակի 'ի լինել բանին մարմին՝ սկիզբն եղև նորոգու-թե մեռեալ բնութեա. զի մարմին զգենուլ որդւոյ՝ էր որպս թէ պատել զչորացեալ ոս-կերս մեր ջլօք և մարմնովք. այլ 'ի շնչել այ-սօր հոգւոյն սբյ 'ի վերնատան՝ զգեցոյց մեզ հոգի կենդանի, և կենդանացոյց, և ետ գործել զգործս կենդանութե հոգեպէս, նորահրաշ նորոգութ ըս ներքին մարդոյն։

Սու վճռկ գալուստ հոգւոյն սբյ եղև այսօր 'ի նմանութի սաստիկ հողմոյ, որ է նշանակ շնչոյ և ոգւոյ. և հանգեաւ 'ի վե առաքե-լոց 'ի նմանութի լեզուաց հրեղինաց. վս զի հուրն 'ի տարերաց մէջն է առաւել ան-մար.

մարմին, առաւել ներգործական, և առաւ-
ել յայտարար հոգեղէն զօրութեանց և ներ-
գործութեանց. այլ մ՟ն և հրեշտակք՝ որ են ան-
նիւթական հոգիք, անխտիր կոչին հոգե-
ղէնք և լուսեղէնք, հրեղէնք և բոցեղէնք.
ա՟ծ, որ առնէ զհրեշտակս իւր հոգիս, և զպ-
պաշտօնեայս իւր 'ի հուր կիզանող. իսկ լե-
զուն յայտ է թէ գործի է կենդանի բար-
բառոյ 'ի բանական կենդանւոյ. մինչ զի այս
ամ իրօք յայտնի կացոյց հոգին ս՟յ՝ եթէ
եկն առ 'ի կենդանացուցանել շնորհօք զմե-
ղօք մեռեալ բնութիւս:

Այլ թէ որպէս կենդանացան, արիացան,
մանաւանդ թէ և հոգիացան առաքեալքն 'ի
ժամուն՝ յեղակարծ փոփոխմամբ, յայտ է
'ի ներգործութեանց հոգւոյն ս՟յ. որ տայր
նց բարբառել յայլևայլ լեզուս զպատգամս
կենդանիս՝ գերահրաշ քան զմարգարէս.
տայր նց մեկնել զհարազատ միտս մարգա-
րէութեանց՝ առաւել քան զոր իմանային տե-
սանօղք 'ի մարգարէանալ իւրեանց. տայր
նց աւետարանել զեկեղ հասեալ փրկութիւն
տիեզերաց աւետեօք հոգւոյն ս՟յ՝ ա՟ծ աւե-
տեացն խոստացելոց 'ի սկզբանէ. տայր նց
տալ և այլոց զհոգին ս՟բ, և շարժել զսիրտս
լսելեաց հոգւովն ս՟վ, և դարձուցանել
հոգւովն ա՟ծ զհոգիս նց առ ա՟ծ:

Այլ զո՞ր օրինակ լոյս վառէ զճրագ, և ինք-
քեան ինչ ոչ պակասի, և ճրագ 'ի ճրագէ
լուցեալ՝ բազմանայ անսպառութբ, այն-
պէս և անսպառ աղբիւրն լուսոյ ս՟բ հոգին

վառեաց զաշակերտս նորա զճրագունս , և զօ-
րութիւնս նորա վառեցին և նոքա զաշակերտեալս , և
լուսաւորեալք լուսաւորեցին զտիեզերս ամենայն ·
և հրացեալք զինեցին հրով հոգւոյն զմտա-
ւորս ։ Ձկնորսք տգէտք ՚ի դպրութենէ՝ եղեն
հոգւով գիտնաւորք կատարեալք , և գերա-
գոյն փիլիսոփայք իմաստունք ըստ Աստուծոյ՝ յաղ-
թողք ամենայն իմաստնոց աշխարհի · տկարք առաքինա-
ցան և զօրացան Քրիստոսիւ զթշնամիս և զխնճնակալս ·
աղքատք մեծացան հաւատով և մեծացու-
ցին զտիեզերս · հինք ըստ օրինաց կարգի՝ նո-
րոգեցան շնորհօք , և նորոգեցին զաշխարհ աստուածգի-
տութեամբ · և պարզաբար՝ մարդիկ սակաւա-
ւորք և աննշանք՝ զգեցեալ զհոգի Աստուծոյ , մե-
ծացուցին զհօտն Քրիստոսի զփոքրիկ , և եղեն կա-
թուղիկէ ամենայն տիեզերական եկեղեցի առա-
քելական , զարդարեալ պէսպէս շնորհօք
հոգւոյն , և փայլեն նշանօք և արուեստիւք·
որովք կերպարանափոխ եղև աշխարհ , և ցուցաւ
երկինք ՚ի յերկրի ։

Այլ ո՞ կարէ բանիւ բովանդակել զգալըս-
տեան հոգւոյն սրբոյ զանբաւ բարիս՝ յեկե-
ղեցի Աստուծոյ՝ յորէ անտի պենտեկոստէից մինչև
յօրս յայս · զի զոր յայնժամ մէին հաւատոյ
ասէր առ ժողովեալս , զնոյն և առ ձեզ ու-
նիմ երկրորդել · ձեզ են աւետիքս և որդ-
ւոց ձերոց , և ամենայն հեռաւորաց՝ զորս կոչես-
ցէ Տէր Աստուած մեր · վասն զի ըստ տիրական խոստա-
ման , հոգին որ իջեալ ՚ի դասս առաքելոց՝
ոչ մեկնեցաւ և ոչ մեկնի երբէք ՚ի կաթու-
ղիկէ և յառաքելական եկեղեցւոյն Քրիստոսի · զի

առ ձեզ բնակեսցէ՝ ասէ , և ի ձեզ եղիցի յաւիտեան : Մինչ զի զո՞ր օրինակ ամ կենդանութիւն մարմնոյ և ամ վայելչութիւն մարդոյն է ՛ի հոգւոյ անտի նր , նոյնպէս և ամ բարիք եկեղեցւոյ և կենդանութիւն և շնորհք հոգւոց մերոց է ՛ի հոգւոյն սբյ . և զի՞նչ ասեմ ամ բարիք , այլև հիմն ամ բարեաց՝ հաւատք , և դուռն ամ բարեաց՝ աղօթք . զի և ոչ իսկ կարող է ոք՝ ասէ առաքեալն՝ ասել Տէր զյս , եթէ ոչ հոգւովն սբվ . և զոր կամքն յաղօթս՝ ոչ գիտեմք , այլ ինքն հոգին լինի բարեխօս՝ ղյ տաւն տուօղ աղօթից , ՛ի հեծութիւնս անմռունչս , և որպէս յանդիմանականաց հօր ՛ի դիմաց մերոց , այն՝ որ էն էակից և փառակից , միջնորդ և բարեխօս զինքն ընծայեցուցեալ . ով և ծացածին բանն կոչի և է բարեխօս վս մեր : Եւ զի այս այսպէս , մեք զի՞ կամք թմբրել , զի՞ կամք տարակուսեալ , իբր անհոգի և անշնչացեալ , թափուր ՛ի շնորհաց և ՛ի պարգևաց կենդանարար նր հոգւոյն . եկայք դիմեսցուք յաղբիւր անմահութեան , յաղբիւր շնորհաց և գթութեան , որ բղխէ անհատահու և անսպառելի յեկեղեցի այ՝ հոգին այ : Եթէ առաքեալքն նովաւ զօրացան , աշակերտք նովաւ լուսաւորեցան , վրդպք նովաւ փայլեցին , վկայք նովաւ յաղթեցին , կուսանք նովաւ առաքինացան , ճգնաւորք նովաւ հանդիստացան , և ամ սբք յեկեղեցականն և յծականն կարգէ՝ նովաւ սրբեցան և արդարացան , մեք զի՞ հեղգամք ապաւինիլ

նիլ յամենազօր օգնականութենէ նորա . որ է կեանք կենաց մերոց , և Հոգի Հոգւոյ մերոյ . մխիթարիչ , բարեխօս , զօրացուցիչ , առաջնորդիչ յամ 'ի գործս բարութե . ած մեր և տր մեր Հոգի ածեղէն :

Ո՜ն երկայնք աւուրս շնորհին մաղթեսցուք 'ի մարդասէր Հոգւոյն զաւուրս շնորհ ընդ մք առաքելայն , և զամ շնորհս . և զպարգևս նր՝ զոր առատացոյց և առատացուցանէ յեկեղեցի մք յամ ժամանակի :

Ո՛վ անմահ և անմահաբար մք Հոգի՝ կենդանացո՛ այսօր խորհրդով գալստեան քո զմեզ՝ 'ի մեռելոտի գործոց մերոց դառնալ յածդ կենդանի . խաղաղացո՛ զխռովութիւս մեր 'ի ծով կենցաղոյս՝ խաղաղութեն երկնաւոր . նորոգեա՛ զչնութե մեր , սիրտ մք հաստատեա՛ 'ի մեզ , և Հոգի ուղիղ նորոգեա՛ 'ի սրտի մերում . ած զմեզ շնորհօք , և փայլեցո՛ եօթնարփին քո պարգևօք . լուսաւորեա՛ զաչս սրտից մերոց , և ուղղեա՛ զկամս մեր 'ի կամս քո՝ 'ի բարին , 'ի հաճոյսն և 'ի կատարեալն . զօրացո՛ զտկարութիւս մեր , ամրացո՛ զմեզ ը հովանեաւ թևոց քոց յամ արկածից երևելի և աներևոյթ թշնամւոյն . անկեա՛ 'ի հոգիս մեր զծառն կենաց զսէրդ ածեղէն՝ պտղաբերել զածսիրութե և զեղբայրսիրութե հանդերձ ամ առաքինութբ , որ են պտուղք Հոգւոյդ սբյ . և տո՛ւր մեզ առատէն ճաշակել զքաղցրութիւն քո , և 'ի հանդերձեալն արբենալ և զմայլիլ անմահական բաժակաւդ 'ի սեղանի հօրն երկ-

նաւորի , զոր պատրաստեաց մեզ միածինն , և դու հրաւիրեա՛ 'ի նոյն զկամարարս և զսի-րելիս անուանդ քո սբյ . զի օրհնեսցուք հա-նապազ յանսպառ ուրախութիւն ընդ ամ սբս զերեքսրբեան մի տրութիւնդ հօր և որդւոյ և հոգւոյդ սբյ յաւիտեանս յաւիտենից . ամէն ։

XXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXX

## ՃԱՌ. ԺԶ.

### Ի Վերափոխումն սբ Ածածնի .

Գերեղեցիկ խորհրդովք այ՝ սբ եկեղեցին , նոյնպէս և կատարած տնօրինական խորհրդոց և տրունական տօնից է մի և նոյն շառաւիղ օրհնութեան՝ տիրամայր նա կոյս ածածինն մարիամ . որ սբ ծառ կենաց՝ յետ ընծայելոյ երկրի և երկնի զպտուղն կենաց զածորդին իւր , քաղեցաւ և ինքն 'ի կենաց աստի , և փոխեցաւ յանմահ 'ի կեանս ։ Այն՝ որ ոչ միայն առիթ եղև մեզ կենաց ծնանելով մեզ զկեանս , այլև պատճառ սբ մարդեղութե , նոյնպէս և ամ բարեաց ե-ղելոց 'ի ձեռն մարդ եղելոյն վն մեր կենա-րար բանին . որով և գործակից ամ արդեանց փրկագործութե փրկչին , մինչև 'ի վերջին պտղաբերութի անգամ , 'ի գալուստ ասեմ հոգւոյն սբյ . զոր ոչ միայն նախ կոյսն ըն-կալաւ լիութբ 'ի հիմնարկութե օրինաց շնոր-հաց , այլ և նա ինքն կոյսն եա կանխել զա-ռաքելումն նոցա 'ի դասս առաքելոց՝ զօրաւոր

բա

բարեխօսութե̄ իւրով , երբ կային մեռա-
սանքն 'ի վերնատան միաբան յաղօթս հան-
դերձ Մարեմաւ մարբն յի̄ և եղբարբք նր̄ :
Նու զոր օրինակ հոգւին սբ̄ փոխան միածնին
հօր՝ մխիթարիչ եկն յ[illegible] , աներևոյթ ան-
ձամբ՝ և երևելի ներգործութե̄ շնորհաց
իւրոց , նոյնպէս և Յունարան հոգւոյն սբ̄յ
Մարիամ՝ մի աղաւնին և կատարեալն՝ անա-
րատ հարսն և անարատ մայր ա̄ծն՝ յետ վե-
րանալոյ որդւոյն յերկինս էր մի միայն ե-
րևելի մխիթարութի̄ առաքելոց և աշակեր-
տաց , իբրև տիրապէս մայր եկեղեցւոյ : Որ
և մի միայն յոյս մեր ճանաչի յետ միածնին
իւրոյ և Է̄ միածնին իւրոյ՝ նաև յետ ելից
իւրոց յերկրէ յերկինս , զոր տօնախմբէ այ-
սօր եկեղեցի՝ սբ̄ տօն տ̄րունական և ծագ-
տնօրինական խորհրդոց . զի եթէ փառք
որդւոյն՝ մօրն է փառք , այսպէս և փառաւո-
րութի̄ մօրն՝ որդւոյն է փառաւորութիւն՝
յերկինս և յերկրի :

Արդ տեսէք ինձ հաւատացեալք քի̄ զպայ-
ծառութի̄ խորհրդոյ տօնիս մ̄ծամօր կուսի .
քանզի այսօր տօնէ եկեղեցի զփոխումն նր̄
յերկինս՝ ոչ միայն հոգւով , այլև մարմնով .
վասն և վերափոխումն առձայնէ . իմա , ընդ
երեքօրեայ ննջմանն քաղցր քնով անպար-
տական մահու ըստ նմանութե̄ միածնին՝ և
զյարութի̄ նր̄ յաւուրն երրորդի և զվերա-
նալն յերկինս հրեշտակօք 'ի ձեռն մ̄ծորդ-
ւոյն՝ միանգամայն տօնախմբելով յերկնս
երբեակ աւուրս՝ Թ̄ իննեակ դասուց հրեշ-

տակաց ։ Սն զի հասարակաց է տօնս երկ-
նաւորաց և երկրաւորաց՝ 'ի պատիւ վերջին
փառաւորութեան և ծայրագոյն ուրախութեան
Թագուհւոյն իւրեանց ։

Օ պատմականն հատուցաք բան՝ որ վն սա-
ցին իրաց, 'ի կարգի անդ վարուց սրբց՝ իբ-
րև լրումն կենաց տիրամօր, 'ի մէջ առեալ
զաւանդութիւն եկեղեցւոյ յառաջնոց անտի
հարց և 'ի փառաւորեալ վն վերափոխման
նորա Ածածնի յերկրէ յերկինս . Մնայ աստա-
նօր տօնական և եթ հանդէս նշանակել, իբ-
րև ուրախակցութի տիեզերաց ընդ փառա-
փառաց դշխոյին՝ 'ի յերկինս ։

Ապաքէն ըստ վաստակոց բարեաց՝ և պտուղ
փառաւոր առի և է . ոչ է ըստ իւրաքանչիւր
արդեանց՝ վարձ փոխարինաց օրինաւոր ծա-
նուցեալ է . ըստ քրտանց և հանդիստ վայե-
լուչ դատեալ . ըստ մրցանաց և յաղթանակ,
ըստ յաղթութեան և պսակ . ըստ աշխատանի մե-
ծութի, ըստ մեծութեան և պատիւ, ըստ պատ-
ուոյն և փառք և գովութի արժանաւոր ։
Իսկ այս ամ ոչ 'ի մարդկանէ առ մարդ, այլ՝
ած սքանչելեացս, յոյ առ ազգակից իւր, որ
միանգամայն դուստր է իւր, և հարսն իւր,
և մայր իւր՝ ամենօրհնեալ և փառաւորեալ
կոյսն մարիամ . եթէ առաքինի վաստակօք,
առաւել քան զչնաշխարհիկ զինուորութեանց
երկնից և ամ ընտրելոց 'ի մարդկանէ ար-
դիւնաւորեալ . և եթէ մեծութ գերաստիճան
պատուոյ ածամայրութեան՝ ամ արարածոց
երևելեաց և աներևութից վեհագոյն . ա-

պա

ղա դրախտում փառաց եհաս այսօր 'ի յեր-կինս՝ այս դշխոյ փառաց, որպիսի ընկալեա-պսակ պարծանաց մայրն լուսոյ՝ 'ի հօրէն լու-սոյ և 'ի լոյս որդւոյն և 'ի լոյս հոգւոյն ։ յոր բարձրութիւն անպատում շքոյ ամբար-ձաւ, և յոր խորս անսահման ծովուն մխե-ցաւ ։ զի եմուտ յուրախութիւն տն և որդւոյ իւ-րոյ, տեառն և հօր իւրոյ և փեսային իւրոյ ։ Ո՞ր 'ի ձեռս առից օրինակ անօրինակ բա-րեմասնութեան և անպայման փառաւորութեան և անիմանալի երջանկութեան կուսին վերա-փոխելոյ ։ Պնէ՛թ ստուերաբար տպաւորութեամբ այսպէս իմաստասիրեսցուք ։ եթէ դուստր արքայի 'ի ներքուստ է փառաւոր ամ զար-դուք, ըմ, ամ փառք դստեր թագաւորի 'ի ներ-քոյ, ապա 'ի միտ առէք՝ եթէ կարէք, և հաւատասցէ՛ք անհամեմատ օրինակաւ զան-թարգմանելի զփառաւորութիւն մարիամու 'ի ներքին և յանմատոյց սենեկի երկնաւոր թագաւորին ։ Որ այն փառք իցեն, որ այն փառք ոչ իցեն, զոր ետ կուսին այսօր հայրն երկնաւոր իբրև դստեր սիրելոյ ։ Ո՛ այս միայն ունիմք առնել յն գրոց ։ բայց ում դըս-տերք ստացան զմեծութիւն ։ այլ դու առաւ-ելեր եղեր և անցուցեր զամենեքումբք ։ Նա-այսչափ միայն լսեմք 'ի գրոց՝ առնել այսօր հօրն էական առ ծոցածին որդին ։ կացցէ դշխոյ ըն աջմէ քումմէ ։ այս է՝ զոր օրինակ դու նստիս ըն աջմէ իմմէ իբրև որդի համա-պատիւ ծնողիս և թագակից, կամիմ զի և մարիամ դշխոյ մայր քո նստցի աջմէ փա-

ռաւորութիւն ի աջմէ քումմէ՝ ով մերձաւորա-
տիր̂ իրաւամբք. զի թէպէտև ոչ կարէ նստա-
տել յաթոռ Ածայինն, զի է լոկ արարած,
այլ սակայն կարէ և պարտի կալ ան̃ի մէջ
մերձաւոր աթոռոյ Ածութեն մերոյ, զի է
ծնօղ արարչի. վ̃ոյ անուն է նմա գերապա-
տիւ լինել քան զամ̃ արարածական բնութիւ
մարմնաւորաց և հոգեղինաց՝ ով ազգակից
մ̃յ, և փառաւորիլ յամենեցունց ով դշխոյ
փառաց յաւիտեան։

Ի մէտ առէք դարձեալ՝ եթէ կարէք, թէ
որպիսի փառս ետ կուսին և էակից և փա-
ռակից հօր և որդւոյ Նր̃ հոգին Ած՝ ով ա-
նարատ հարսին իւրում. զի թէ յերկրի հա-
մանացաւ նմա կատարեալ հաճու̃՝ ով ամ-
բիծ թևօք աննիւթական աղաւնին, և ամ̃
շնորհօք ելից զնա աղբիւրն շնորհաց, զի՞նչ-
պիսի արդեօք փառօք մեծարեաց զնա յեր-
կինս երկնից։ Օ այս գիտեմք, զի շնորհքն
է գրաւական փառաց, և փառքն՝ պսակ հա-
մեմատ շնորհաց. և զի շնորհք հոգւոյն ՚ի
Մարիամ էր արտաքոյ չափոյ և կշռոյ, ապա
և փառք նր̃ ՚ի վեր է քան զմիտս և զխոր-
հուրդս համօրէն եղականաց. քանզի եղև
վերառեալ՝ ով նուագէ եկեղեցի ՚ի խոր-
հուրդ տօնիս, նոյն յերկրէ յերկինս հարսն
ընծայեալ՝ ՚ի յառագաստն անապականն՝
յանմատչելին եղականացս ի երրորդութե̃.
վ̃յ և հոգեկիր հռետորն ասէր. երրորդու-
թեն անտես թագնութե̃ խորհրդակից սի-
րոյ կոչեցար։ Եւ կարի իսկ քաջ. զի եթէ
փառք

փառք դստեր Թագաւորի են ներքին, այլա փառք նր̄ ը̄ն որում հարսն Թ̄գրի՝ են ներքսագոյն. վ̄ն և կրկին եւս անհաս՝ խորհրդոց և բանից հրեշտակաց և մարդկան:

Ա̃նայ ձեզ այսուհետև որդիք մարդկան՝ որդիացեալք մարիամու յետ միածնին անդրանկի, 'ի մտ առնուլ՝ ո՛րչափ և կարող էիցէք, Թէ ո՛րպիսի փառօք փառաւորեաց այսօր և փառաւորէ յանանց յաւիտեանս ք̄ն որդին ա̄յ զմայր իւր ը̄ն մարմնոյ. որ է մայր և կոյս, մայր սիրելի և մայր սիրոյ, մայր ա̄յ՝ սիրեցելոյ յա̄յ: Զայս միայն գիտեմք ամէք, և յիրաւի, զի նոյն փառք են անհասանելի՝ որով պատուէ զտիրամայրն հայր, և որով պատուէ որդի. որպէս և նոյն՝ որով պատուէ և հոգին ս̄բ: Բայց և զայն ո՛չ անգիտանայք, զի դուստր հօր ասի կոյսն ս̄բ, կմ̄ հարսն հոգւոյն ս̄բյ՝ ընտրութ̄ շնորհաց ա̄ծամայրութն. բայց ա̄ծամայր ասի և է՝ իսկապէս ծննդութ̄ ա̄ծորդւոյն ը̄ն մարմնոյ. վ̄ն երրորդութն ազգակից ճանաչի, այլ որդւոյն ա̄յ բնաւորապէս մայր անմիջական գտանի:

Աւ զի այս այսպէս, քաջայայտ ուրեմն է՝ Թէ իրաւունք մայրութն պահանջէ յորդւոյ զառանձին պատիւ, և յայնպիսի որդւոյ՝ որ է ա̄ծ և ա̄յ որդի. վ̄ն ունի առնել ա̄ծորդին մասնաւոր օրինակաւ եւս պատուաստրութն մօր իւրում սիրելւոյ՝ քան զոր առնէ նմա իբրև դստեր հօր իւրոյ և հարսին հոգւոյ իւրոյ: Այն է փառաւորել զնա

իւ

իւրոյն մարմնով՝ յորմէ էառ զմարմին, ուր և սիրէ զնա և որդիական սիրով՝ որում որդիացաւ. և ահա զայս սէր և պատիւ. գտանէ ուր դիւրըմբռնելի՝ ՚ի միտ առցուք ըստ կարի։

Բայց և այս է ՚ի վեր քան զմերս տեսութն և մեկնութիւն. քանզի զիա՞րդ հնար իցէ մարդկեղէն լեզուի թարգմանն լինել սրտի որդւոյն այ՝ թէ որչափ սիրէ զմայր իւր ընքանչելի. կմ մեկնել զանչափութիւն որդիական գթոյն, զանբաւութիւն բնական երախտագիտութեն, և զանեզրական յարգ և մեծարանս ներքին, և զանհամեմատ փառս և զպատիւ առ Ճշմարիտ ծնօղ իւր մարմնոյ. զի ոչ գոյ այլ որդի ուր զյն, և ոչ այլ մայր որպէս զմարիամ կոյս. զի մարթասցուք ՚ի նմանւոյ զնմանն իմաստասիրել։

Որչափ միայն մարթ է և պարտ է ՚ի փառսէ զմեծն իմանալ, զի թէ երկրաւոր ոք թագաւոր փարթամ առաքինի և իմաստուն՝ փառաւորէ անշուշտ զմայր իւր սիրելի ըստ ամ կարի իւրում ամ փառօք իւրովք, կարգելով զնա գլխոյ փառաւոր իւրում թգրութն, և տալով ՚ի նր ձեռս աննախանձ զմեծութի գանձուց իւրոց՝ Ճոխանալ ամիւ և Ճոխացուցանել զայլս, անհամեմատ օրինակաւ զնոյն է ասել և զերկնաւոր արքայէն. որ է տր տրանց և թգր թագաւորաց՝ ածապէս և մարդկապէս՝ անբաժանելի և անշփոթ միութբ։

Ով ոչինչ են զարմանք, եթէ քս փառաց թգր՝

Թ̃ր` այսօր զմարիամ մայր իւր յերկինս վերափոխեալ յարքունիս իւր, արար զնա տիեզերաց տիկին փառաւոր` ա̃ծպետակա-նին հաղորդ փառաց, կարգեաց զնա դշխոյ երկնի և երկրի, կացոյց զնա Թագուհի հրեշտակաց և մարդկան, օգնատատիրու-հի ա̃մ արարածոց, մայր հասարակաց, և գանձապետ անսպառ և անսահմանն գան-ձուց ա̃րուէ իւրոյ. մինչ զի` ո̃պ յանուն յի̃ք-քի̃ ա̃մ ծունր կրկնի` երկնաւորաց, և եր-կրաւորաց, և սանդարամետականաց, որպէս ա̃ն և Թագաւորի բոլորեցունց, նոյնպէս և յանուն մարիամու ա̃մ ծունր կրկնեսցի իբ-րև տիրամօր և Թագուհւոյ բոլորեցունց. և ո̃պ ա̃մ որ կարդասցէ զանուն ա̃ն, կեց-ցէ, նոյնպէս և որ կարդայ զանուն մարիա-մու մօր ա̃ն, մի կորիցէ. և ո̃պ ողորմու-Թ̃ ա̃ն լի եղև երկիր, նոյնպէս և ողորմածու-Թ̃ տիրուհւոյն է առլցեալ. զի և նա ողորմու-Թ̃ ա̃ն է ողորմած, և ա̃ծորդին ոչինչ ան-խայէ մօր իւրում ։

Ո՞չ ապաքէն և արդիւնք գործոցն զայս ա-ղաղակեն յօրէ անտի փոխմանն կուսին յեր-կինս մինչև ցայսօր. և նոյնպէս եղիցի մին-չև 'ի կատարած աշ̃խի. զի ո̃պ անպակասելի է եկեղեցի, նոյնպէս և ոչ պակասեսցի 'ի նմանէ գութ սրբոյ կուսին` որ է մայր եկե-ղեցւոյ և մայր փեսային եկեղեցւոյ. վ̃յ և անխտիր ունիմ ասել, տ̃ր հովուեսցէ զիս, և ինձ ինչ ոչ պակասեսցի. և տիրամայրս խնամարկեսցէ զիս, և ինձ ինչ ոչ պակա-սեա

սեւացի ։

Ո՞չ զնոյն յայտնի կացուցանէ զփառաւորու-
թիւն ածածնի յերկինս և յերկրի՝ նորուն.
իսկ կանխասաց մարգարէութի. յայսմ հե-
տէ երանեսցեն զիս ամ ազգք. զի ոչ միայն
երկրածնացս ազգք և ազինք երանեցին և
երանեն զնա, այլև դասք երջանկաց երկ-
նային զուարթնոց. զի ոչ նովաւ օրհնե-
ցան ամ ազինք, նոյնպէս և օրհնեն զնա
ամ ազինք երկրաւորք և երկնաւորք ։ Ող-
քեզ ոչ միայն որդիք մարդկան, այլև վերին
զօրութիւնք՝ դասք անմարմնոց՝ հոգեղինաց՝
հրեղինաց՝ զուարթնոց և հրեշտակաց՝ գա-
հաւքանեն և վերօրհնեն և փառաւորեն ըզ-
մայր և զաղախին փրկչին մերոյ. սպասա-
ւորեալդ 'ի սերովբէից և երկրպագեալդ 'ի
քերովբէից՝ Է որդւոյ քում միածնի մայր
ամենօրհնեալ մարիամ։

Այլ ես տկրամայր կամէի 'ի փառսն քում
զքեզ տեսանել 'ի փառս փրկչիդ իմոյ, զի
թերևս կարօղ լինէի յայնժամ պատմել
զփառաւորութի քո փոքր 'ի շատէ. թէպէտ
և 'ի հրեշտակաց, և 'ի սրբոց՝ որք կան 'ի
պաշտօն տիրուհւոյդ՝ է անճառելի. քանզի
անճառ է խորհուրդ փառաց կուսիդ և ան-
մարմնոցն ։ Կամէի տեսօղ լինել գէթ կեն-
դանի պատկերի մօրդ լուսոյ, զի նովաւ տե-
սանէի և զհարազատ նմանութի կերպարա-
նաց ածորդւոյդ, որ է միանգամայն կեր-
պարան հօրն լուսոյ և նկարագիր էութե նր.
այս է ինձ միակ ցանկալի յամ 'ի կեանս իմ,
և

և զմի զայս խնդրեմ 'ի Տեառնէ և 'ի տիրուհւոյդ 'ի կեանսն յաւիտենից . տեսանել հոգւով 'ի բանն մարմնացեալ զհայրն երկնաւոր ընդ միասնական նոյն հոգւոյն , և զմայրդ մարմնոյ աչօք . յայնժամ լինիցի ինձ ոչ կարօտիլ ճառից անճառութեան , այլ զմայլիլ 'ի փառս անբաւութեան՝ ընդ փառս քո , որ առատափայլեալ 'ի փառաց միածնիդ , որ է ծագումն փառաց հօր իւրոյ . որում և ընդ որում հօր ամենակալի և կենդանարար նոյն հոգւոյն փառք և երկրպագութիւն յաւիտեանս .

ամէն :

XXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXX

## ՃՌ. Ա. ԺԳ :

### Ի տօնս սրբոյ Խաչին Աստուածընկալ :

Տօնք խաչի են զանազան . է՛ որ 'ի պատիւ բուն խաչափայտի՝ որ և կենաց փայտ, յոր բևեռեցաւ փրկիչն Քս , կախեալ կեանքն իւր և պտուղ կենաց զկենաց ծառոյ՝ 'ի ճաշակումն անմահութեան հաւատացելոց , կամ զնշանակէ ամբարձելոյ 'ի մէջ երկրի առ 'ի բժշկութիւն՝ որոց 'ի նա հայեցին յետ հարուածելոյ 'ի հին օձէն : Է՛ որ 'ի պատիւ նմանութեան սբյ խաչի երևելոյ յերկինս հրաշապէս՝ լուսատեսակ փայլմամբ , յօրինակ հանդերձեալ երևման բուն խաչափայտի իբրև նշան որդւոյ մարդոյ՝ Քսի 'ի միւսանգամ

զամ գալստեան նորա յաւուրն յետնում զի
ժողովեսցին Ը՟ Թեւօք նր ամ խաչազգեացք,
ՃԷ . Ճշմարիտ խաչապաշտք ածապաշտք՝ որք
զխոնարհեցան զկնի քո ուղիղ հաւատով ա-
նեղեկեայ յուսով և ջերմ սիրով՝ հանդերձ
ամ գործովք բարեաց :

Այս է որ 'ի պատուի՟ նոյն նշանի սբյ խաչին
առ հասարակ, եթէ 'ի միտս՝ մանաւանդ
թէ 'ի սիրտս մեր տպաւորելոյ, և եթէ 'ի
ճակատ մեր դրոշմելոյ, եթէ կազմելոյ 'ի
պէսպէս նիւթոց, և եթէ նկարելոյ 'ի պատ-
կերս, եթէ կանգնելոյ 'ի խորանս եկեղեց-
ւոյ, և եթէ ուր և իցէ՝ երկրպագելոյ 'ի
քրիստոնէից միաբան և առանձինն . զի նշան
կմ ձև խաչին՝ է երևեցուցիչ պատուական
խաչափայտին, և նովաւ յանդիման մեզ կա-
ցուցիչ զխաչելեալն քս, որ է տր մեր և փրկ-
կիչ մեր, ած մեր և թագաւոր մեր : Այս և
պատուի՟ և երկրպագութի՟ տուեալ նշանի
սբյ խաչին՝ է միշտ երկրպագութի ածային .
զի վերածի առ խաչելեալն՝ որ է ած : Որ
օրինակ և որ պատուէ զդրօշակն արքունի՝
զարքայն փառաւորէ նովին . և որ պատուէ
զզէն յաղթութե զօրագլխին՝ զզօրագլուխն
փառաւորէ ոմն յաղթող :

Յորմէ յայտ է թէ և տօնք խաչի առ հասա-
րակ՝ են տօնք տէրունականք կարգեալք 'ի
պատուի՟ խաչելեալ փրկչին, և 'ի յիշատակ
խաչելութե նր 'ի լեառն գողգոթայ 'ի փրկ-
կութե տիեզերաց, և 'ի յորդոր ճանաչելոյ
մեզ զերախտիս խաչեցելոյն, և զհետ եր-
թալ.



Թաւալոյ նորա ճանապարհաւ խաչի ։ Եւ այս իսկ է փոխման տօնելոյ մեր զՔս խաչն կմ զնշան սբյ խաչին , և բազմապատիկ նորա զելոյ և մեծացուցանելոյ , և պարծելոյ ըստ առաքելոյ . այլ ինձ քաւ՝ լիցի պարծիլ , բայց միայն ՚ի խաչն տն մերոյ յսի քսի , որով աշխ ինձ ՚ի խաչ ելեալ է , և ես աշխի . զի եթէ չարչարանաց և խաչին յսի կցորդ լինիցիմք , և փառացն հաղորդ լինելոց եմք ։

Ե.րդ՝ բաց յօրէ աւագ ուրբաթու , որ է օր չարչարանաց և խաչելութեան փրկչին , մեծ և օր սգոյ եկեղեցւոյ ըստ առաքելոց և ընդ ցաւագին մօր խաչեցելոյ , և որ ցաւակցութեան և խաչակցութեան ըստ խաչեցելոյն , կարգեցաւ յեկեղեցւոջ տօնք խաչի ուրախականք՝ ՚ի մասնաւոր աւթից ուրախութեան աւուրց . Զի յերևմանէ լուսեղէն խաչին յօդս առ կոստանդիանոսիւ , և յերևմանէ այլոյ լուսեղէն խաչի յէմ առ կոստանդեաւ որդւով կոստանդիանոսի . ՚ի գիւտոյ խաչափայտին ՚ի ձեռն հեղինեայ մօր կոստանդիանոսի . ՚ի դարձուցանելոյ հերակլի կայսեր զխաչափայտն ՚ի գերութէ պարսից անդրէն ՚ի սրբն իւր յէմ . յերևելոյ մասին խաչափայտի լուսազարդ հրաշիւք ՚ի հայս ՚ի լեառն վարագայ . և եթէ այլ ինչ առանձին նշանք եղեն սքանչելեաց խաչի յայլ և այլ եկեղեցիս , և ըստ նմին կարգեալ տօնք կմ յիշատակք յազգս իւրաքանչիւր ։

Եւ ահա ը՟ այսմ չորս տօնք խաչի կատարին ՚ի մեզ՝ ՚ի դէպ եկեալ քառաւթև սբյ խաչին

ցին կանգնելոյ 'ի փրկութի քառակողմեան Տն:
Առաջին տօնն կոչի և է Խաչվերաց, որ և մեծ խաչ ասի, եղեալ 'ի յայսմաւուրս Հայոց և յունաց և հռովմայեցւոց, 'ի սեպտեմբերի. 14. և մեծահանդէս տօնեալ յամենեցուն. այլ ոչ միօրինակ բացատրեալ յիւրաքանչիւրոց և խորհուրդ տօնին: Քանզի հռովմայեցիք այսչափ միայն յիշատակեն յայն օր. * Վերացումն (կմ բարձրացումն) սբյ խաչի, յորժամ հերակլ կայսր յաղթեալ խոսրովու արքային՝ դարձոյց 'ի պարսից յերուսաղէմ: Իսկ յոյնք 'ի նմին աւուր՝ առանց յիշելոյ զայդ բան, յերկար յիշատակեն զտեսիլ կոստանդիանոսի, թէ որպէս ետես նա յօդս զլուսեղէն նշան տէրունեան խաչի՝ հանդերձ վերնագրովս, այսու յաղթեա. և թէ յետ յաղթու է հաւատաց 'ի քս. և թէ յետ գտանելոյ մօր նր հեղինեայ զխաչն 'ի գողգոթայ 'ի ձեռն յուդայի կիւրեղ կոչեցելոյ, իբրև կամէր ամ ժողովուրդն մատչիլ յերկրպագութի սբյ խաչին յեկեղեցւոջ, ել սբ հայրապետն մակար 'ի բարձր բեմն, և վերացոյց զնր խաչն 'ի տեսիլ բազմաւն. և յայսմանէ կոչեցաւ տօնս այս վերացումն խաչի: Զնոյն երկրորդէ և յայսմաւուրք Հայոց, բայց թողեալ զյիշատակ տեսլեանն կոստանդիանոսի՝ նշանակէ զգիւտ խաչին 'ի ձեռն հեղինեայ. և 'ի վերջ բերէ՝ թէ յայնժամ արարին նաւակատիս եկեղեցւոյ յեջմ զաւուրս ութ. և ցուցանէին զպատուական խաչափայտն ամ ժողո-

վրդեան ․ և այնուհետև վերացուցանելին
անտես առնել 'ի մարդկանէ մինչև 'ի ծաղ-
կազարդն ․ վո՛յ և անուն տօնիս խաչվերաց
առի ։ Նա և լաւ ևս գրի անդ 'ի խորագրի ա-
ւուրս ․ * Սեպտեմբերի ․ ԺԴ ․ Նմանաժո-
ղով և երկնագումար տօն , և բարձրումն և
վերացումն երկրպագելի խաչին քնի ․ յո-
րում աւուր ցուցանի ամենեցուն ածաբարձ
և կենդանարար խաչափայտն 'ի նք գողգո-
թայն ․ և յիշատակ փրկագործ չարչարա-
նացն քնի յուսոյն մերոյ ‖ ։
Իսկ նր իէլ 'ի վերնագրի դնէ ․ * Սեպտեմ-
բեր ․ ԺԴ ․ Տօն է վերացման նր խաչին , զոր
եգիտ Հեղինէ ‖ ․ և ըն նմին 'ի կարգի գրել
լոկ զպատմութի գիւտի խաչին՝ 'ի վր բերէ ,
թէ ընդ այս յոյժ ուրախացեալ նր դշխոյն՝
որոյ շինեալ էր և եկեղեցիս յեմ , * Հրա-
մայեաց մեծապայծառ ցնծութ տօն կատա-
րել վն նաւակատեաց եկեղեցեացն՝ երև-
մամբ նր խաչին 'ի սեպտեմբերի ԺԴ ․ ամ
յամէ ․ և 'ի նոյն օր ցուցանել զպատուա-
կան խաչն բազմութեն , զի երկիր պագցեն
նմ 'ի փառս քնի ‖ ։ Նոյ և 'ի ~=Ց , պար-
զապէս գրի և պատմի 'ի նմին աւուր նաւա-
կատիք եկեղեցւոյ սբ յարութեն որ յեմ ,
յաւուրս կոստանդիանոսի և հեղինեայ ։
Այսմ նմէ յայտ է թէ խաչվերացն , որ և
վերացումն խաչի , էր տօն վաղեմի յառաջ
քան զաւուրս դարձի խաչին առ հերակլիւ ․
ուստի և յայլ մատենագրաց յայտ է՝ որ յառաջ
էին քան զժամանակս հերակլի , Ջգի և նջ

ռաւորութե ը̅ աջմէ քումմէ՝ ո̅պ մերձաւորա-
տիւ հրաւամբք · զի թէպէտև ոչ կարէ նըս-
տել յաթոռ ա̅ծայնի, զի է լոկ արարած,
այլ սակայն կարէ և պարտի կալ ան̅ըմէջ
մերձաւոր աթոռոյ ա̅ծութե մերոյ, զի է
ծնօղ արարչի · վ̅ոյ անկ է նմա գերապա-
տիւ լինել քան զամ արարածական բնութիւ
մարմնաւորաց և հոգեղինաց՝ ո̅պ ազգակից
ն̅յ, և փառաւորիլ յամենեցունց ո̅պ դշխոյ
փառաց յաւիտեան :

Դու միտ առէք դարձեալ՝ եթէ կարէք, թէ
որպիսի փառս ետ կուսին և էակից և փա-
ռակից հօր և որդւոյ Ս̅բ հոգին ա̅ծ՝ ո̅պ ա-
նարատ հարսին իւրում · զի թէ յերկրի հա-
մանայացաւ նմա կատարեալ հաճու ը̅՝ ո̅պ ան-
բիծ թևօք աննիւթական աղաւնին, և ա̅մ
շնորհօք ելից զնա աղբիւրն շնորհաց, զի՞նչ-
պիսի արդեօք փառօք մեծարեաց զնա յեր-
կինս երկնից : Զայս գիտեմք, զի շնորհքն
է գրաւականն փառաց, և փառքն՝ պսակ հա-
մեմատ շնորհաց · և զի շնորհք հոգւոյն ՚ի
մարիամ էր առատագոյ չափոյ և կշռոյ, ապա
և փառք ն̅ր ՚ի վեր է քան զմիտս և զխոր-
հուրդս համօրէն եղականաց · քանզի եղև
վերառեալ՝ ո̅պ նուագէ եկեղեցի ՚ի խոր-
հուրդ տօնիս, հոյան յերկրէ յերկինս հարսն
ընծայեալ՝ ՚ի յառագաստն անապական՝
յանմահանելին եղականացս ը̅ երրորդութե ·
վ̅ոյ և հոգեկիր հռետորն ասէր · երրորդու-
թեան անտես թաքնութե խորհրդակից սի-
րոյ կոչեցար : Նա կարի իսկ քաջ · զի եթէ

փառք

փառք դստեր Թագաւորի են ներքին, այլ փառք նր սբ որում հարսն Թգրի՝ են ներք-տագոյն. վյ և կրկին և ս անհաս՝ խորհրդոց և բանից հրեշտակաց և մարդկան ։

Ա՜նայ ձեզ այսուհետև որդիք մարդկան՝ որդիացեալք Մարիամու յետ միածնին ան-դրանկի, 'ի միտ առնուլ՝ որչափ և կարօղ էք, թէ որպիսի փառօք փառաւորեաց այ-սօր և փառաւորէ յանանց յաւիտեանս քս որդին այ զմայր իւր սբ մարմնոյ. որ է մայր և կոյս, մայր սիրելի և մայր սիրոյ, մայր այ՝ սիրեցեալ յայ ։ Զայս միայն գիտեմք մեք, և յիրաւի, զի նոյն փառք են անհա-սանելի՝ որով պատուէ զտիրամայրն հայր, և որով պատուէ որդի. որպէս և նոյն՝ որով պատուէ և հոգին սբ ։ Բայց և զայն ոչ ան-գիտանայք, զի դուստր հօր առի կոյսն սբ կմ հարսն հոգւոյն սբյ՝ ընտրութբ շնորհաց ածամայրութն. բայց ածամայր առի և է՝ իսկապէս ծնողութբ ածորդւոյն սբ մարմնոյ. վյ երրորդութն ազգակից Ճանաչի, այլ որդւոյն այ բնաւորապէս մայր անմիջական գտանի ։

Եւ զի այս այսպէս, քաջայայտ ուրեմն է՝ թէ իրաւունք մայրութե պահանջէ յորդ-ւոյ զառանձին պատիւ, և յայնպիսի որդ-ւոյ՝ որ է ած և այ որդի. վյ ունի առնել ածորդին մասնաւոր օրինակաւ ևս պատ-ուասիրութի մօր իւրում սիրելւոյ՝ քան զոր առնէ նմա իբրև դստեր հօր իւրոյ և հար-սին հոգւոյ իւրոյ ։ Այն է փառաւորել զնա

իւ

խուռոմն Մարիամով՝ յորմէ էառ զմարմին , ուր և սիրէ զնա և որդիական սիրով՝ որում որդիացաւ . և ահա զայս սէր և պատիւ գտնէ ուր դիւրըմբռնելի՝ 'ի միտ առցուք ըստ կարի :

Բայց և այս է 'ի վեր քան զմեր տեսութիւն և մեկնութիւն . քանզի զիարդ հնար իցէ մարդկեղէն լեզուի թարգմանել սրտի որդւոյն այն՝ թէ որչափ սիրէ զմայր իւր ընքանչելի . կամ մեկնել զանչափութիւն որդիական գթոյն , զանբաւութիւն բնական երախտագիտութեան , և զանեզրական յարգ և մեծարանս նորին , և զանհամեմատ փառս և զպատիւ առ Ճշմարիտ ծնօղ իւր Ած մարմնոյ . զի ոչ գոյ այլ որդի ուր զյն , և ոչ այլ մայր որպէս զմարիամ կոյս . զի մարթասցուք 'ի նմանւոյ զնմանն իմաստասիրել :

Այնչափ միայն մարթ է և պարտ է 'ի փառաւորէ զմեծն իմանալ , զի թէ երկրաւոր ոք թագաւոր փարթամ՝ առաւելին և իմաստուն՝ փառաւորէ անշուշտ զմայր իւր սիրելի ըստ ամ կարի իւրում ամ փառօք իւրովք , կարգելով զնա գլխոյ փառաւոր իւրում թգուհի , և տալով 'ի ձեռս աննախանձ զմեծութիւն գանձուց իւրոց՝ Զօրանալ ամի և Զօրացուցանել զայլս , անհամեմատ օրինակաւ զնոյն է առնել և զերկնաւոր արքայէն . որ է տր տրանց և թգր թագաւորաց՝ Ածապէս և մարդկապէս՝ անբաժանելի և անշփոթ միութն :

Այլ ոչինչ են զարմանք , եթէ քն փառաց թգր՝

Թգ՟ր՝ այսօր զմարիամ մայր իւր յերկինս վերափոխեաց յարքունիս իւր, արար զնա տիեզերաց տիկին փառաւոր՝ ա՟ծպետականին հաղորդ փառաց, կարգեաց զնա դշխոյ երկնի և երկրի, կացոյց զնա Թագուհի հրեշտակաց և մարդկան, օգնատարութիւնի ա՟մ արարածոց, մայր հասարակաց, և գանձապետ անսպառ և անհասհման գանձուց ո՟րդւոյ իւրոյ . մինչ զի՝ ոչ յանուն յի՟ քի՟ ա՟մ ծունր կրկնի՝ երկնաւորաց, և երկրաւորաց, և սանդարամետականաց, որպս՟ տն՟ և Թագաւորի բոլորեցունց, նոյնպէս և յանուն մարիամու ա՟մ ծունր կրկնեսցի իւրև տիրամօր և Թագուհւոյ բոլորեցունց . և ոչ ա՟մ որ կարդասցէ զանուն տն՟, կեցցէ, նոյնպէս և որ կարդայ զանուն մարիամու մօր տն՟, մի՛ կորիցէ . և ոչ ողորմութն՟ տն՟ լի եղև երկիր, նոյնպէս և ողորմածութն՟ տիրուհւոյն է առլցեալ . զի և նա ողորմութն՟ տն՟ է ողորմած, և ա՟ծորդին ոչինչ անխայէ մօր իւրում :

Ո՞չ ապաքէն և արդիւնք գործոցն զայս աղաղակեն յօրէ անտի փոխման կուսին յերկինս մինչև ցայսօր . և նոյնպէս եղիցի մինչև 'ի կատարած ժմ՟ի . զի ոչ անպականելի է եկեղեցի, նոյնպէս և ոչ պակասեսցի 'ի նմանէ գութ սրբոյ կուսին՝ որ է մայր եկեղեցւոյ և մայր փեսային եկեղեցւոյ . վ՟յ և անխտիր ունիմ ասել, տ՟ր հովուեսցէ զիս, և ինձ ինչ ոչ պակասեսցի . և տիրամայր խնամարկեսցէ զիս, և ինձ ինչ ոչ պակա-

սես

սեսցի :

Ո՞չ զնոյն յայտնի կացուցանէ զփառաւորու-
թիւն ա̄ծածնի յերկինս և յերկրի՝ նորուն . իսկ կանխասաց մարգարէութի̄ . յայսմ հետէ երանեսցեն ինձ ա̄մ ազգք . զի ոչ միայն երկրածնացս ազգք և ազինք երանեսցին և երանեն նմա , այլև դասք երջանկաց երկնային զուարթնոց . զի ոչ նովաւ օրհնեցան ա̄մ ազինք , նոյնպէս և օրհնէին զնա ա̄մ ազինք երկրաւորք և երկնաւորք : Ըզքեզ ոչ միայն որդիք մարդկան , այլև վերին զօրութի̄ք՝ դասք անմարմնոց՝ հոգեղինաց՝ հրեղինաց՝ զուարթնոց և հրեշտակաց՝ գոհաբանեն և վերօրհնեն և փառաւորեն ըզմայր և զաղախին փրկչին մերոյ . սպասաւորեալք 'ի սերովբէից և երկրպագեալք 'ի քերովբէից՝ ո̄ որդւոյ քում միածնի մայր ամենօրհնեալ մարիամ :

Այլ ես տխրամայր կամէի 'ի փառսն քում զքեզ տեսանել 'ի փառս փրկչին իմոյ , զի թերևս կարօղ լինէի յայնժամ պատմել զփառաւորութի̄ն քո փոքր 'ի շատէ . թէպէտ և 'ի հրեշտակաց , և 'ի ս̄ց՝ որք կան 'ի պաշտօն տիրուհւոյդ՝ է անճառելի . քանզի անճառ է խորհուրդ փառաց կուսիդ և անմարմնոցն : Կամէի տեսօղ լինել գէթ կենդանի պատկերի մօրդ լուսոյ , զի նովաւ տեսանէի և զհարազատ նմանութի̄ կերպարանաց ա̄ծորդւոյդ , որ է միանգամայն կերպարան հօրն լուսոյ և նկարագիր էութե̄ ն̄ր . այս է ինձ միակ ցանկալի յա̄մ 'ի կեանս իմ ,

և

և զմի զայս խնդրեմ 'ի տնէ և 'ի տիրուհ-ւոյդ 'ի կեանսն յաւիտենից. տեսանել հոգ-ւով 'ի բանն մարմնացեալ զհայրն երկնա-ւոր ը միասնական Սբ հոգւոյն, և զմայրդ մարմնոյ աչօք. յայնժամ լինիցի ինձ ոչ կա-րօտիլ ճառից անճառութե, այլ զմայլիլ 'ի փառս անբաւութե՝ ը փառս քո, որ ար-տափայլեալ 'ի փառաց միածնիդ, որ է ծա-գումն փառաց հօր իւրոյ. որում և ը որում հօր ամենակալի և կենդանարար Սբ հոգ-ւոյն փառք և երկրպագութի յաւիտեանս. ամէն:

XXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXX

## ՃՌ. Ռ. ԺԿ:

### 'Ի տօնս սբյ խաչին առաւօտուն:

Տօնք խաչի են զանազան. է որ 'ի պատիւ բուն խաչափայտի՝ որ և կենաց փայտ, յոր բևեռեցաւ փրկիչն Յս, կախեալ կեանքն իւր և պտուղ կենաց զկենաց ծառոյ՝ 'ի ճա-շակումն անմահութե հաւատացելոց, կամ զնշանակէ ամբարձելոյ 'ի մէջ երկրի առ 'ի բժշկութի՝ որոց 'ի նա հայեցին յետ հար-ւածելոյ 'ի հին օձէն: Է՝ որ 'ի պատիւ նմանութե սբյ խաչի երևելոյ յերկինս հրա-շապէս՝ լուսատեսակ փայլմամբ, յօրինակ հանդերձեալ երևման բուն խաչափայտին իւրև նշան որդւոյ մարդոյ՝ ը քսի 'ի միւսան-

գամ

զամ գօղատեան նորա յաւուրն յեռնաւմն զի ժողովեսցին ՂԷ թեւօք նր ամ խաչազգեացք, ԶԻ · Ճշմարիտ խաչապաշտք ամենապաշտք՝ որք զինուորեցան զկնի քո ուղիղ հաւատով աներկեայ յուսով և ջերմ սիրով՝ հանդերձ

ամ գործովք բարեաց:

Այս է որ 'ի պատուիս նոյն նշանի սբյ խաչին առ հասարակ, եթէ 'ի միտս՝ մանաւանդ թէ 'ի սիրտս մեր տպաւորելոյ, և եթէ 'ի ճակատ մեր դրոշմելոյ, եթէ կազմելոյ 'ի պէտս նիւթոց, և եթէ նկարելոյ 'ի պատկերի, եթէ կանգնելոյ 'ի խորանս եկեղեցւոյ, և եթէ ուր և իցէ՝ երկրպագելոյ 'ի քրիստոնէից միաբան և առանձինն. զի նշան կմ ձև խաչին՝ է երևեցուցիչ պատուական խաչափայտին, և նովաւ յանդիման մեզ կացուցիչ զխաչելեալն քս, որ է տր մեր և փրկիչ մեր, ած մեր և թագաւոր մեր: Այս և պատուիւն և երկրպագութիւն տուեալ նշանի սբյ խաչին՝ է միշտ երկրպագութի ածային. զի վերածի առ խաչելեալն՝ որ է ած: Ո՛ր օրինակ և որ պատուէ զդրօշակն արքունի՝ զարքայն փառաւորէ նովին. և որ պատուէ զգէն յաղթութե զօրավարին՝ զզօրավարութիւն

փառաւորէ ոյր յաղթօղ:

Յորմէ յայտ է թէ և տօնք խաչի առ հասարակ՝ են տօնք տրուանահանք կարգեալք 'ի պատուիս խաչելեալ փրկչին, և 'ի յիշատակ խաչելութե նր 'ի լեռան գողգոթայ 'ի փրկութի տիեզերաց, և 'ի յորդոր ճանաչելոյ մեզ զերախտիս խաչեցելոյն, և զհետ երթա



Թաւրոյ Նորա Ճանապարհաւ խաչի ։ Նոյն այս իսկ է փոխման տօնելոյ մեր զՏ͞ր խաչն կ͞մ զնշան ա͞յ խաչին, և բազմապատիկ ներբողելոյ և մեծացուցանելոյ, և պարծելոյ ը͞ն ապօղոսի ։ այլ ինձ քաւ լիցի պարծիլ, բայց միայն 'ի խաչն Տ͞ն մերոյ յ͞սի ք͞սի, որով ա͞շխ ինձ 'ի խաչ ելեալ է, և ես ա͞շխի ։ զի եթէ չարչարանաց և խաչին յ͞սի կցորդ լինիցիմք, և փառացն հաղորդ լինելոց եմք ։

Որդ՝ բաց յօրէ աւագ ուրբաթու, որ է օր չարչարանաց և խաչելութե փրկչին, մ͞յ և օր սգոյ եկեղեցւոյ ը͞ն առաքելոց և ընդ գաւազին մօր խաչեցելոյ, և օր ցաւակցութե և խաչակցութե ը͞ն խաչեցելոյն, կարգեցան յեկեղեցւոջ տօնք խաչի ուրախականք՝ 'ի մասնաւոր առթից ուրախութե առեալք ։ Ա͞ռ յերևմանէ լուսեղէն խաչին յօդս առ Կոստանդիանոսի, և յերևմանէ այլոյ լուսեղէն խաչի յե͞մ առ Կոստանդեաւ որդւովն Կոստանդիանոսի ։ 'ի գիւտոյ խաչափայտին 'ի ձեռն Հեղինեայ մօր Կոստանդիանոսի ։ 'ի դարձուցանելոյ Հերակլի կայսեր զխաչափայտն 'ի գերութէ պարսից անդրէն 'ի տեղի իւր յե͞մ ։ յերևելոյ մասին խաչափայտի լուսազարդ հրաշիւք 'ի Հայս 'ի լեառն վարագայ ։ և եթէ այլ ինչ առանձին նշանք իցեն սքանչելեաց խաչի յայլ և այլ եկեղեցիս, և ըստ նմին կարգեալ տօնք կամ յիշատակք յազգս իւրաքանչիւր ։

Նոյն ահա ը͞ն այսմ չորս տօնք խաչի կատարին 'ի մեզ՝ 'ի դէպ եկեալ քառաւթե ա͞յ խա-

չին

զնին կանգնելոյ 'ի փրկութիւն քառակողմեան Ցփ: Մաղքին տօնն կոչի և է խաչվերաց, որ և մեծ խաչ ասի, եդեալ 'ի յայսմաւուրս Հայոց և յունաց և հռովմայեցւոց, 'ի սեպտեմբերի. 14. և մեծահանդէս տօնեալ յամենեցունց. այլ ոչ միօրինակ բացատրեալ յիւրաքանչիւրոց և խորհուրդ տօնին: Որանգի հռովմայեցիք այսչափ միայն յիշատակեն յայն օր. * Վերացումն (կամ բարձրացումն) սբյ խաչի, յորժամ հերակլ կայսր յաղթել խոսրովու արքայի' դարձոյց 'ի պարսից յերուսաղէմ: Իսկ յայնք 'ի նմին աւուր' առանց յիշելոյ զայդ բան, յերկար յիշատակեն զտեսիլ կոստանդիանոսի, թէ ոչ պէս եսես նա յօդս զլուսեղէն նշան տէրունեան խաչի' հանդերձ վերնագրովս, այսու յաղթեա. և թէ յետ յաղթութեն հաւատաց 'ի քս. և թէ յետ գտանելոյ մօր նր հեղինեայ զխաչն 'ի գողգոթայ 'ի ձեռն յուդայի կիւրեղ կոչեցելոյ, եբրև կամէր ամ ժողովուրդն մատչիլ յերկրպագութի սբյ խաչին յեկեղեցւոջ, ել նր հայրապետն մակար 'ի բարձր բեմին, և վերացոյց զնր խաչն 'ի տեսիլ բազմութե. և յայսմանէ կոչեցաւ տօնս այս վերացումն խաչի: Զնոյն երկրորդէ և յայսմաւուրք հայոց, բայց թողեալ զյիշատակ տեսլեանն կոստանդիանոսի' նշանակէ զգիւտ խաչին 'ի ձեռն հեղինեայ. և 'ի վերջ բերէ' թէ յայնժամ արարին նաւակատիս եկեղեցւոյ յեմ զաւուրս ութ. և ցուցանէին զպատուական խաչափայտն ամ ժողո-

վերջեան ․ և այնուհետև վերացուցանէին անտես առնել 'ի մարդկանէ մինչև 'ի ծաղկազարդն ․ վ՟յ և անուն տօնիս խաչվերաց առի ։ Լաւ ևս գրի անդ 'ի խորագրի աւուրս ․ * Սեպտեմբերի ․ ժդ ․ Համանաժողով և երկնագումար տօն , և բարձրումն և վերացումն երկրպագելի խաչին քրիստոսի ․ յորում աւուր ցուցանի ամենեցուն ամբարձ և կենդանարար խաչափայտն 'ի նոր գողգոթայն ․ և յիշատակ փրկագործ չարչարանացն քրիստոսի յուսոյն մերոյ ։

Իսկ որ ինչ 'ի վերնագրի գնէ ․ * Սեպտեմբեր ․ ժդ ․ Տօն է վերացման սբ խաչին , զոր Եգիտ Հեղինէ ։ և ըստ նմին 'ի կարգի գրելլոյ զպատմութն գիւտի խաչին ' 'ի վ՟ր բերէ , թէ ընդ այս յոյժ ուրախացեալ սբ դշխոյն ' որոյ շինեալ էր և եկեղեցին յեմ , * Հրամայեաց մեծապայծառ ցնծութ տօն կատարել վ՟ն նուաճատեաց եկեղեցեացն ' երևմամբ սբ խաչին 'ի սեպտեմբերի ժդ ․ ամ յամէ ․ և 'ի նոյն օր ցուցանել զպատուական խաչն բազմութեն , զի երկիր պագցեն նմ 'ի փառս քրիստոսի ։ Այլ և 'ի ⁓ = Յ , պարզապէս գրի և պատմի 'ի նմին աւուր նաւակատիք եկեղեցւոյ սբ յարութեն որ յեմ , յաւուրս կոստանդիանոսի և Հեղինեայ ։

Յայսմ ամէ յայտ է թէ խաչվերացն , որ և վերացումն խաչի , էր տօն վաղեմի յառաջ քան զաւուրս դարձի խաչին առ Հերակլիւ ․ տպ և յայլ մատենագրաց յայտ է ' որ յառաջ էին քան զժամանակս Հերակլի , Յ․զի և նէ

մօր կոստանդիանոսի . զոր յոյժ յիշատա-
կեն 'ի մարտի . 6 . և լատինք 'ի մայիսի
3 . իսկ յայսմաւուրք Հայոց դնեն 'ի մայի-
սի . 17 . այլ տօնն փոխադրեալ է յեօթնե-
րորդ կիրակէ խաչվերացի : Ն, ասացի՝ զանա-
զանեալ այժմ 'ի խաչվերացէն . ապա թէ
ոչ՝ Ը նախագրելոյս՝ առ կոստանդիանոսիւ
և հեղինեաւ երևի տօնախմբութիւն գիւտի
խաչին միացեալ Ը խաչվերացի :

Ո՛չ է հարկ պատմել աստանօր զգիւտ խա-
չին, զոր փոքր 'ի շատէ նշանակեցաք 'ի վերա
նորին կիւրղի, այլ միւս կիւրղի կմ կիւրակո-
սի, որ յառաջին յուդա կոչիւր . որպէս և 'ի
վերա հեղինեայ դշխոյի Ը կոստանդիանո-
սի . ուր և Ճոխագոյն առանձնեցաք զտեսիլն
կոստանդիանոսի : Թողեալ յիշել և զմիւս
այլ գիւտ խաչի անտառոյդ, որ (ըստ ~ .
փետր . 26 .) առի լինել վաղագոյն յաւուրս
առաքելոց 'ի ձեռն պատրոնիկեայ կնոջ կղա-
դեայ կայսեր, նովին հանգամանօք Ը հե-
ղինեայ դշխոյի . որ եթէ ունէր ինչ հիմն, 'ի
դէպ գայր առաւել հեղինեայ առաջնոյ՝
ափկնոջ աբգարու Հայոց արքայի, որ թաղե-
ցաւ առ դրան եկեղ առ առաքելովք . այլ
խորհեսցին՝ որ յիշէ 'ի վերա հռիփսիմեայ
մնան 'ի կենաց փայտէ տուեալ կնոջ կղո-
դեայ յառաքելոց, և անտի անցեալ 'ի հռիփ-
սիմեանս, զգիւտ խաչի պարզապէս առէ լի-
նել 'ի ձեռն հեղինեայ մօր կոստանդիա-
նոսի :

Երրորդ տօն խաչին՝ կոչի Երևման խաչ,

կմ երևումն խաչի, յիշատակեալ միայն առ յոյնս և առ հայս 'ի մայիսի 7 . այն իսկ է հրաշալի երևումն լուսեղէն խաչի յօգս 'ի վՐ լերինն գողգոթայ արփիափայլ Ճառագայթիւք յաւուրս ս՜րյն կիւրղի եՃմայ հայրապետի, ոփ լիով գրեցաք 'ի վարս նորա . զորմէ գրեաց և նա ինքն կիւրեղ թուղթ առ կոստանդ կայսր որդի կոստանդիանոսի : Նաև այս կատարի 'ի մեզ 'ի հինգերորդ կիրակէի յինանց՝ ը շաբականին ևեթ, որ պաշտի և 'ի կարգի ութօրէից խաչվերացին :

Զորրորդ տօն խաչի՝ մեզ սեպհական յերրորդ կիրակէի խաչվերացին, է Վարագայ խաչ . որ 'ի յայսմաւուրս դնի 'ի փետրվարի 26 . կամ ը մր իՃլի՝ 'ի մարտի . 3 : Այն է հրաշալի յայտնութի և երևումն խաչափայտին հռիփսիմեանց 'ի լեառն վարագ, յամի Տն 653 . և 'ի թուականութե հայոց . ՃԲ . զորոյ զպատմութին այսպէս համառօտէ մր իՃլ ստուգաբան . * Սբ տիկնայքն հռիփսիմէ և գայիանէ՝ 'ի գալն իւրեանց յերկիրն հայոց՝ ունէին մասն ինչ 'ի քՏի խաչափայտէն . զոր տարաւ տիկինն պատրոնիկէ յեՃմայ 'ի հռոմ . և էր կին կղօդեայ կայսեր . և էր հռիփսիմէ յազգէ նորին . և կապեցին զայն 'ի պարանոց նորա պահապան կուսին : Նաև 'ի ժամանակս հալածանաց՝ առեալ հռիփսիմեանց զՏր խաչն փրկչական՝ փախստեայ եկին 'ի հայս . և յորժամ հասին 'ի տոսպ գաւառ 'ի լեառն վարագ, քահանայքն՝ որ ը նոն էին, և ոմանք 'ի քերցն

մնա

Ծնայցին անդ՝ ունելով զնոյն խաչն. և տարեալ ամփոփեցին 'ի վերայ վիմի միոյ անգիտելի 'ի մարդկանէ. զի նորա տիկնայքն 'ի վաղարշապատ կատարեցան նահատակութեամբ. և աշխարհն առժամայն 'ի խաւար կռապաշտութեան էին. և ոչ գիտէին՝ թէ ուր է. զի 'ի համբաւէ լուեալ էին՝ թէ 'ի լեառն վարագայ է։

Իսկ յետ բազում ժամանակաց յաւուրս Թոթկայ միայնակեցի, և 'ի հայրապետութեան Ներսեսի շինողի, և ('ի զօրավարութեան) վարդ պատրկի, մինչդեռ կային յաղօթս նորա ճգնաւորքն Թոթիկ և յովէլ աշակերտ իւր, յերիր ժամու աւուրն լցաւ լեառն վարագ լուսով, և (նորա խաչն) ակներև տեսլեամբ ամ ռամիկ ժողովրդեանն թուեցեալ 'ի տեղւոջէն լուսափայլ երևմամբ՝ եմուտ յեկեղեցին, ուր սպասաւորէին նորա ճգնաւորքն. և նստաւ 'ի վերայ նորա սեղանոյն. և եկեղեցին լցաւ լուսով և անուշահոտութեամբ. և եկաց մինչև յերեկոյն լոյսն. և ապա անյայտ եղև։ 'Ի նուաղել լուսոյն ահիւ ըմբռնեալ արքն, ձայն եղև առ նոսա 'ի խաչանիշ լուսոյն՝ որ ասէր. աստ հաճեցաւ քն զբնակիլ նորա խաչիս՝ 'ի բժշկութիւն և 'ի փրկութիւն ամենեցուն 'ի նա ապաւինելոց։ Իսկ եկն անդ կաթուղիկոսն Ներսէս, և վարդ պատրիկն. և կարգեցին ամ յամէ տօն մեծ կատարել 'ի նորա տեղւոջն զօր երևման նորա խաչին ('ի վարագ) 'ի փառս քի այ մերոյ ‖։

Որչափ ինչ վն պատճառաց տօնի խաչին.

և զի առաջին երկու տօնքն՝ խաչվերաց և խաչգիւտ՝ են գլխաւորք 'ի մէջ չորից տօնախմբութեանց, յանուանէ նոցին աւուր առեալ՝ յորդորական Ճառս կրկին առաջի արասցուք աստանօր խաչասէր և խաչազգեաց տօնասիրաց, 'ի պատիւ երկրպագելի խաչին քի։

XXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXX

# ՃԱՌ. ԺԸ.

## 'Ի խաչվերացն։

Սքանչելի՛ է վերացումն խաչին քի զիջման բարձրելոյն, և բարձրութիւն խաչին՝ քի չափու անչափ խոնարհութեան որդւոյն այ։ Եթէ երկինք աթոռ ասին այն, և երկիր պատուանդան ոտից նր, զերկաքանչիւրն և մասցուք զխաչէն․ յորում նստաւ ած մարմնով իբրև յաթոռ բարձրութեան և վերացելոյ՝ ոչ 'ի հանգչիլ, այլ 'ի հանգուցանել զմեր փրկագործութիւն․ և տարածեալ զձեռս և զոտս իւր 'ի նմա, զձեռս 'ի ժողովել առ ինքն զընտրեալս իւր, և զոտս 'ի կոխել զգլուխ չար վիշապին և զզօրութիւն մահու։ Բարձր է խաչն, միանգամայն և խոնարհ, որպ գաւազան՝ որոյ գլուխն հասանէ յերկինս, և ստորին ծայրն յերկիր․ և այն՝ գաւազան զօրութեան և գաւազան արքայութեան, զոր աջն ամենազօր գիտէ վարել

բեւ՝ ըստ բարձրութեան իբրեւ նշան արքունի
փառաց, և ըստ խոնարհութեան ՚ի վանել
զթշնամիս իւր մինչև ՚ի խորս անդնդոց: Այլ
զի՞նչ են զարմանք այսուհետև, եթէ վե-
րացի և բարձրացի պատուական խաչն մին-
չև յերկինս, և է զի տարածանիչ չորեքփայ-
լուք երևեցի կոստանդիանոսի իբրև զէն
յաղթութեան անմահ արքային. և է զի աւե-
տուկնայլն յաղթող ճառագայթից երևեա-
ցի եւթնմնացելոց՝ ոչ փառք լերինն գողգոթայ
և փառք հաւատացելոց. այլ և յաւուր յետ-
նում ունի երևել տիեզերաց համօրէն՝ իբ-
րև նշան և դրօշակ փառաց արքայի, և պար-
ծանք նորա փրկելոց: Տեսանէ՞ք երկրպա-
գուք սոյն խաչին, որքան է բարձրախոր-
հուրդ և երկնաբերձ՝ վերացումն խաչի, և
տօն խաչվերացի՝ մեծ խաչ առ ՚ի մէնջ կար-
գացել: Այլ ինձ յաւուրս հանդիսի նախ
խաչին է խնդրելի և գտանելի՝ զի՞նչ և ո՞ւր.
և ապա խորհուրդ բարձրութեան նորա տեսա-
նելի. զի ուսցուք արժանապէս և խոնար-
հութեամբ և սրբով երկրպագանել խաչին վե-
րացելոյ և բարձրացելոյ մինչև յերկինս:
Ո՞ր ի՞նչ է խաչն, եթէ ոչ փայտ նախատա-
նաց, կախաղան մահապարտաց, գործի մա-
հու. ապա ուրեմն փայտ մահառիթ ըստ թի,
և փայտ անիծից ըստ օրինաց. ըստ, անիծեալ
ամն որ կախեալ կայցէ զփայտէ: Այլ ա-
դոյն այս այսպէս մինչև ՚ի գալուստ բանին
յն, ըստ առաքելին տեառն բանից հին օրի-
նաց. և ցարդ ևս առ առաքելումն առ հրէ-

այս և առ հեթանոսս նոյնպէս : Իսկ մեզ ներքնոցս և հաւատացելոց քնի՝ որդւոց նորոյ ուխտին՝ զի՞նչ . * Հրաշափառ տեսուն 'ի կաթուղիկէ եկեղեցւոջ տեսանի . գործարան մահու՝ մահուճամբ առիթ գոլ կենաց . և մահացուցիչ նախաստեղծին՝ մահուճամբ (նորոյն ադամայ՝ նորուն արարչի) գոլ շնորհօղ յարութե ||. ապա ուրեմն խաչ այսուհետև է փայտ կենաց և կենսաւորութ, փայտ օրհնութե՝ օրհնութիւնաբեր . զի կախեցաւ զնմանէ կեանքն և օրհնութիւն , յարում օրհնեցան ամ ազինք . և ոչ փայտիւ եղև մահ , նոյնպէս և փայտիւ կենդանութիւն էր :

Տեսանե՞ք , թէ որպէս վերացաւ և բարձրացաւ փայտ խաչին , յորժամ արարիչն ած բարձրացաւ 'ի խաչին . տեսանե՞ք , թէ զիա՞րդ վերացաւ փայտն օրհնեալ 'ի վր ծաղկատարած նախատանաց՝ յոր երբեմն ընկղմէին զնա օրէնք , որպէս և ցայժմ անօրէնք . օրինակեալ 'ի նոյեանն խաչանիշ տապան փրկութե , զոր յերկրէ վերացոյց ջուրն բարձրացեալ : Ու յիրաւի . զի բարձրութիւն փայտի 'ի վր ծովու՝ եթէ տախտակ իցէ և եթէ նաւակ , 'ի բարձրութէ անտի ջրոյն չափի . մինչ զի եթէ երկնաչափ վերասցի ջուրն , 'ի վերոյ քան զնա միշտ առկայանայ և փայտն՝ անփորձ յընկղմանէ . Ըստ նմին օրինակի և անարգանք խաչի և վիշտ խաչի և մահ խաչի՝ որչափ և ցած և անդնդախոր երևեսցի յաչս թշնամեաց խաչի , նոյնչափ

և

և վերամբարձ և երկնաբերձ բարձրութիւն է սիրելեաց իւրոց ։ Ո՞րչափ որդիք կորստեան հրէայք խաչահանուք գայթագղեցին ընդ դէմ խաչի, և հեթանոսք յիմարեցին՝ որք դահիճք եղեն խաչելոյն ։ այլ մեզ փրկելոցս փառք է պարծանաց, և փառաւորութիւն փրկչին մերոյ ։ զի այ զօրութիւն է և այ իմաստութիւն ։ յորմէ և խաչակցութիւն Յի քսի՝ մի միայն առիթ մերումս բարձրութե ։

Եւ արդ՝ եթէ սովին միտօք ոք տեսցէ զվերացումն խաչի, ահա բարի է ։ զի և ինքն վերանայ ՚ի խաչ և Յի խաչի մինչև յերկինս ։ եթէ ոք իցէ ճշմարտապէս խաչասէր՝ նա է ստուգապէս տօնասէր խաչի, գիտելով զմեծութիւն խորհրդոյ և զմեծութիւն օգտի կենարար խաչին ։ եթէ կամիս ով դու ՚ի միտ առնուլ զխաչն, ե՛լ Յի քսի ՚ի խաչ ։ և ահա հասու եղեր բարձրութե նր և փառաց նր ։ Ապա թէ ոչ՝ ծաղու արժանի՝ զխաչն տօնել, և ո՛չ սիրել զխաչ ։ խաչի երկրպագանել այ խաչապաշտ, և դժուարիլ ընդ խաչ այ օտարախոյթ ։ ո՞չ ապաքէն փախչիլ ՚ի խաչէ՝ է փախչիլ ՚ի փառաց, և օտարանալ ՚ի փառաց որդւոյն այ ։

Եթէ տնկակից լինիս նմանութե մահուն քսի խաչելութե, և յարութե նր հաղորդ լինիցիս փառօք ։ ապա թէ ոչ՝ որ ոչ զհետ երթայ խաչելոյն բառնալով զխաչ իւր, երթայ ՚ի կորուստ ։ որ ոչն խնդրէ զխաչելեալն, ոչ գտանէ զխաչելեղն ։ որ ոչն ունի զկնիք և զնշան քսի զպատուհական խաչն,

օտար

ծանօս քեզ գիտես Տէ պօղոսի զխաչն, սիրեմ
զխաչ մեծ և վերացեալ. զի ուսուցեն զքեզ
արարածք ամ խաչակցեալ քումդ արարչի.
յայնժամ սարսեցին զծովք՝ 'ի ներքոյ ո-
տից քոց, և աստեղք երկնից խաւարեցին
'ի լուսոյ փառաց երեսաց քոց. քանզի տե-
սանեն զզէնն քո պարզերես և լուսարփի
պայծառացեալ. ուր յելանել քո 'ի խաչ՝
խոկ և խոկ տեսանի, զի նշանեցաւ առ քեզ
լոյս երեսաց խաչելեան փրկչին։ Այնժամ
Ճանաչիս ընդ խաչակից, նոյնպէս և կենա-
կից քոյ. Տէր, այսօր Տէ ես եղես 'ի դրախ-
տին. և զատանիս ոչ միայն արդեամբք քրիս-
տոնեայ, այլ և պարծանք քոյ ամյ քո. և նա
եղիցի քո փառք և պարծանք յաւիտենա-
կան՝ թէպէտ փառաց։ Տեսեր զբարձրութի
և զվերացումն խաչի մինչև յերկինս. տե-
սեր զմեծ և զպատուական խաչն, և զմե-
ծութի և զպատուականութի խաչին։

Որ՞ինչ է խաչն. 'ի գործոյն առեալ անուա
նադրութի՝ խաչն է խեչ, ըստ խեչակ որթոյ
և ամ պտղաբեր տնկոյ. եթէ եղես տունկ՝
զոր տնկեաց Հայրն երկնաւոր, և մշակեաց
աջն անեղական, ամբացիր 'ի խաչն քոյ,
ելիր վերացիր Տէ նմա՝ յեցեալ 'ի նա ընդ 'ի
մեր հաստատութի. բարձրացո մեծութի և
գովութի ոչ միայն զխաչն յոյ, այլ և զքո
խաչ՝ որ է կերպարանակցութիւն նորին։
Նաւծ է Տէր 'ի բերանոյ եկեղեցւոյ որթոյ,
զի՞ս ինձ խեչ բարձր և տաուել բարձր, և
ես հաստատեալ 'ի նա և պատեալ զնովաւ՝
յեր-

յերկինս 'ի վեր ամբարձայց. զի տկար են փայտ որթոյն, և ոչ կարէ լինքնին կալ կանգուն. ապա եթէ զօրացուսցես զնա խեչակաւ՝ վերանայ նա բարձրութն նր : Իսկ արդ քս յս՝ քո յոյս՝ որթն ճշմարիտ կամեցաւ յենուլ 'ի խաչ մեծ, և նովին բարձրանալ. զի ; լեալ հնազանդ մահու չափ և մահու խաչի, վնյ և ած զնա առաւել բարձրացոյց. և թէ՝ ո՞չ զնոյնս պարտ էր չարչարել քնի, և մտանել 'ի փառս իւր. և դու քրիստոնեայդ զի՞ շատանաս դուզնաքեայ խաչիւք, և յայնմանէ իսկ հրաժարիս՝ թէ կարես. յայտ է թէ զի ոչ կամիս բարձրանալ առ ած, և կամ կարծես առանց խեչակի վերանալ որթդ տկար. պարտ էր քեզ հայել 'ի տրն քո, յենուլ 'ի տրն քո և 'ի խաչ նր մեծ. և փարել զնովաւ, զի ելցես՝ ուր եւ նա. մանաւանդ թէ նա փարեսցի զքև, և բարձրացուսցէ զքեզ ը իւր յերկինս՝ փառք քո, և գլուխ քո՝ բարձրացուցիչ գլխոյ քոյ : Դու մի ասիցես, թէ ես եմ փայտ չոր, նա դալար. այլ յիշեա՛, զի վն այդորիկ իսկ քեզ պարտ է առաւել կրել զչարչարանս խաչի. ոչ և ասացն, եթէ ը փայտ դալար զայս առնեն, ընդ չորն զի՞նչ լինիցի : Մի՛ ասիցես, ես մեղաւոր, նա արդար. զի վն ըզքեզ արդարացուցանելոյ՝ եղև նա վն քո մեղք. և մեռաւ արդարն 'ի վն անարդարոց, զի արդարութն նր արդարասցուք : Մի՛ ասիցես. ես անմր, նա սրբութն սրբց. զի որ սրբէն և որ սրբին, 'ի միոջէ էին ամենե.

նեքին . վա՛յ և անձն քո մարդ եղև վա՛ն քո , զի որբեսցէ զանսարդ որբութիւն իւրով ։ Մի՛ ասիցես . հեռացեալ եմ 'ի նմանէ ցարդ , և զխա՞րդ համարձակեցայց առ նա . մի՛ երկընչիր , ահաւասիկ կոչէ զքեզ 'ի խաչին առ խաչն . և ահա է մերձենալ քո առ խաչելեալ փրկիչն՝ որպէս երբեմն կային առ խաչին յորի մարիամ մայր նորա , և մարիամ քոյր մօր նորա , և մարիամ մագդաղենացի , և յովհաննէս սիրելի աշակերտ , ոգեխառնիս է յորի , և անդրէն պատուհասիս 'ի քուննն քո . որով և ուռձացեալ՝ դալարանաս , ծաղկիս և պտղաբերես . ասէ , ես եմ որթ , և դուք ուռ . ամ որ յիս հաստատեալ է , և ես 'ի նա , նա բերէ պտուղ յոյժ ։ Տեսէ՞ր զպտուղ խաչին վերացելոյ . այսպիսի մեզ խնդրելի խաչ , և տօն խաչի միացելոյ և

վերացելոյ ի խաչին քրի ։

Նա՛ւ մեր իցէ ասես խաչս այս ցանկալի և երկրպագելի ։ Ո՞ր արդեօք հարցանես խաչ . եթէ զմին , եւ 'ի լեառն գողգոթայ . եթէ զքոյդ , դարձեալ 'ի գողգոթայ . զի թէ՛ երանեալ աւազակ իցես , և եթէ՝ զոր երկնչիմ ասել՝ չար աւազակ , յաջմէ և յահեկէ նորա խաչեցան և նոքա 'ի լերին անդ ։ Տեսանե՞ս , զի տեղի խաչին յայտնի՝ լեառն վերացեալ 'ի տեսիլ ամ մարդի . այլ գործ է զխաչն գտանել զորութիւնն՝ զանպարտական դառնին նորա , և ոչ զպատժապարտ աւազակին ։ Մի՛ երկնչիր յանցաւոր երևիլ , այլ՝ եւ զանիլ ։ Նա՛ որ 'ի խաչ բարձրանայ՝ յանցաւոր

ւոր երկնի. ուստի և տէրն գլխովին Է անօ-
րէնս համարեցաւ վՃ անօրինացս. այլ որ
ստանց յանցանաց 'ի խաչ ելանէ, նա է 'ի
Ճշմարիտ բարձրութե.

Այլ մ 'ի մէջոջ ազատ 'ի յանցանաց. ապա-
քէն և ոչ ոք. եթէ և յայս խնչ նուաղ խա-
չակրութե անմեղք ոմանք իցեմք՝ ով կար-
ծեմք, և տարապարտ դատապետեալք և
դատապարտելք, երանելիք եմք. զի նման
նողք եղեալք քնի. սակայն և ոչ այնպէս.
զի զայլոյ ժամու զմեղս մեր չկարեմք ու-
րանալ, գոնեա 'ի նակս նացին կրեսցուք՝ Է
նմանութե ամենակողմեան երանելի աւազա-
կին, զի արդարացուք ով զնա. և մե կրկին
դատապարտութեան արժանի կացուսցուք
զանձինս Է ձախակողմեան չոՃառացելոյն:
Այլ այս նշանակ քեզ՝ յոջ կմ յահեակ լի-
նելոյդ քնի այժմ և յաւուրն յետնում. ե-
թէ արժանի համարիս զքեզ խաչի, և գո-
հուշ տանիս, աջակողմեան ես, և երանե-
լի. ապա եթէ դժկամակ լինիս ընդ խաչդ
և աղատիլ խնդրես, ձախակողմեան զքեզ
կացուցեր և թշուառական: Այս ուրեմն
'ի զուր հարցանես, ոուր է խաչն, ցորչափ չես
քեզ կամք գտանել զպատուական խաչն:
ապա եթէ սիրող ես խաչի, ինքնին գտա-
նես զայն 'ի գողգոթայ, որ է տեղի կառա-
փելոյ. Եթ 'ի վէշտս և 'ի չարչարանս և 'ի
մահ վՃ քնի և Է քնի.

Այլ որոց կորուսանեն զխաչն. զի նմանին
հրէից՝ որք թաղեցին և ծածկեցին զնշանն

փրր-

նել՝ ՚ի միոյ ումեք գոյաւորիլ, որ է զօր կատարման: Այլ ո՞ ոչ տեսցէ, զի թէ այսօր սկիզբն արասցէ ազգ զազգ քրիստոնէից մեծարել ընդ փոխելի ՚ի քո, ահա եղեւ միութիւն կատարեալ նոքա եւ կաթողիկէ եւ առաքելական եկեղեցւոյ:

Այլ եթէ այն լինէր, կատարեալ լինէր եւ ուրոյն. զի տանել բովանդակ եկեղեցւոյ զբովանդակ եկեղեցի, կամ բոլորին զբոլորն՝ ընդ մի հօտ եւ մի հովիւ, ազգ մի եւ լեզու մի հոգւոյն սրբոյ, ազգ ընտիր, ազգ նոր, քահանայութիւն, թագուհի, գովելի, եւ տանելի՝ նոյն որ տանէ: Այլ եթէ ոչ այսպէսիկ, ապա կամ սուտ լինի, եւ կամ ՚ի զուր լինի տանել զեկեղեցի. ո՞ր նա՝ սուտ լինի, թող թէ վայրապար, հաւատալ եւ ՚ի մի միայն նոքա կաթուղիկէ եւ առաքելական եկեղեցի. զի զնոյն զայն տանեմք՝ յոր հաւատամք, եւ զոր տանեմքս՝ ՚ի նոյն հաւատամք. որպէս եւ յայտ է: Ապա ուրեմն՝ զո՞ր զորինակ հաւատալն մեր յեկեղեցի ո՛չ է հաւատալ յանձինս մեր, թէպէտեւ մասն եմք եկեղեցւոյ եւ որդի եկեղեցւոյ, այլ հաւատալ բոլորից եւ իւրաքանչիւրոց ՚ի մի բոլոր, նոյնպէս եւ տանել մեր զեկեղեցի՝ է տանել մասանց ընդ բոլորին, անդամոց զմիութիւն մարմնոյ, որդւոց զմայրն, զառանց եւ ոչխարաց եւ խոյոց զմի հօտն եւ զմի հովիւն: Որ ընդ՝ եթէ միշտա[illegible]նայ [illegible]ինչ մի անդամն, միշտանման ընդ անդամքն ընդ նմա; եւ եթէ փառաւորի մի անդամն՝ խնդան ընդ անդամքն ընդ նմա, նոյնպէս եւ

մեք համօրէն անդամքս եկեղեցւոյ՝ որ եմք մի մարմին 'ի քս, տօնեմք զեկեղեցի քի խնդալով ընդ փառաւորութիւն կաթողիկէ և առաքելական եկեղեցւոյ։ Այս է առաջին պատճառ տօնից եկեղեցւոյ առ հասարակ. և 'ի սոյն վերածին և այլ պատճառք. զո-
րոց ժամ է ասել։

Այս երկրորդ՝ տօնէ եկեղեցի զկոչումն նորս եկեղեցւոյ, կամ զժողովումն իւր յամ ազգաց 'ի մի ժողովուրդ քի. զի և եկեղեցիդ անուն հելլենական՝ կոչումն լսի, մանաւանդ արտակոչութիւն. զի արտաքուստ կոչեցել եղաք հեթանոսքս 'ի փարախն քի, լինել նմա ժողովուրդ նոր՝ փոխանակ հնոյն օտարացելոյ. վմյ և նոր սիոն և նոր իէլ կոչի եկեղեցի քի, և եկեղեցի անուանի հեթանոսաց. զի թէպէտև 'ի հրէից եառ սկիզբն, այլ յամ ազգաց եառ զկատարումն, և եղև մի հօտ և մի հովիւ. զի 'ի քս յս չիք խտիր ոչ հրէի և ոչ հեթանոսի, ոչ ծառայի և ոչ ազատի, ոչ արուի և ոչ իգի. զի ամենեքեան դուք մի էք 'ի քս յս. զի որպ մի հաւատ, մի տր, և մի մկրտութիւն, նոյնպէս և մի եկեղեցի քի, շինեալ 'ի վր վիմին հաւատոյ, և 'ի վր հիման առաքելոց և մարգարէից։ Այլ վէմն նախ ինքն քս. և յետ նր փոխանորդ նր տեղակալ երևելի անուանակիր նորա՝ երեսփոխանն ասեմ քի, և գլուխն առաքելոց պետրոս՝ որ և կեփաս, որ թարգմանի վէմ. ըստ, * Այլ եւ քեզ ասեմ, զի դու ես վէմ, և 'ի վր այդր վիմի

շի-

շինեցից զեկեղեցի իմ. և դրունք դժոխոց զնա մի՛ յաղթահարեսցեն ։ Ի նոյն միտս հայի և փականաց լինել երկնից արքայութե՛, և կարգել հովիւ՝ ի տեղի քաջ հովուին առ ՚ի արածել զգառինս և զոչխարս նր. և ընդ նմին ընծահրաման կարգի եղեն ընդ միով հովուապետաւ հովիւք իւրաքանչիւր՝ առաջնորդք իւրաքանչիւր ազգի. այլ այս ամ է տակաւին մի հօտ և մի հովիւ, ոպ և ամ եկեղեցիք ուղղափառաց յամ լեզուաց և յազգաց՝ ասին և են մի կաթողիկէ և առաքելական եկեղեցի ։

Երրորդ՝ տօնէ եկեղեցի զհոգևոր իւր հարսանիս, իմա՛ զխորհուրդն մեծ, զոր ասէ պօղոս ՚ի քս և յեկեղեցի. զի խորհրդաբար կոչի նարս եկեղեցի հարսն քնի, և քս փեսայ եկեղեցւոյ. որում փեսաւէր եղև բարեկամն նր մկրտիչն յովհաննէս՝ կատարումն օրինաց և նախամակիզըն շնորհաց, և առաքեալք՝ մանկունք առագաստի՝ հիմունք եկեղեցւոյ, նախկին ծնունդք նորայ սիոնի, և առաջին ծնօղք նորածնեալս եկեղեցւոյ ։ Որ և այս հանդէս հոգևոր հարսանեաց անմահ փեսային առաւել կատարի ընդ մեզ յաւուր նոր կիրակէի իբրև առաջին նաւակատիք եկեղեցւոյն քնի, յորում փեսայացեալ բանն հանգիստացոյց զպսակ իւր ընդ ժողովեալ եկեղեցւոյ իբրև ընդ նորոյ հարսին. և օժիտ ետ նմ զհոգի իւր սբ. և յետ համբառնալոյ իւրոյ առաքեաց զհոգին երևելի զօրութբ և նշանօք՝ զարդարել զեկեղեցի այսպիսի շնորհօք,

զնմանութիւն հոգւոյ մարդոյն՝ որ լինի տաճար հոգւոյն նորա. Եւս քան զեւս ունի զնմանութիւն խաչի, որ եղեւ աթոռ, եւ զենարան կամ սեղան ք̃ի. եւ 'ի վեր քան զա̃մ՝ ունի զնմանութիւն կուսին, որոյ օրինակք էին եւ տաղաւարն եւ տապանակն եւ խորանն եւ տաճարն. կուսին ասեմ՝ որ եղեւ մարմնաւորան բանին նո̃յ, միանգամայն եւ հաճոյական տեղի հանգստեան Հօրն երկնաւորի, եւ մի միայն տաճար եւ բնակարան հոգւոյն նո̃յ. ուր եւ եկեղեցին տեսական ունի նմանութիւն ը̃ Աստուածամօր՝ որպէս մայր եւ կոյս. եւ ուր Աստուածամայրն է մայր եկեղեցւոյ, նոյնպէս եւ եկեղեցին մայր մեր ամենեցուն։ Այլ ահա վ̃ս այսր ա̃մի՝ տօնք եկեղեցւոյ տեսականի եւ նիւթականի միանման 'ի խորհրդեան. եւ յերկուսին անխոտոր հայրին տօն տապանակին նախ քան զտօն տաղաւարահարաց, ը̃ իբր նախատօնակ վարդավառի, եւ տօն շողակաթին նախ քան զվերափոխումն նո̃ր Ա̃ծածնի, եւ տօն Յամանաւորան զկնի նոր կիրակէին։

Այլ մեւս եւս՝ զի տօնեսջի եղեւ 'ի սկզբանէ հետէ կատարումն շինուածոյ տաճարն նո̃յ, որ եւ կոչի նաւակատիք, ուր Թէ նորակերտիք, ամ ը̃ ամէ զնոյն օր ուրախութեան տօնախմբելով, եւ նորոգելով զյիշատակ նոր շինութե̃ եւ պայծառութե̃ նր̃. եւ եթէ Սողոմոնեան տաճարին վայելէր նաւակատիք, ո՞րչափ առաւել քրիստոսեան տաճարին. եւ այս եթէ ը̃ հարակէս, եւ եթէ 'ի մանաւանդութի։

Ընդհանուր նաւակատիք եկեղեցւոյ է տէ-
րունապէս՝ Յամատրան կիրակէն տօնախմբել
՚ի յիշատակ հիմնադրութեան եկեղեցեաց և
տաճարաց և վկայարանաց ՚ի ձեռն օծից ա-
ռաքելոց ըստ ամ տիեզերս : Նոյն մասնաւոր
նաւակատիք քաղաքում են ՚ի զանազան եկե-
ղեցիս . յորս առաւել հանդիսացաւ այն , զոր
մեծն կոստանդիանոս նոր մեր սողոմոն յետ
կատարելոյ զշինուած եկեղեցւոյ որ յա-
րութիւն յէմ՝ արար մեծ նաւակատիս այնր
տաճարի զոյգ ընդ նաւակատեաց խաչի , կամ
ընդ տօնի խաչվերացին , որպ և գիւտի խաչին .
յոր յաւելաւ և տօն երևման խաչին յաւուրս
որդւոյ նր . և այնպէս տօնք խաչի և եկե-
ղեցւոյ կրկին և կրկին զաշնաւորեցան ընդ
միմեանս : Դարձեալ և որ լուսաւորիչն մեր
յետ կատարելոյ ըստ տեսլեան զշինուած ե-
կեղեցւոյ մեծի ՚ի տեղւոջ իջման միածնին՝ յոր
կաթեաց շող ամենեղէն լուսոյն , զոյգ ընդ
վկայարանաց հռիփսիմեանց և գայիանեանց
և ընկերաց նց , արար և կարգեաց նաւա-
կատիս ուրախութեան . յորմէ և տօնն այն կո-
չեցաւ շողակաթ : Ըստ այսմ օրինակի և ՚ի
մեծն հռոմ , և յայլ ամ երևելի երևելի
աթոռս կատարի տօն նաւակատեաց մայր
եկեղեցւոյ քաղաքին՝ յաւուր կատարման
շինուածոյ նորա կմ նախկին օրհնութեան և
օծութեան նր , և կմ հիմնարկութեան նր , ամ
ըստ ամէ : Նո՛զ զի ըստ քաղաքական և թգւորա-
կան սովորութեան՝ նաև հիմնարկութեան քաղա-
քաց , կմ թագաւորութեան թգւորաց՝ լինէր

նա-

Նաւակատիք, և՛ս առաւել օծութեն կմ խոյ-
բադրութեն հայրապետաց ։ Ապա քանի՞ են
անկ տօն Նաւակատեաց եկեղեցւոյ, կամ
տանն ոչ տեսականի և նիւթականի ։

Հինգերորդ՝ 'ի վախճանի, այս ամ տօնք ե-
կեղեցւոյ կատարին յեկեղեցւոջ յօրինակ
համագերձելոց . զի ոպ հին օրէնքն էր օրի-
նակ նորոյս, նոյնպս և նորս է օրինակ հան-
դերձեալ յաւիտենին . նմին իրի նորս եկե-
ղեցի կոչի դուստր վերին եկեղեցւոյ . և վե-
րինն եմ կոչի և է տիրապէս մայր եկեղե-
ցի . ուստի և պէսպէս կոչմունք անխտիր
ընծային վերնոյն և ներքնոյն . որ թգու-
թիւն քի, քի արքայարան, հրեշտակաց
բնակարան, սբց ժողովարան . ևն . քանզի և
իրօք է մի և նոյն եկեղեցի ոչ յայլևայլ վի-
ճակի՝ երկրաւորս և երկնաւորն, զինուո-
րեալն և յաղթականն, ուղևորս և հասեալն .
վոյ և մի տօն է երկոցունց ։ Այլ վա՛յ որոց
յերկրի ևեթ կատարեն զտօն եկեղեցւոյ,
և անարժան զտանսին կատարելոյ յերկինս .
երանի՛ որոց աստ և անդ կատարել արժա-
նացին . որ արդարոցն է կատարելոց սեփ-
հական, սբցն ասեմ . որոց նախանձաւոր
լինել փութասցուք՝ շնորհօք և ողորմութե
տն մերոյ յսի քի . որում փառք յաւիտեանս
ամէն ։

XXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXX

# ՃԸ. Ը. ԻԸ.

՚Ի պարէն ամ օջս :

Սէք ամ և միայն՝ են արժանի տօնելոյ ով յերկինս և յերկրի՝ զտօնս ամյ ըն- ծրունականս և զսէցն ամյ , և սէք ամ և կի- այն են տօնելի յերկինս և յերկրի . և փառք այս են ամ սէց նր : Ո ի՞նչ փառքն իցեն , և ո՞յք սէք ամ . փառք ո՞րպիսի , և սրբութի յորում կարգի : Երկաքանչիւր խնդիր կա- րեւոր , և երկոքին ցանկալի և զարմանալի . զոր քննել արժան է սկսեալ ՚ի յետնոյն մին- չև ցառաջինն , ՚ի պատկել զգործ մեր յանկ- ծլեալ ամ , զվարս ասեմ տօնելի սէց և ըն- տօնս ծրունիս . զի մարթասցուք տօնակից լինել սէց յերկինս :

Սէք սէց ասէ , որք յաւիտենից բարեհա- ճոյացան սէյն սէց , այնմ՝ որ ասացն . ե- ղերուք նր , զի ես նր եմ : Իսկ արդ ՚ի մի- ատ. զամին զանազանութի ՚ի սէս , յազգս ազգս արդարոց՝ հնոց և նորոց , եղելոց և լինելեաց , եթէ ո՞յք ոմանք իցեն , և ո՞րպիսի գեղեցիկ և բազմազունի ծաղկունք դրախ- տին ամյ , ո՞րպիսի ծառք պտղաբերք տնկեալք ՚ի տան ամն , և ՚ի դաւիթս ամյ մերոյ ծաղ- կեալք ; հրաշալի վարուք սրբութե , և կա- տարեալ առաքինութե . կենդանի հաւա- տով ,

տով, աներկբայ յուսով. և ջերմ սիրով, և
ա̃մ գործովք բարութե̃:

Որպիսիք ոմանք էին նահապետաք առաջինք՝ ա̃ծամերձ անձինք ընտրեալք 'ի բարեկամութիւն ն̃յ, աբէլեանք, սէթեանք, նոյեանք, աբրահամեանք, իէլեանք, հիմունք հինն եկեղեցւոյ. և մարգարէք գրաւոր և անգիր՝ տեսանողք անուանակոչեալք, խորհրդածուք խորոցն ն̃յ, դեսպանք և հրեշտակք բարձրելոյն՝ պատգամաւորք տանն իւրոյ յա̃ծակոյս կազմանէ, և օրէնսդիրք և դատաւորք ա̃ծ օրինաց. ով և այլ արդարք և օրինապահք՝ երկիւղածք յա̃յ, որք ակնունէին փրկութեան իւրոյ. մինչև 'ի կարապետն յովհաննէս՝ մեծն 'ի ծնունդս կանանց, որ եղև միջնորդ օրինաց և շնորհաց՝ իբրև սպասաւոր և պաշտօնեայ: Նաև մի աղաւնին և կատարեալն՝ մայր բանին ա̃յ կոյսն ամենօրհնեալ՝ միջնորդ օրինաց և շնորհաց իբրև գործակից միածնին իւրոյ, ծնօղ փրկչին Ք̃ի և մայր եկեղեցւոյ՝ նոր իէլ կոչեցելոյ. յորում օրհնեցան ա̃մ ազինք. և նա է մայր ա̃մ կենդանեաց՝ ընտրելոց 'ի նոր օրէնս գերագոյն շնորհօք և փառօք:

Որպիսիք ոմանք առաքեալք եղեն և աշակերտք՝ բարձակիցք թագաւորին երկնաւորի՝ առաջինք յաւագանիս, թագաւորք երկրի, իշխանք ազգաց, հոգւով աւլցեալք ա̃յ և մեծատունք հաւատով, նոյնք և դատաւորք աթոռակիցք ա̃ն իւրեանց յահեղ ատենին: Նաև աշակերտք աշակերտաց՝ վէ̃ք
և

և հայրապետք, երիցունք եկեղեցւոյ, և քահանայք և պաշտօնեայք նորա եկեղեցւոյ, խորհրդակատարք խորհրդոցն նոյ, և քարոզք բանին ճշմարտութեան, տնտեսք և հազարապետք հաւատարիմք 'ի տանն նոյ։ Պարծեալ վկայք՝ մարտիրոսք ասեմ, զօրք և զօրավարք քրիստոսադրոշմ բանակի՝ հետևօղք զօրագլխին հաւատոյ խաչելեալ փրկչի՝ մահուչափ և մահուամբ խաչի և սրոյ և հրոյ և ջրոյ և ամենափորձ տանջանաց և չարչարանաց, վարդագոյն արեամբ նահատակեալք, և պսակաւորեալք գունակ գունակ պսակօք և դափնեօք և արմաւենեօք ըստ բազմահանդէս մրցանաց յաղթանակի, յառանց և 'ի կանանց, յերիտասարդաց և յօրիորդաց, 'ի ծերոց և 'ի տղայոց, որ յեկեղեցական և որ յաշխարհական կարգէ։

Կուսանք իմաստունք՝ մաքրազարդք՝ ջահազգեստք՝ շուշանափայլք, յառագաստ հրաւիրեալք երկնաւոր փեսայէն՝ լուսանըկար զարդուք, և մեծապանծ փառօք յաղթութեան ընդդէմ բռնութեանց մարմնոյ՝ տկար բնութ. Միանձունք՝ աշխարհի և դիւի ընդդանիչք յաստապարէզ մենամարտութեան 'ի վերնական զօրութեանն հանդիսադրին, որ այնպիսեօք պարծի քաջ արամբք՝ նախագրաւ մարտիկօք։

Աշխարհիկք՝ որ ոչ են յաշխարհէ, այլ ընտրեալք յաշխարհէ՝ ըստ Տեառն բանի, դասք դասք առաքինեաց՝ ճշմարիտ աստուածապաշտից, դասակարգեալք 'ի պարս վերին զուարթնոց՝ 'ի սպաս

ար.

արքունեաց երկնաւոր Թագրին , շքեղք և պանծալիք , ժիրք և ժրագլուխք , արք և կանայք , ուստերք և դստերք , յամ հասակէ և յաշտիճանէ . սկսեալ յանմեղ մանկանց մինչև ցկատարեալս ասուրբք և արդեամբք , յաղքատաց մինչև 'ի հարուստս՝ աղքատս հոգւով , 'ի ծառայից մինչև 'ի տէարս՝ 'ի միոյ տան ծառայս , 'ի հպատակաց և 'ի սորը-կաց մինչև 'ի Թագս և յազատս՝ որք որդիք հնազանդք եղեն բարձրելոյն . և առհասարակ սրբութիւն կեցին , և հասին 'ի կեանս երանաւէտ դրախտին երկնից :

Ահա սատեղք լուսափայլք՝ որք ճաճանչեն արդ 'ի վերին կամարսն , մի քան զմի փառաւորք , սատեղք հաստատունք և անմոլարք՝ բևեռեալք 'ի հաստատութեան երրորդ երկնից , յերկինս երկնից զատուցեալք 'ի զարդ գեղեցիկ Նոր արքայութեան : Որ Թաղից և զգնութիւն գերազանցեալ հրեշտակական դասմարս խմբից , զանմարմին զուարթնոց զհրաշագեղ հանդիսարանս՝ հազարս հազարաց և բիւրս բիւրուց , յիննեակ սահմանեալ քահանայապետութիս Յս 'ի սրբազնապետութիս , յորս ազգ մարդկան տասներորդ համարեալ է՝ իբրև կրտսեր եղբայր անդրանկաց դասու , կամ հարիւրորդ ոչխար առ իննսուն և իննիւք : Սա ահա մարդիկ անգամ հրեշտակացան , զի լցին զպակասութիւն անկելոյ դասուն 'ի յերկինս . վոյ և Նորին սատաց զանց , իբրև զհրեշտակս եղեն . և եղիցին մի հօտ և մի հովիւ նաև 'ի վերինն

րինն

ըստ(՞)նն սրան :

Տեսիլք զոյգս տամ՝ որոց անուանք գրեալ են 'ի դպրութեան կենաց. տեսիլք և զփառս նց. այլ եւ տակաւին բացուստ 'ի բաց է աղօտ նշմարեմ, զոր ձգնիմս անազօտ նկատել. Ձգնեցարուք և դուք է իս ով մանկունք եկեղեցւոյ, զի թերեւս հասանիցեմք աղօթիւք և բարեխօսութբ̃ տամ սբ̃ց՝ գտանելոց լինել նց յերկինս և տօնակից. միայն թէ եղիցուք աստ նմանօղք վարուց նց՝ որք և անարատ քաղաքավարութբ̃ ըստ կամացն այ՝ տամ երկիւղածութբ̃ հանդերձ. ապա թէ ոչ՝ երկիցուք երկիւղ մեծ, զի բազումք են կոչեցեալք, և սակաւք են ընտրեալք՝ յերկրաւորս եկեղեցւոյ յերկնաւորն. Սա է եկեղեցի այ և յերկրի, այլ անդամք նր և որդիք՝ կան սրբք և անսուրբք. մինչև օրն ընտրեսցէ՝ ի յաւիտենից ընտրութենն : Նախայատեղն, և փառք այս են տամ սբ̃ց նր, չյայտ առնել զամենեսին զնոսա միայն՝ որք աստ և

անդ սրբք գտան և գտանին :

Ոչ նահապետութին և ոչ մարգարէութին, ոչ առաքելութին և ոչ այլն տամ 'ի պաշտամանց սրբութե՝ սբս կացուցանէ յերկիր և յերկինս. զի և ոչ հրեշտակային բնութին՝ հրեշտակ կացուցանէ զբ. որպ յայտ է՝ յորոց անկանին յերկնից խումբ դիւայլականն, սատանայք մոլարք՝ մոլորեալք է արուեստին՝ որ գլուխն էր հրեշտակաց, այլ անկաւ խաւարեաւքն 'ի խաւարին արտաքին 'ի խորս անդնդոց՝ իւրովքն հանդերձ. ուր միշտ տանջելոցանք և դառ-

րին.

ընէլեանք կացին միայնին 'ի զօրավարութե
երկնից՝ զլխաւորք 'ի գլխաւորս Հրեշտա-
կաց սէից ։

Ըստ և կայէն առաջին նահապետ՝ անդ-
րանիկն նախահօր՝ սկիզբն և գլուխ եղև
անսէից 'ի մարդկանէ . ուր արդարն աբէլ՝
որ երկրորդն էր նր, գլուխ եղև նմ արդա-
րոց սէից ։ Մարգարէք անդամ թագուհք ե-
ղեն, որք լուծիցեն 'ի նմնէ, ամէն ասեմ ձեզ,
եթէ ոչ գիտեմ զձեզ . 'ի բաց կացէք յինէն
նմ մշակքդ անիրաւութե . և ո՞ւր մնաց թա-
ղոք նա, որ ոչ յանուն քո մարգարէա-
ցաք, և յանուն քո դևս հանաք, և յանուն
քո զօրութիւս բազումս արարաք . ափ 'ի բե-
րան եղեն թանկի՞ն՝ որ հատու է քան զնմ
սուր երկսայրի . ո՞չ նմ՝ որ ասէ ցիս տր տր,
մտցէ յարքայութի երկնից, այլ որ առնիցէ
զկամս հօր իմոյ՝ որ յերկինս է ։

Ո՞չ առաքէն առաքեալ էր յուդա որդին
կորստեան . ո՞չ առաքէն յաշակերտաց եօ-
թանասնից համարոյ թուէին փիլիպոս և
հերմոգինէս, և նիկողայոս սարկաւագ՝ մի
յեօթանց ընտրեաց նախասարկաւագին և
նախավկային ստեփաննոսի, և դե-
մաս այլովքն հանդերձ, որք նեխեցան և
փտեցան 'ի թունոյ անդամոց քնի՝ կամ մե-
ղաց վճարուն, և կէս մոլի վարուք իւրեանց ։
Ո՞չ վճարք էին և հայրապետք՝ թագուհք 'ի
հերետիկոսաց և 'ի հերետիկոսապետաց հա-
ւատոց 'ի մարմնոյն քնի . ո՞չ և կէսք 'ի կու-
սանաց յիմար գտեալ, և պակասեալ յիւ-

ըղձոյ սիրոյ և օգտութեան, արտաքոյ փակեցան դրան երկնից հարսանեաց. ոչ և առանց սիրոյ անպէտ գտաւ և անօգուտ՝ մարտիրոսութիւն անգամ մինչև 'ի մատնել զանձն յայրումն. և զի՞ մի մի թուիցեմ. ոչ ապաքէն բազումք կոչեցան յեկեղեցի սուրբ և 'ի կոչումն սուրբ, և անսուրբ գտան :

Տեսանէ՞ք, զի ոչ պաշտօնն և ոչ կոչումն, այլ ընտրութիւն և ընտիր վարքն առնեն սուրբ, և 'ի թիւ և 'ի դասս մուծանեն Աստուծոյ սրբոց սանելեաց յերկինս և յերկրի, փառաւորելոց յԱստուծոյ և 'ի մարդկանէ. զի փառք այս են Աստուծոյ սրբոց նորա. Ասէ, զփառաւորիչս իմ փառաւորեցից. և որ արհամարհեն զիս՝ անարգեսցին : Ապա զայս հաւատացուք, այժմ եւեթ ուշ կալցուք, պաշտել զԱստուած սրբութեամբ և արդարութեամբ առաջի նորա զամենայն աւուրս կենաց մերոց. զի այս է սուրբ լինել յերկրի և յերկինս :

Բայց արժան է և զայն խնդրել՝ որոց փափաքեն սուրբ լինել, թէ որ այն իցէ նշանակ և օրինակ կամ կանոն սրբութեան : Այն իսկ է, զոր կանխաւ յուշ արարաք. եղերուք սուրբ, զի ես սուրբ եմ, պատուիրէ սուրբն սրբոց՝ Աստուած սուրբ և 'ի սուրբս հանգուցեալ. և վկայն հաւատոյ 'ի վերայ բերէ. Ըստ սրբոյն՝ որ կոչեացն զձեզ, և դուք սուրբ յամենայն գնացս ձեր լինիջիք : Բաւ որպէս. զի՞արդ մարթ է մեզ այդմ աներկրական կանոնի միաբան լինել : Սուրբ ասէ Աստուած և ամենայն՝ լրութեամբ ուղղութեան անսահման մնաց, և արդարութեան ամենաբարի կամաց,

և

և Ճշմարտութե անսուտ բանից, և գեղեց-
կութե ա՛մ գործոց բարեաց. և ահա որչափ
որք մերձենայ յա՛ծ այսպիսի ա՛ծանմանութ,
այնչափ առաւել լինի և ասի ն՛ր։

Օայս և ’ի հակառակէն դիւրագոյն իմա-
նամք. զի որչափ ոք օտարանայ ’ի նմանու-
թէն ա՛յ ’ի պատկերէ անտի ասեմ սէ՛յ, յոր
ստեղծաւ, այնչափ տխեղծ գտանի և անն՛ր.
զի է թիւրեալն միտք, անուղղայն ’ի կամս.
անխրատն ’ի կշիռս, օտարացեալն ’ի ճանա-
պարհաց արդարութե. ստախօս և ստեր-
դումն՝ կամակար խանգարիչ ճշմարտութե,
և կամաւոր կոյր՝ զրկեալ ’ի լուսոյ ճշմար-
տութե. տգեղ վարուք և աղտեղի գործովք.
ծրդեալ ’ի չարիս, և հակամիտեալ ’ի կամս
մարմնոյ անբարիս. և պարզապէս՝ հոգի ախ-
տաւոր՝ անտեղի տալի հոգւոյն սրբոյ։

Այլ զի իւրաքանչիւր ոք ’ի մէնջ վարակեալ
կայ յայսպիսի անն՛ր ախտաւորութիս, վ՛յ
եթէ կամիմք ն՛ր լինել, հարկ ’ի վ՛ր կայ
փութալ սրբել զանձինս ’ի մեղաց, մաքրել
զաղտս հոգւոց յաւազանն ապաշխարութե
ջերմ արտասուօք, նորոգել զպատմուճանն
առաջին՝ զոր զգեցաք ’ի ն՛ր մկրտութե, վե-
րանկարել ’ի մեզ զսկզբնատպին գեղեցկու-
թիւն՝ զոր կորուսաք. և լինել այսուհետև
ուղիղ ’ի խորհուրդս, ճշմարիտ ’ի բանս,
արդար ’ի գործս. զգաստութ առ անձինս,
և արդարութ առ ընկերս, [illegible] ա՛ծպաշտութ
առ ա՛ծ՝ կեալ յայսմ Ժ՛ի. մաքուր մարմնով,
ն՛ր հոգւով. մաքուր միտք, ն՛ր սրտիւ, ակն-

ու

ջինս. Նախ՝ զի ասէ, Հաճի տր ընդ ժողո-
վուրդ իւր ոք, և բարձր առնէ զհեզս 'ի
փրկութիւն. Երկրորդ՝ զի ասէ, Պարծեսցին
սրբքն փառօք, և ցնծասցեն 'ի հանգիստ իւ-
րեանց, և բարձր արասցեն զած յերանոք
իւրեանց. Երրորդ՝ զի ասէ տալ սուր երկ-
սայրի 'ի ձեռս նց առնուլ զհատուցումն 'ի
հեթանոսաց, այլովքն հանդերձ. և չորրդ՝
առնել նց դատաստան ըստ գրոց. և փառք
այս են ամ սրբց նր։

Ըմբէ բիւրապատիկ պարծանացս փառա-
ւորութե ըն այ. տեսեր, որպէս փառաց 'ի
փառս բարձրացեալ պարծին սրբք ամ հաս-
տատեալք 'ի բարեկամութեն այ. ըստ, Որ
ունի զսրբութի սրտի, վն շնորհի շրթանց
իւրոց բարեկամ ունիցի զթագաւորն։ Ողջա-
պաքէն անճառ և անպատումեն այս փառք,
զի հաճի տր ըն սրբս իւր։ Աչառեալ զմեծն 'ի
փոքունքն. եթէ այր թգր հաճեսցի ըն քեզ՝
գովելով կմ գգուելով, և այլ ևս նշանակօք
հաճութե բարեսէր կամաց՝ իբրև ընտանի
բարեկամ սիրելի, որպիսի պատիւ և փառս
անձին քում զայն համարիս, և որպիսեաւ
զեղուս ուրախութբ սրտի. քանիօն առաւել
եթէ հաճեսցի ըն քեզ տրն տրանց և թգրն
թգրաց և ած աստուծոց. որոյ հաճութի
ոչ է լոկ բանիւք, այլ և արդեամբք բարձր
առնելոյ զխոնարհ հեզութի քո 'ի փրկու-
թե. բարձրութի երկնաչափ՝ և գեր'ի վերոյ
քան զերկինս, լինել 'ի թիւ փրկելոց յա-
ւուրն փրկութե, բարձակից և աթոռակից

ա͞մ մեզ՝ գեղեցիկ Հրաւիրանաւ բարձրե-
լոյն, բարեկամ՝ ՚ի վեր մատիր. յայնժամ ե-
ղիցին քեզ փառք առաջի բարձակցացն քոց.
զի փառաւորեցար յա͞յ, և զատար ո͞ղ ա͞ծա-
ցեալ ՚ի մէջ ա͞ծոց՝ աւագանւոյն ասեմ ա͞յ.
լի͞ք, ա͞ծ. եկայց ՚ի ժողովս աստուածոց:
Ո՞չ ապաքէն անձառ և անպատում են և
այն փառք, պարծիլ մե͞զ ՚ի փառս ա͞յ, և
ցնծալ ՚ի Հանգիստ իւրեանց. և բարձր
առնել զա͞ծ բերանօք սրտից իւրեանց՝ ըղ-
փառս և զբարձրացուցիչ գլխոց իւրեանց:
Յայտ է ՚ի նմին օրինակէ փոքր ՚ի շատէ. զի
թէ է͞ արքայի արքայակից լինիցիս, և սեղա-
նոյ նո͞ր սեղանակից, զՀանգիստ վայելեսցես
արքունեաց յետ աշխատութեց մարտի, և
մեծարեսցիս առաջի մեծամեծաց թ͞էրին.
և պսակ փառաց ընկալցիս յաղթոյ նո͞՝ Հան-
դերձ մեծաձիր պարգևօք, որպիսի ցնծութի
սրտի՝ որպիսի կայտառութի ոգւոյ տիրէ քեզ.
և զի սրտի բերկրելոյ երեսք ծիծաղեսցին,
տես թէ զիա՞րդ զուարթերես և զուարթա-
խօս դատանիս ՚ի ժամուն. որպէս գոՀ լի-
նիս, որպէս գոՀանաս զբարերարէն և զա-
ռատ բարեացն. և բարձր առնես նաև բե-
րանով զբարձրացուցիչն քո: Այլ զի՞նչ նմա-
նութիւն կայցէ թագաւորին երկրաւորի
ընդ երկնաւորին, եղականին ընդ անեղի,
ստացականի և ստացողի, արարածոյ և ա-
րարողի, չափաւորի ը͞ անչափին. ը͞ն նմին և
ուրախութի͞ն երկնային չափեսցի՝ անչափ
լինել և անանց՝ առ չափաւոր և անցաւոր
փա-

փառօք ։ Եւ զի՞ է ինձ օրինակօք ստուերա-ցուցանել զճշմարտութիւն անօրինակ ։ շատ է առնել զբ ակնատես և ականջալուր վկայ-ից՝ որ յափշտակեցաւ յերրորդ երկինս, զա-ռածն անասելի ։ զոր ակն ոչ ետես, և ունկն ոչ լուաւ, և ՚ի սիրտ մարդոյ ոչ անկաւ, զոր պատրաստեաց ած սիրելեաց իւրոց ։

Ոչ այսքէն փառք են անճառ և անպա-տում, յորժամ տրն փառաց Թագ քեզ կա-պեսցէ յանդիմանս տիեզերաց ։ և զԹագա-ւորս երկրի ձեռակապօք և ոտնակապօք դի-ցէ պատուանդան ոտից քոց ։ դու փառա-ւորեալ հոգւով և մարմնով, և նք անարգ հոգւով և մարմնով ։ դու արեգակնակերպ պայծառացեալ, և նք ածդ խանձող դժո-խային սևացեալ ։ դու ազատ յազատաց, և նք գերիք չուառականք ։ և սուր երկսայրի ՚ի ձեռս քո ամենահաստու՝ տուեալ ՚ի բար-ձրելոյն՝ առնուլ քեզ հատուցումն յոսոխաց քոց, և առաւել ՚ի դիւաց ։ Եւ այնպէս նք ամաչեսցեն և յամօթ լիցին, և դու ցնծաս-ցես և պարծեսցիս ՚ի տր ։ նք ՚ի դատաստան մատնեալ, և դու յաղթական փառօք պեր-ճացեալ զբ տն քում ։ զի ամ որ բարձրացու-ցանէ զանձն՝ խոնարհեսցի, և ամ որ խո-նարհեցուցանէ զանձն՝ բարձրասցի ։ և այս-պէս խոնարհդ բարձրասցիս, նկունդ վերաս-ցիս, աղքատդ փարթամասցիս, ծառայդ ազատասցիս, և ամլ զբ այ Թգրեսցես յաւի-տեան ։ ուր ամ հայրապետք և մեծամեծք եր-կրի զհող ոտից քոց լիզեսցեն, և ՚ի խորս

երկրի կորիցեն ։

Ո՜չ ապաքէն փառք են անճառ և անպատտում, յորժամ 'ի հանդէս համեմական հրապարակին արասցէ Տէրն դատաստան ընդ քեզ և ընդ նեղիչս անձին քո, առ 'ի զքեզ արդարացուցանել ընդ գրելոցն 'ի վարս քո բարիս և 'ի դպրութեան կենաց, և զնոսա դատապարտ առնել ընդ գրելոց 'ի գործս նոցա անբարիս և 'ի դատակնիքն մահու. և այնպէս զքեզ փառաւորել և պսակել ողորմութեամբ և գթութեամբ, և զնոսա անարգել և պատուհասել արդարութեամբ. զքեզ ընդ հրեշտակս, և զնոսա ընդ դիւագունդս դասել. զքեզ օրհնել, և զնոսա անիծանել. տինա զքեզ ընծայեցուցանել, և զնոսա մերժել յերեսաց փառաց իւրոց յաւիտեան ։

Ո՜չ ապաքէն փառք այս են ասեմ ամենայն սրբոց. փառք ընծայարգել 'ի յերկինս՝ փառաւորչացն մեր 'ի յերկրի. փառք արժանի տուօղին, և 'ի վեր քան զարժանիս առողին, անհաս մտաց հողեղինաց. միայն նա գիտէ՝ որ ետն, և նա գիտակից գտանի՝ որ ընկալաւ. և զի ամենայն սրբոց են ընկալուչ այս ամենայն պատրաստեալ բարեաց՝ ընդ իւրաքանչիւր աստիճանի փառաց, ընդ չափու գործակցութեան շնորհաց, տօն ցնծութեան է հասարակաց յերկնաւոր հարսանիս անդ վերինն եդեմի. և ուրախութին միոյ միոյ՝ ուրախութիւն է հասարակաց, և փառք և պատիւ իւրաքանչիւրոց՝ փառք և պարծանք է բոլորեցունց. զի մի սիրտ և մի հոգի է յամենեսեան, և ամե-

մենեքին միացեալք ընդ այ փառօք նր և 'ի
փառս նր . ոպ և տրն ասէր առ հայր զիւ-
րոցն . * Ես ես զփառսն՝ զոր ետուր ինձ ,
ետու նց . զի իցեն մի , ոպ և մեք մի եմք .
ես 'ի նոսա , և դու յիս . զի եղիցին կատա-
րեալք 'ի մի . . . և սիրեցի զնն՝ ոպ դու զիս
սիրեցեր . . . զի սէրն՝ զոր սիրեցեր զիս , 'ի
նս իցէ , և ես 'ի նս ‖ ։

Այսպիսի պահէին ձեզ փառք տծեղէն , փառք անպատում , փառք յաւիտենական , ով երջանիկ դասք սբց ընտրելոց . ձեզ ասեմ հաւատացելոց սբց՝ հաւատարիմ եղելոց 'ի ծառայութե տն , որ կոչեաց զձեզ 'ի կոչումն իւր , և ընտրեաց յառաջ քան զլինելն ձր ։ Արդ ու՞մ կայք , զի՞ յապաղէք . զի՞ տատամսիք , հի՞մ վարանիք , և ոչ զգենուք զօրութի 'ի բարձանց՝ յուսով կենացն անվախճանից . 'ի փոյթ մի՞ վեհերոտք, հոգւով եռացէք , տն ծառայեցէք . ծառայեցէք տն՝ չասեմ երկիւղիւ , այլ ուրախութ և որդիական փութով . և ցնծացէք առաջի նր՝ ոչ ասեմ դողութ , այլ՝ անչափ հրճուանօք ընտանի բարեկամութե ։ Այց ոչ վայրապար ասէ գիր , ծառայել տն երկիւղիւ , կամ ահիւ և դողութ զանձանց փրկութիւն գործել . զի երկիւղ տն է սկիզբն իմաստութե և ամ սրբութե և առաքինութե . որում զհետ գայ և ցնծալ առաջի տն դողութ , այս է պատկառանօք իբրև 'ի տնէ , իբրև 'ի սիրելի հօրէ , իբրև 'ի փառաց թագաւորէ ; իբրև 'ի դատաւորէ կենդանեաց և մե-

ռե-

ռելոց, և խնդրև 'ի փրկչէն բոլորեցունց. զի տէր հայր մեր, տէր դաստաւոր մեր, տէր իշխան մեր, տէր թագաւոր մեր, տէր փրկիչ մեր, և նա փրկեսցէ զմեզ:

Ո՛վ ամենատէր և ամենաթագաւոր, ո՛վ հայր բոլորից և փրկիչ բոլորից և կեանք բոլորից, ո՛վ սուրբ և ամենասուրբ Աստուած, Սուրբ Սուրբ Սուրբ՝ Տէր զօրութեանց, լի՛ են երկինք և երկիր փառօք քո. և զխմբող մեք երկրաւորքս՝ զոր հրաւիրեցեր լինել երկնաւորս, մնասցուք այսպէս անմեղք և անփառունակ՝ ոչ մինչև ցայսօր: Այնայեւ տէր ոչ մարդասէր և անոխակալ, ողորմեա՛ բարեգթութ և բարեխնամօղ, և տուր մեզ այսուհետև տրքել ոչ զանկիր՝ ոչ զարծաթ 'ի հուր, եթէ 'ի նեղութիւն և եթէ 'ի կրթութիւն ամենափորձ անցից կենցաղոյս՝ 'ի փառս անուանն քո սրբոյ շնորհօք ողորմութեան քո. զի մարթասցուք քեւ վերագրել 'ի թիւս սրբոց քոց:

Սու փառք այս են մեզ՝ ոչ և տամ սրբոց, ծառայել քեզ սրբութեամբ և արդարութեամբ զամենայն աւուրս կենաց մերոց, ծառայել քեզ 'ի սով և 'ի մերկութեան, 'ի խաչ և 'ի չարչարանս, 'ի խոնարհութեան և 'ի համբերութեան, ծառայել քեզ սիրով և յօժարութեամբ, երկիւղիւ և ուրախութեամբ. և փառաւորել զփառաւորեալդ յինքնութեան էութեանդ, և փառաւորել առ 'ի քէն փառօք մեծութեանդ 'ի փառս մեծվայելչութեան քո: Նա այս հաստեցեր զմեզ յանգոյից 'ի գոյից կարգի. առ այս եսուր մեզ զօծումն սրբութեան և զկնիք փըր-

կու

կութեան , և զբանն ընտրութեան . արդ մի՛ ունայնացի խորհուրդ բարեսէր կամաց ա̃ծութեդ քո յերեսաց անկատարութեց մերոց . դու լցո՛ զպակասութիւս մեր անպակասելի շնորհօք քո , և կատարեա՛ 'ի մեզ զամենայն կամս քո՝ զբարին , զհաճոյն և զկատարեալն :

Օրացո՛ զտկարութիւս մեր՝ աղաչեմք , ուսո՛ զտգիտութիւս մեր , և բարձ զչարութիւնս մեր . հա՛ն 'ի միջոյ զսիրտ քարեղէն՝ ը̃դ եղեցելկ խոստմանց քոց , և տո՛ւր մեզ զսիրտ մարմնեղէն՝ առ 'ի լինել մեզ հոգեղէն . ուղղեա՛ զխորհուրդս , զբանս և զգործս մեր 'ի ճանապարհս արդարութե̃ քո . յաջողեա՛ զընթացս մեր 'ի շաւիղս սրբակրօն առաքինութեց . ձգեա՛ զմեզ զհետ քո 'ի հոտ իւղոց քոց անուշից՝ սիրով սրբութեդ սբ̃ց , վերաթևել 'ոք և անարատ կարգօք 'ի հոլովեա տրտմութե̃ յօթևանս վերինս անտրտում ուրախութե̃ . զի սրբուք միացուք 'ի լոյսդ վերին , և տեսցուք զվայելչու̃ն յարկի փառաց սրբոց քո , և ակնարկեսցո՛ւք զուարթերես և պարզերես յամենայնի դէմս երրեակ լուսոյդ , և փառաւորեսցուք զքեզ , և փառաւորեսցուք 'ի քեզ՝ ընդ ա̃մ սբ̃ս քո յաւիտեանս յաւիտենից . ամէն :

Digitized by Google

# ԱՂԵՐՍ ԸՂՁԱԿԱՆ։

Ս̃բդ սրբոց՝ ամենասէր Էական,
երեքսրբեան՝ մի էութիւն՝ անսահման,
Հայր, և որդի, և Ս̃բ հոգի՝ զուգական,
սրբութեանցդ Տ̃ր, սրբարար մեր՝ միակամ։
Ձերդ օրհնեն՝ յաւէժաբար՝ միաբան,
դասուք սբ̃ց՝ որք և միայն սրբեցան.
յորս հանգչիս՝ իբրև 'ի գահ հանգստեան,
'ի կամարարս անոճանդ քո սրբութեն։
Հոգեղինաց՝ հոյլք բիւրաւորք՝ երգաբան,
երեց եղբարք՝ մեր, երջանիկք՝ յաւիտեան.
և ձայնակից՝ նոցին պարուց՝ գեղազան,
հրեշտակացեալք՝ անթիւք յազգէ մարդկութեն։
Տօնախմբեն՝ ըղտօնելով՝ մի միայն,
փառաւորութբ̃՝ տէրդ փառաց՝ յինքնութեն.
անհատական ձայնիւ սուրբ օրհնութեն,
անլռելիք՝ յանդադ անսայթ՝ փափաքման։
Արդ բարեխօս առ քեզ ունիմք զմեզ,
զերկնաբնակիչ գունդս սբ̃ց բազմութեն.
արժանացո զորս 'ի հաւատս՝ տրամութեն,
գալ ընկառնել 'ի տօն սբ̃ց ցնծութեն։
Տուր կատարել Տ̃ր քո կամաց հաճութեն,
զընթացս մեր յայս առօրեայ անցաւոր.
և կատարել՝ անկատարեցս Տ̃ր արժան,
զամ Տ̃ր ամէ՝ ըղկարգ տօնից՝ Էրունեան։
Առհաւատչեայ՝ երկնից լիցին՝ բարութեան,
այս երկրաւոր՝ տօնահանդէսք՝ տիրական.
ըղձափափաք յիշատակաւ խորհրդեան,
ժամանն լինել և խորհրդոյն իսկութեն։

# ՅՌԻԵԼԱԻՌԾ

## ԺԱ. ՀԱՏՈՐՈՑ

### Լիակատար Վարուց եւ Վկայաբանութեան Սրբոց

Որպէս Ներածութիւն կամ Բովանդակութիւն գործոյս ամբողջին, 'ի հաստատութիւն գրելոցս նմա, եւ 'ի տեղեկութիւն աղբերացն, որ Ճառընտրաց, Յայսմաւուրաց, եւ հին Վկայագրաց · եւս եւ կարգաւորութիւն Տօնից :

'Ի ձեռն հաւաքողի բանիցս · Հ · Մկրտ · Վ · Աւգ :

1814 · ՌՄԿԳ ·

'Ի ՎԵՆԵՏԻԿ

'Ի Վանս սրբոյն Ղազարու :



# ՆԵՐԱԾՈՒԹԻՒՆ

## Որ է Բովանդակութեն բովանդակ գործոյս Վարուց և Վկայաբանութեն Սբց ։

## ԳԼ. Ա։

### Հանգամանք ստուգագրութեն հարազատ Վարուց Սբց ։



ՎԱՐՔ ՄԱՐԴՈՑ՝ ՊԱՏԿԵՐ մարդոյ, յանդիման երևեցուցիչ կերպարանաց հոգւոյ նորա. զի նմին և գրիչ վարուց ուրուք՝ պատկերահան դիմաց նո ճանաչի. եթէ նմանեցոյց սկզբնատպին դեղեցկութեն, քաջարուեստ է ճարտար. և եթէ օտարացաւ 'ի նմանութէ անտի՝ թէպէտև սեթևեթ գունագեղեն, է անարուեստ տխմար ։ Սովին դիտրիմաց օրինակաւ իմաստասիրեան իսկ զնմ օրինաւոր կարգ դատելոյ զստոյգ և զանստոյգ գրութէ հարազատ և անհարազատ վարուց. միայն թէ անդրստին 'ի վերագոյն գաղափարաց ճշգրիտ պատկերի մինչև 'ի յետինս քաջ կշռադատեսցես ։

Ապաքէն նախկին խակութի մարդոյ գլխովին՝ արարաւ 'ի պատկեր և 'ի նմանութի այ 'ի նմին իսկ արարչապետէ. և զի անձամբ զանձինս եղծաք զեղ-



ծաք

ծաք նախահօրն յանցաւորութե՛, կարօտացաք վերըս_ տին նորոգութե յաջոյն բարձրելոյ, ըստ բանի երգո_ ղին՝ (շնորհս ունելով նորոգողին մերոյ, և աղերս արկանելով պահել և պահպանել 'ի շնորհազարդ_ վիճակի) . * Որ վերստին նորոգեցեր զմեզ 'ի հնա_ թէ հինն ադամայ, և զսկզբնատիպին գեղեցկութին նկարեցեր՝ նորաստեղծեալ յոգիս հրաշափառա_ պէս, աղաչեմք զքեզ ք͞ս, ողորմեա՛ ||:

Ցայտ է ուրեմն նախ՝ թէ առաջին և վերջին ան_ ստեղծ նկարիչ բնութես է մի միայն ած . և ըստ նմին՝ զորմէ վկայէ ած ինքնին, թէ բարի է բարոյապէս, ըստ սբ, որպ զնահապետաց, զմարգարէից, և զառա_ քելոց և զայլոց ընտրելոց 'ի գիրս սբս, չիք տեղի քննութե զգաւութէ վարուց նց՝ զոր ձեռն ած նկա_ րագրեաց և արձանագրեաց . այլ այն ևեթ պա_ հանջի 'ի մէնջ՝ նմանօղ լինել սրբութե վարուց այն_ պիսւոյն . զի որ նմանի գովելւոյն այ, լինի և ինքն գովելի յայ . ըստ նմանօղն սբյ՝ ամ և միայն՝ լինի սբ: Եւ զի ած միայն է՝ միայն սբ և սրբոցն սբց, յոր մեզ ասէ, * չիք ոք բարի, բայց մի ած ||, նմին իրի մարդկօրէն գայթակղութիւք ընտրելոցն 'ի մարդկա_ նէ՝ ոչ են մեզ նպատակ նմանելոյ, այլ զգուշանա_ լոյ . վասն և ոչ ունին զտեղի 'ի կարգի վարուց սբց (որք կարգին յօրինակ մեզ), եթէ ոչ 'ի պէտս զգ_ գուշութե . մինչ զի անիրաւին՝ ոյք պահանջեն 'ի գրողաց վարուց սբց՝ զամ պակասութիս նց 'ի մէջ անուլ յանօգուտս . ուր և ինքեանք 'ի ճառելն զարանց քաջաց՝ զարութիս քաջութեց նց առաջի առնեն քան զտկարութիս: Այլ դու զառաքելոյն որոճեա՛ զանհրաժեշտ առած . * նմանօղք ինձ ե_ ղերուք, որպ և ես քսի ||:

Ցայտ է և երկրորդ, թէ ուրեմն այնչափ առաւել կատարեալ մարդ գտանի ոք, որչափ և ածամերձ և ածանման տեսանիցի առ կերպարանաց հոգւոյ նր՝ ըստ հոգեղէն կարողութեց, և ներգործութեց գործ_

նա_

նակման կարողութեց , ը͞ս մտացն յստակութե՛ և քաջի_
մաց հանճարոյ , գիտութե և իմաստութե , խոհեմութե
և զգօնութե , լրջմտութե և նախատեսութե յիւրում
կարգի . և ը͞ս կամացն ուղղութե և բարեկամութե , և
յառաջադիմութե 'ի լաւ անդր՝ որ է զօր յևս լաւա_
գոյնս յանմի թևակոխելով , 'ի կարգի բնութե և շնոր_
հաց միանգամայն , իբրև քաղցեալ և ծարաւի արդա_
րութե՝ նախանձաւոր լինելով շնորհաց որ լաւքն են ,
և նպատակ առաջի ունելով զանհասանելին՝ այլ զը͞ս
կարի մերձենալին սկզբնատիպ . ը͞ս այնմ , * եղերուք
դուք կատարեալք , որպ և հայրն ձեր երկնաւոր կա_
տարեալ է ‖ . մինչև մարթասցի ասել առաքօղն . ահա
դու կնիք նմանութե իմոյ , հայելի անարատ ազդե_
ցութե իմոյ , և պատկեր առատութե կմ բարերարութե
իմոյ : Եւ այս այնչափ դիւրաւ յաջողէ , որչափ
փութասցուք նմանօղ լինել ածորդւոյն՝ մեզ նմա_
նելոյ . ը͞ս հոգեկիր հռետորին ձայնի . * որ միայն
մարմնացար վ͞ս մեր ը͞ս մեզ , զի արասցես զմեզ վ͞ս
քո ը͞ս քեզ ‖ . և ըստ առաքելական քաջալերութե .
* Հայեցարուք 'ի զօրագլուխն հաւատոց և 'ի կա_
տարիչն յ͞ս . . . ա՛ղէ ածէք զմտաւ ‖ , և որ 'ի կար_
գին :

Ցայտ է և երրորդ , զի որպէս պատկեր եմք ա͞յ՝ և
ա͞յ շինած եմք , նոյնպէս և բանաւոր գոլով պատ_
կեր՝ ա͞յ գործակից եմք . և այնչափ պայծառ փայ_
լեմք , որչափ և գործակից լինիմք շնորհացն ա͞յ :
վ͞ս յետ ածաստեղծ պատկերի՝ պատկեր իւրաքան_
չիւր մարդոյ ստուգագիր , որ ասի կենդանագիր և
հարազատ նմանութի , է ձեռագործ նոյն մարդոյն :
ա͞յ բուն իսկ վարք մարդոյ 'ի կենդանութե իւրում ,
գեղեցիկ կմ տգեղ , անարատ կմ արատաւոր . ապա
ուրեմն * իւրաքանչիւր ոք զգոյշ լինիցի՝ թէ որպէս
շինիցէ ‖ , կամ նկարիցէ զվարս իւր . և դարձեալ՝
* իւրաքանչիւր ոք զգործս իւր կշռեսցէ , և այն_
պէս անձին իւրում միայն պարծանս տացէ , և ոչ

առ ընկերաւն Ա. զի այս պատրանք են հասարա-
կաց՝ հայիլ 'ի յայտնի չարագործս, և զանձն առ
լաւս ունել. գործ է հայել 'ի բարեգործս, և նմա-
նօղ լինել նց̃ ը̃ ասացելոցս : Եւ պա՛րտ իսկ է մտա-
ջել առն 'ի խորութ սրտի իւրոյ, որով լինի նմա խո-
նարհել, և 'ի միտ առնուլ զբարձրութիւն Այ̃. պա՛րտ է
ասեմ հայիլ ամ̃ մարդոյ յիւր պատկեր ինքնանկար-
ծի 'ի վարս իւր՝ խղճի մտօք. զի ոչ ոք գիտէ զխորս
մարդոյն, եթէ ոչ հոգի մարդոյն՝ որ 'ի նմա : Եթէ
գեղեցիկ և վայելուչ տեսանէ զայն անաչառ տե-
սութբ̃, և եւս քան զեւս զարդարել դէմսակին ունիցի ;
հայելով 'ի մեծամեծս 'ի սբ̃ց, և 'ի սբ̃ն սբ̃ց. ապա
թէ ոչ՝ ձեռն 'ի գործ արասցէ նորոգել զանձն ըստ
պատկերի արարչին՝ օգնականութբ̃ շնորհաց նորա :
Զայսմանէ կախի և թողուլ յետնոց յիշատակ զա-
րի կմ̃ չար զկենդանագիր իւր լաւ կմ̃ յոռի, զվարս
ասեմ արդար կմ̃ վատթար : Եւ ը̃ նմին նմանութեան
գրեն և պատկերահանք զնմանութիւն վարուց նորա,
եթէ 'ի կենդանութեան՝ սմ̃ ականատեսք զկենդանա-
գիրն հանելով, և եթէ յետ մահուան՝ 'ի կենդա-
նագրէ անտի օրինակելով, և հետզհետէ՝ պատկե-
րէ 'ի պատկեր անցանելով. ուր խնդրելին մեր այն
է, զի պահեսցի միշտ հարազատ նմանութիւն սկզբնա-
տպին ը̃ կարի :

Եւ պահի, եթէ կայցեն ստուգութբ̃ այս պայմանք
և աստիճանք արժանահաւատ պատմագրաց. Ա.
Ինքնագիր յիշատակարան. Բ. գրիչ ականատես. Գ.
ականջալուր յականատեսէ. Դ. լսօղ 'ի լսողէ յա-
կանատեսից. Ե. հաւաքօղ 'ի յիշատակագրաց ան-
տի, եթէ 'ի միոյ և յերկուց, և եթէ յերեցունց և
'ի չորեցունց միանգամայն. Զ. որ ժողովէ և ընտրէ
'ի զանազան հաւաքողաց՝ բաղդատութբ̃ և քննութբ̃ :
Զառաջնոյն յայտնի է բանն. զի թէ այր ոք ան-
կեղծ և վկայեալ 'ի լաւութ̃ առ ամենեսին՝ գրեսցէ
զպատմութիւն վարուց իւրոց, վկայութի̃ն նր̃ է նախա-

պա-

պատուէ՞ ըն սրում քաջ գիտակ անցից անձինն. Թող զկեղծաւորն կե զանհաւատարիմն առ ած և առ մարդիկ, որում ոչ ոք է պարտական հաւատս ընծայել. զի դոյ հաւատալ դոյն 'ի վէ ջրոյ, կմ պատկերի յօդս երևութացելոյ, քան ստուգութե բանից ատախօսաց՝ մանաւանդ 'ի խօսելն զանձանց իւրեանց: Այլ մեր բանք են զսէց՝ որք խորհին և խօսին զբարիս առաջի այ և մարդկան. վէյ և չէք երկբայութե է՛ դրութեն նշ և զանձանց. միայն կարէ լինել և լինի միշտ յայսպիսիս անկատարութի պատմութեն. զի սակաւս 'ի բազմաց դրեն, կամ առ ծածկելոյ զյոլովս յառանձին շնորհաց վն խոնարհութեն (զի հոգիք սէց՝ են, և պարտին լինել՝ խոնարհ), և կմ առ տկարութե լսելեաց. (զի տգէտք մտքեն կարծել զայնպիսիս՝ գովիչս անձանց.) յոր հայի և առաքելոյ ասելն. * անխայեմ, գուցէ ոք իմանայցէ ինչ աւելի քան զոր տեսանիցէ յիս, կամ զոր լուիցէ յինէն ‖:

Եւ զի այս այսպէս, ապա ոչ ոք ունի ասել (և եթէ ասիցէ՝ լինի այպանելի,) թէ գրիգոր ածաբանն, ոսկեբերանն, և այլք 'ի սէց՝ որ միանգամ 'ի գիրս իւրեանց աւանդեցին զվարս իւրեանց, եթէ խոստովանաբար, և եթէ պատմաբար առ 'ի յիշատակէ, բաւական են մեզ 'ի լրումն վարուց նոցա. մինչ զի՝ զոր ինչ ոչ յիշեն նք զանձանց, այլ՝ այլք զնոցանէ, չիցեն ընդունելի: Յայտնի է բանս. բայց կարևոր 'ի մտի պահել. զի յորժամ կամին թերահաւատք ասել զգործս ինչ սէց հրաշալիս, յայսպիսի ցուրտ և սուտ պատճառանս լինին ապաստան:

Այլ զայս թողեալ, (զի սակաւադիւտ է այժմ պատկեր ուրուք ինքնանկար, նոյնպէս և ինքնագիր վարք սէյ,) յայտ իսկ է՝ զի սովորական պատկեր մարդոյ՝ նոյնպէս և վարք՝ է գրեալն յայլմէ, եթէ զբովանդակ ընթացից կենացն, և եթէ զգլխաւոր մաս_

նէ քաղաքավարութեն՝ յորում զօրութիւն է տեսանել զբոլորն. զորօրինակ եթէ զգլուխ թագաւորին նկարեսցես 'ի պատկերի, մնացեալ անդամք և մարմինն ողջոյն ընդ նմին համեմատութեան դիւրաւ իմացեալ լինին։ Եւ ահա այսպիսի բոլորական կամ մասնաւոր պատկերագրութիւն է վարք միոյ միոյ 'ի սրբոց. և այն կամ իբրև կենդանագիր անմիջամբ գծագրեալ յականատես գրչաց, կամ իբրև օրինակագիր՝ միջնորդաբար յառաջնոց առ յետին գրիչս փոխանցեալ։

Արդ՝ ո՞ ոչ գիտէ, թէ յերկաքանչիւր կարգի և հանդիպի պատմաբան իբրև պատկերահան ճարտար, որ ընդունելի առնէ զնկար իւր ամենայն տեսողաց՝ եթէ նման իցէ գաղափարին, և եթէ աննման. և դարձեալ հանդիպի պատկերահան միջաստահմանս, որոյ նկարն ոմանց 'ի ճարտարաց հաճոյ թուի, և ոմանց ոչ. կամ ըստ մասանց ինչ ընդունելի լինի, և ըստ մասին ոչ. և դժուարութիւն ընտրութեան առաւել յայնժամ է, զի կենդանի պատկերն չէ 'ի միջի՝ առ 'ի համեմատել և 'ի վերայ հաստանել նմանութեան կամ աննմանութեան։ Թող զի հանդիպի և պատկերահան յոռի, որ և զգեղեցիկ մարդոյ կերպարան անշքացուցանէ, և 'ի մարդկութենէ գլխովին հանէ. նոյնպէս լինի գրիչ վարուց այնպիսի, որ կամ կցկցէ առասպելս, և կամ աղաւաղէ զառայգ գործս անհարթ ոճով. մեծացուցանէ զփոքրն յիրաց, փոքրկացուցանէ զմեծամեծս. և անհեթեթ պարագայիւք զգեստաւորեալ՝ անշնորհս առնէ զշնորհալի դէմս անգամ։ Այս խոտիրք են՝ ընդ երևութիւն ճշմարիտ, երկբայական, և սուտ կարծեցեալ պատմութեանց։

Թող այնուհետև իմաստուն քննիչք՝ որպէս ճարտարք արհեստի՝ կանոնս սահմանեցին ընդունելի և անընդունելի պատմութեան, ընդ հնութեան և ընդ հաւաստարմութեան գրչի, որք բազում կշռութեան պէտս ունին. վասնորոյ դարձեալ կանոնք բազումք 'ի վեր եդին և վասն

անա

անաչառ քննութ՝ 'ի լինել արդար կրիտիկոս, զի դատաւոր մատենագրաց. բայց և այն է հաւաստի, զի ոչ սխալական է պատկերն անձնաւոր, նոյնպէս և պատկերահանն. չէ՛ անսխալ և պատկերագրին ։ Այսպէս է մարդն՝ որ գործէ զայս ինչ և զայն. և պատմաբանն երբեմն տայ ազատութի գրչի իւրում. իսկ ընթերցողք առաւել ազատութ վարին ընդունել կամ չընդունել, մանաւանդ յանձնապաստանք 'ի կշռութիւս իւրեանց ։

Զինչ ապա. թողցուք զայր իւրաքանչիւր ըստ կշռութե իւրում դատել զպատմութիս և զվարս սրբց, ոչ երբեք կամիլ բազում մտաւք մարդիկ դարուցս յետնոց ։ Այլ քանզի անմարթ է այդմ լինել, զի ոչ ոք կայ և գործէ ըստ դատելոյ այլոց կամ ըստ կարող լինելոյ դատել 'ի յետին ժամանակս, վասն պէտք են ոչ զանցս եղեալս՝ այժմու մեր կշռութե ներքոյ արկանել, այլ զկշռութիւն մեր ըստ եղելոցն ուղղել. զամ ինչ փորձել, և զբարին ընդունել. կէ որ նոյն է՝ 'ի բազմապատիկ աւանդութեց զհնագոյնս և զմիաբանս ընդ միմեանս իբրև ստուգագոյն յանձն առնուլ, և զնորաձև երևեալս՝ զհակառակս հնութե 'ի բաց թողուլ ։ Ապա թէ ոչ՝ առանց մխելոյ զանձն յայսպիսի աշխատասիրութի դժուարաքինան՝ դատաւոր նստիլ ամ բանի, և ըստ մտի հաւանիլ կէ չհաւանիլ, վատթարագոյն է քան զգործ տխմար կօշկակարի, որ զնկարն երևելի պատկերահանի յոտից մինչև 'ի գլուխ կամեցաւ կշռել և եպերել՝ համարձակութե առեալ 'ի գիտելոյ իւրոյ զչափ և զձև կօշկի. և լուաւ, թէ չէ՛ քեզ 'ի վեր քան զկօշիկն քննել ։

Այլ քանզի գործս առաջիկայ՝ ոչ միայն տխմարաց, այլև իմաստնոց առաջի հանդիսանալ ունի, ժամ է յայս առնել ամենեցուն՝ թէ պարծանք մեր այս են, զի ոչ ջանացաք յայս գործ երևիլ նոր պատկերահան, այլ լինել հաւաքիչ նկարուց հին և ճարտար պատկերահանաց. որոյ զյարգ արուեստագէտք

ու-

ունելին գիտել, Թէեւ անտարաճելոյից ամանց այլազգ ինչ Թուիցի ։ Այլ զի փոյԹ մեր առաւելին եղեւ ժողովել զընտիր օրինակս հին վկայաբանուԹեանց եւ վարուց սրբ֊ոց · եւ երկրորդ՝ ընդ կարի անփոփոխ պահել զձեւ բանից՝ ըստ գրչագրութեան անաղարտ հեղինակին · եւ ուր 'ի յօրինուածս էր բանն, բաղադրել ըստ մերում ոճոյ՝ պահմամբ իմաստից · զի յանձն լինիցի գրեալն՝ մերով մտածմամբ անստուեր · ըստ հաւատարմութեան առնել 'ի բուն աղբերաց · զորոց եւ զանեղծան նշանակեցաք 'ի սկզբան իւրաքանչիւր վարուց ։ Եւ զի մի ոք ասիցէ, Թէ քոյդ հաւատարմութեան է զամենայն յօրինակերպ կա՛մ 'ի քաղելդ եւ կա՛մ 'ի բաղադրելդ, բայց Թէ կարօղ ինչ ես՝ ցոյց մեզ եւ զհաւատարմութիւն լինել առքերոցդ, կա՛մ զարժանահաւատն լինել պատմութեցդ, ունիմք յայսմ վայրի առ անեղեկութեան վասն աղբերաց ։

## Գլ · Բ ։

Քննութիւն ստուգութեան վարուց սրբոց ընդհանրապէս ։

Յընթացս գործոյս եղեն առաւելին քննութիւնք մասնաւոր ծանօթութեանք զմիոյ միոյ 'ի վարուց սրբ֊ոց, որչափ եւ բաւական դատեալ եղեն ընդ օրինի քննադատից ստուգել զաւանդեալսն պատմաբար · Մնայ առաւանօր 'ի մէջ բերել զընդհանրական փաստս վասն ընդհանրապէս ստուգութեան, եւ ցրել զպատճառաւոր ամանց ամանց՝ որք են զի 'ի մասնաւորի, եւ են զի 'ի հասարակի զիմախոս գտան պատմական աւանդութեանց՝ որ զսրբոցն մեր ։

Առած է իմաստասիրաց, գիտունն է զընդհանրոց, եւ չէք գիտութիւն զեղականաց · զայսն իմա՛ ինձ եւ ըզգիտնաւոր քննութիւն ստուգութեան անցից անցելոց կամ վարուց սրբոց, որ ո՛չ է հաստատեալ յայս եւ յայն պատ-

պատմութ̃ առանձին գործոյ, (որ մարթի պէսպէս դիպիլ, կամ վտանգ և սուտ աւանդ լինել), այլ 'ի հանրական ընթացս կենաց, յորմէ է հանդիպացեալ անուն և վարք որ և է անձին, մանաւանդ սրբ̃յ. զոր օրինակ՝ թէ գոյր ներսէս անուն հայրապետ Հայոց՝ պարթև յազգէ լուսաւորչին. և թէ՝ էր 'ի չորրորդ դարու. և փայլեաց սրբութ̃ և իմաստութ̃, և փայլեցոյց զհայաստան ծ եկեղեցական բարեկարգութ̃. որոյ վ̃ս խնդ է առնելի իբրև զմի 'ի գլխաւոր հարց և 'ի վդ̃պաց հայաստանեայց եկեղեցւոյ: Արդ այս այնպիսի է տոհմ 'ի պատմական կարգի, մինչ զի եթէ կարօտ քննութ̃ դիցես, յանցանես զէդէմ սովորութ̃ ազգաց և ազանց՝ որք ոչ աւելի ստուգութ̃ գիտեն զերևելի երևելի թգ̃աւորս և զհայրապետս իւրեանց ակնբախտելիս: Բայց թէ զայս ինչ և զայն ինչ արար սրբ̃ն ներսէս կամ ոչ, այսպէս և այնպէս արար զայս ինչ գործ, թէպէտև ստոյգ իցէ, վ̃ս գոլոյն մանաւոր դիպուածոյ՝ պէսպիսօրէն աւանդեալ 'ի մատենագրաց՝ կարէ անկանիլ ը̃ քննութ̃:

Բայց քննութ̃ որպէս. կարգեալ 'ի խնդիր ճշմարտութ̃, ը̃ 'ի հաստատութ̃ հանրական ստուգութ̃ վարուց նոյն անձին, և ոչ յեղծումն նր̃. 'ի վ̃ր նոյն հիման շինեալ, և ոչ օտարի. ապա թէ ոչ՝ հիմն 'ի վեր տապալել զպատմութ̃ս՝ է բառնալ յծէ զամ̃ հաւատս և զհաւատարմութ̃: Ո՛չ է օրէն ջանալ ստել վայրապար խորհրդով զհաստահիմն աւանդութիւնս, և ո՛չ պնդել իբրև անսուտ զերկբայականս և զտարտամս. այլ՝ եթէ թեթև իրք իցեն, չափաւոր ցուցակութ̃ շատանալ, կամ թողուլ յանստուգութ̃. ապա եթէ ծանր՝ տեսանել զգուշաւոր և անաչառ քննութ̃, թէ այն ինչ պատմեալ զուցեքէ՝ զի՞նչ յարմարութ̃ կամ անյարմարութ̃ ունի այնմ անձին ը̃ առանձին վիճակի, ը̃ տեղւոյ և ը̃ ժամանակի. և միթէ յառաջնոց է աւանդեալ, եթէ 'ի յետնոց ևեթ. զօրօրինակ զառաջինն սրբ̃յն ներսէ-

սի

ալ 'ի ժողովս կոստանդինուպօլսի՝ է մինչ յարմար վիճակի նորա և տեղւոյն, զի էր արդէն 'ի քաղաքի անդ. և թէև անդ ոչ լինէր՝ չէր դժուարին երթալ. և ժամանակին՝ զի էր յաւուրս մեծին թէոդոսի. և այն աւանդի 'ի խորենացւոյն՝ որ էր աշակերտ սահակայ պարթևի որդւոյ մեծին ներսեսի։

Եւ զի այսոքիկ այսպէս, պատմաբանօրէն ստոյգ դատանի այդ գործ. յորոյ 'ի դնելն՝ դիւրաւ լուծանի. և պարտի լուծանիլ պակասական ձեռնարկ արտաքուստ առեալ, թէ զիարդ է՝ զի ոչ դոյ անուն նր̃ յայժմու օրինակս այնր ժողովոյ. զի պարտ է ասել, թէ դիւրաւ մարթ էր շփոթել յոյն և լատին դրչաց ը̃ այլ անուանս զարևելեան անուանդ ներսէս. կմ՛ 'ի բազմութեն անուանց զանց առնել զայսու և զայնու. ոմ̃ և ոչ յամ̃ օրինակս նոյնչափ և նոյն անուանք հանդիպին, այլ պէսպէս փոփոխութիւք նշմարին։ Բայց թէ 'ի յետնոց ևեթ պատմել լինէր, մնայր անստոյգ և երկբայելի. ապա եթէ արտաքոյ լինէր գործն քան զվիճակ անձին և զանգին և զժմկն, զորօրինակ թէ գտեալ իցէ 'ի ժողովս նիկիոյ, կմ՛ սպանիոյ, ևն, լինէր սուտ։

Յօրինակէս յայտ է նախ, թէ թէպէտև չկայցէ գիտութեն զեզականաց, և ոչ հաւաստի ստուգութեն զառանձին գործոյ, սակայն ցորչափ եզականն միաբանի ը̃ ը̃հանրոյն՝ է գիտելի, և ցորչափ առանձին գործն միաբանի ը̃ հանրական վարուց ուրուք՝ է ստոյգ դատելի. ապա թէ ոչ՝ չլինէր և գիտութեն զը̃հանրոց, որք յեզականաց բաղարկեցին, և ոչ հանրական ստուգութեն 'ի պատմութես՝ որք բաղկանան 'ի մասնաւոր գործոց։

Յայտ է երկր̃, զի որչափ խնդրի առ իմաստունս քննութի ստուգութե պատմութեց, և՛ս առաւել խնդրելի՝ է ստուգութի քննութեն։ Ա̃յ խստորին 'ի կարգէ ճշմարտութե այն քննիչք՝, որք յաճախեն քննութիս առանց ստոյգ և բաւական պատճառաց, այլ ընդ-

ու-

տեսանելն զճշմարտութիւն ինչ՝ իսկ և իսկ է երկբայութեան արկանեն զիրսն. ապա ելթէ կայցէ և ինչ մի՝ որ կծանէ զյօժարութիւն նց, զորօրինակ բարձրութիւն այլոյ ազգի, իրողութիւն արտաքոյ կարծեաց և սովորութիւն իւրեանց, զարմանալի լինել վարուք և գործովք՝ անձանց ոգւոց քան զիմաստնոց աշխարհի, և տկարաց քան զհզօրաց, հրաշք գերբնական, են, իպառ ջանան 'ի սուտ հանել, կամ ծաղրելի ցուցանել. Թող զի դիւրին է ժխտել զիմն՝ քան ցուցանել. և ունչս առնել զրելոցն յայլոց՝ քան քրտամբք երեսաց ստուգագրել:

Յայտ է երրորդ, թէ որչափ զգուշութիւն պիտոյ ընտրութեան առնել է պատմագիր հաւատարիմ և անհաւատարիմ, ուղղախօս և բազմավրէպ. նոյնպէս՝ և դուցէ ևս առաւել՝ է քննիչ և է քննիչ. զի կայ և 'ի սոսա զանազանութիւն յոյժ: Ապա ոչ յորում բանի միաբանին ամ պատմիչք անուանիք, չմնայ տեղի քննութե ստուգութե, նոյնպէս և 'ի միաբանութե ամ անուանի քննչաց՝ չիք տեղի ստորանալոյ 'ի կարծեաց նոցա. բայց ուր քննիչք առաւել անմիաբան են յիւրեանս քան զպատմագիրս, չէ օրէն զհետ երթալ բազմաշաւիղ հետոց նց: Եւ սակայն տեսանեմք առ մեօք, զի ոմանք զքանի մի արանց քննութիս յակն արկեալ, և տեսեալ թէ շատաբանեն և կռուին ընդդադոյնս վս իրիք խնդրոյ, կարծեն թէ շատխօսութիւն նոցա և հակառակութիւն ստեաց զստուգութեն իրաց. այլ դու գիտես, զի առաւել հաստատեաց. զի թէ յայտնապէս սուտ կարէին, ոչ կարօտանային երկայն բանից. այլ այն է չարն, զի պղտորեն զմիտս տկարաց և Թերեհաւատից. զի մի աւելի ինչ ասացից:

Բայց կարևոր է տալ զմի նշան որոշիչ ճշմարտասէր և անճշմարտասէր քննչաց. ո՛չ է նշան խոստաբանելն զանաչառութի, զի զայդ ամենեքին խոստանան. ո՛չ է նշան հմտութիւն, զի յոլով մասամբ զանձինս քաջահմուտ ցուցանեն. տէ՛նա, ո՛չ է նշան

և

և ուղղահաւատութեան և կարծեցեալ բարեպաշտութեան, զի այսոքիկ օգտեն ճշմարտասիրութեան պատմողաց, և ո՛չ կապելոց ախտաւորութեամբ մարդկան կամ մարդահաճութեամբ կամ նախապաշարմամբ, որպէս են բազումք 'ի քննչաց. զի տեսանելով զարս հզօրադրչաց 'ի մէջ այլազանդից՝ որք զատուգութն վարուց նոցա հեղինեցին անզգամութեամբ, և է՛ զի առիթ առեալ 'ի խախտմանց ոմանց՝ զորս 'ի վեր հանէին, զմնացեալսն 'ի պատմութեանց ընդ նովին արկին կարծեօք, ինքեանք ևս դայթ 'ի դայթ խօսեցան. մանաւանդ թէ յիրս իրս զանցին զնոքօք. և սովորական եղև նշանակ իմաստուն երևելոյ՝ ստգտանել զաւանդս պատմականս: Ահա ասեմ, քեզ նշան ճշմարտասիրութեան և անճշմարտասիրութեան. եթէ առանց ակնածութեան և աներկիւղութեան յայտնիցես արանց՝ ինքն որք, նա է ճշմարտասէր և անաչառ քննիչ պատմութեանց կամ վարուց նոցա. (և այսպիսի ճանաչեմ զքաջն բալլանդ, և զոմանս ոմանս 'ի հետևողաց նորա. այլ ոչ զամենեսին). իսկ որ մարդահաճութեամբ կամ ինքնահաճութեամբ վարի, օտար է 'ի ճշմարտասիրութենէ:

Ո՞չ ապաքէն և բազումք յիշխանաց հաւատացին, թէ Յիսուս է Քրիստոս, այլ քանզի սիրեցին զփառս մարդկան առաւել քան զփառսն Աստուծոյ, կեղծաւորէին չհաւատալ 'ի նա: Որպէս և կէսքն ասէին վասն նորին առաջին ճշմարտութեան, թէ բարւոք է. և այլք՝ ո՛չ, այլ՝ մոլորեցուցանէ զժողովուրդն. * և ո՛չ ոք 'ի նմանէ համարձակ խօսէր վասն երկիւղին հրէից ||. զայս և 'ի քննիչս տեսանեմք: Որպէս և այն ձեռք բանից դիմախօսացն Յիսուսի. * քննեա և տես, զի մարգարէ 'ի գալիլեէ ոչ յառնէ ||. կամ նաև երկիւղածաց, * իսկ 'ի նազարեթէ մարթ ի՞նչ իցէ բարւոյ իմիք լինել ||. ևս առաւել՝ փարիսեցւոց, * միթէ և դո՞ւք մոլորեցարուք. այլ այն խուժանուժ ամբոխ՝ որ ոչ գիտէ զօրէնս, և նզովեալք են ||, յոր և նման տեսանեն առ-

վո-

եւ այլոց արեւելեան ազգաց. վայ եւ զոր ինչ հաւատակիր յառաջ բերեն 'ի նոցանց, ոչ ինքեանց եւ ոչ մեզ առայ յագուրդ: Այլ այս ինչ յայտնի է ամ գիտնոց՝ որ է մեր ընդդիմելին, թէ նաեւ ուղղադաւութիւնք ամ ազգաց միաբանելն է աւանդութեանց երեցունց ազգաց, զորս հաստատաւորէն նշանակեմք առաւելապէս. այսինքն յունաց, լատինացւոց, եւ հայոց. եւ զի զերկոցունցն վկայագրաց փոքր 'ի շատէ առացաք, եկեսցուք յերրորդն՝ որ է մեր սեպհական, այսինքն 'ի վկայագրէն հայոց:

Ճառընտիրք Հայոց, կամ Վկայագիրք սրբոյն Գրիգորի Վկայասէրի:

Յաւիտենական յիշատակ արդարոց օրհնութեամբ եղիցի, եղիցի եղիցի: Այսպիսի յիշատակ եթող հայաստանեայց եկեղեցւոյ այրն սքանչելի՝ տր կաթուղիկոս հայոց Գրիգոր Վկայասէրն մեծ՝ երբեմն վահրամ վեստ կոչեցեալ՝ որդի իմաստնոյն եւ հզօր տան բարեպաշտի Գրիգորի Մագիստրոսի 'ի ժա դարու. վն զի անխոնջ աշխատասիրութեամբ հաւաքեալ առաւել 'ի յունական բնաբեր մատենից զհին եւ զվաւերական վկայաբանութիւնս սրբոց, այսինքն զլիակատար պատմութիւն գործոց նց, որչափ ինչ պակասէր 'ի մեզ, հանդերձ այլ եւս ներբողական ճառիւք սրբոց եւ տնօրինական տօնից՝ որչափ ինչ պակաս մնացեալ էր յառաջին թարգմանչաց, թարգմանեաց վայելչուչ եւ հաւատարիմ ոճով 'ի հայ բարբառ. որ եւ հաւաքեալ 'ի մատեան երեւելի՝ կոչեցաւ 'ի յետնոց Ճառընտիր:

Իսկ թէ գլխաւոր հեղինակ այսպիսի մեծի գործոյ է վկայասէրն գրիգոր, ոչ միայն այլք 'ի մատենագրաց մերոց յիշեն՝ զայդ ընդ յայսմաւուրաց, այլեւ ինքն իսկ յայտնապէս նշանակէ 'ի վախճան զանազան վկայաբանութեանց զանուն իւր. եւ ընդ հանրա-

պէս

պէս ծանուցանէ 'ի յիշատակարանն ճաշոցի, զոր ունիմք յառաջ բերել 'ի յաջորդ գլուխդ. առ այժմ լո՛ւր զայս հաստատած գրեալ անդանօր. * Եւ այս է յիշատակարան տօնից սրբունականաց և սբց նոյ .... զորոց զՎարս քաղաքավարական պատմութեանց, զոր ոչ գոյր առ մեզ հայ գրով. մեք աշխատութե թարգմանեցաք 'ի յունականէն 'ի մերս գիր և բառ ‖: Այլ և աշակերտ նորա կիւրակոս թարգման' գործակից սբյն կոչէ զվրդպ իւր' վկայասէր. * Հոգւ՛ն ոք ազդեաց (ասէ) սբ Հայրապետին Գրիգորիսի Աձատեցի և Վկայասէրի ‖:

Յայտնի են և բանք շնորհալւոյն 'ի վիպասանութե. ոխ, ոձֆ. ևն. * Զգրիգորիոս յառաջ ածեալ, որ և վահրամ նախաձայնեալ .... երկրորդ մեզրոպ մեզ երևեալ, զգիրս բազումս թարգմանեալ. առ 'ի յունաց և յասորւոց, Ճառս Սրբոց վերաբերեալ: Տօն յիշատակ նոցին կարգեալ, ընթերցուածովքըն զարդարեալ. զորս ոչ միայն լոկ վերծանեալ, այլև վարուցըն նախանձեալ. զի որում անուն իսկ ընկալեալ, վկայասէր վերաձայնեալ: Ճառանգութե ոչ ըստացեալ, ոչ 'ի միում վայրի բնակեալ. պանդխտաբար յերկրի շրջեալ, զքաղցեալ հոգիսըն կերակրեալ ‖. ասէ և զորս զկնի, թէ որպէս շրջեալ յարևելս և յարևմուտս' հաւաքեաց զվարս սբց. մինչև գալ բնակել 'ի սեաւ լեառն ճգնութե, * զքանի սիրողըն հաւաքել, և առ ինքեան բնակեցուցեալ. զգիրս հոգւոյն միշտ ընթերցեալ, և ընդ նոսին յար խօսակցեալ ‖. մինչև փոխեցաւ յերկինս մօտ 'ի կարմիր վանս 'ի քեսուն քաղաք եփրատացւոց, յամի 1105.

շծդ:

Աստցի' գլխաւոր հեղինակ ճառընտրաց եղև վկայասէրն. վա զի յայտ է 'ի յիշատակարանաց քանի մի վարուց սբց և 'ի բանից պատմագրաց աշդիս, զի և բազմօք յառաջ քան զնա Գրիգորիս վար_

գտակեալ՝ տառավամայ վանից տուաչնորդ՝ գործակցաւթէ Գրիգորի սարկաւագի իւրոյ ’ի Թ դարու. (իմն ժամանակակից սրբազանի մատենագրութեան ;) Թարգմանեալ էր յասորւոց ոչ սակաւ վարս սրբոց. ուստի և մատեանն այն Արօնատէր կոչեցաւ. սոյն և Յովհաննէս բժիշկ Հայկազն ’ի յունականէ՝ ’ի նմին դարու. և այլք յայլ դարս ինչ ինչ թարգմանեցին: Թող զի անստորակայս է, թէ նախնի թարգմանիչք մեր ’ի Ե դարու Է այլ մատեանս, և Է ճառս հարց սրբոց՝ որ կան ’ի ճառընտրաց կարգի, թարգմանեցին և ոչ սակաւ վարս սրբոց, և ոչ սակաւ ինքեանք շարադրեցին զսրբոց եղելոց ’ի սահմանս Հայաստանեայց: Եւ այս իսկ է պատճառն, զի գտանին և յօրինուածք կամ թարգմանութիւնք վարուց մի և նոյն սրբոյ ’ի զանազան ճառընտիրս, երբեմն նոյնօրինակ, և երբեմն գլխովին տարբեր. իսկ թէ զորս ’ի նոցանէ արժան իցէ ընծայել աշխատասիրութեն վկայաբանին կամ առաջին թարգմանչաց, այլոց թողումք ստանձնել՝ յորժամ ’ի ձեռս բերցեն և զայլ բազմութիւն ճառընտրաց. որոց յատկութիւն է ինքն նման լինել, և ինքն աննման իրերաց, ըստ հաճութեան հաւաքողաց ’ի զանազան մատենից զայս և զայն ճառս և զվարս: Զայս ամ յայտնապէս նշանակէ և ինքն վկայաբանն՝ ըստ այնու բանիւ, * զոր ոչ գտի առ մեզ հայ գրով, մեք աշխատութեամբ թարգմանեցաք. յայս է թէ կամի ասել, թող զոր գտի առ մեզ յառաջագոյն աշխատասիրեալ յայլոց. որպէս և խորհեսցին իսկ տուժէ զընթերցօղս ’ի վարս սրբոյն Թադէի աշխատասիրեալ ’ի յառաջագունից քան զինքն:

Այսպէս անուամբ ճառընտրաց իմանամք զհին ձեռագիր մատեանս, որ են ընդունարան այս ամ հնոց, և առաւելապէս աշխատասիրութեան Գրիգորի վկայասէրի ’ի թարգմանութիւն վարուց և վկայա-

բան-

Ծ. Ձ. երկաթագիր ընտիր, և մասամբ բոլոր-գիր խոշոր՝ յայլև այլ գրչաց գործակցաց 'ի Մաշ-կևոր անապատի, հին և անթուական:

Ծ. Է. բոլորգիր հին. յորում կան պատմա-կան բանք և ճառք, այլ ոչ ոկրադէս վկայաբա-նութիւնք:

Ծ. Ը. բոլորգիր գրեալ՝ 'ի Թուին չղա և չղբ. 1342. 1343. յեզնկա. առաւել Ներբողական ճա-ռից Ճռունարան՝ քան վարուց սրբ՟ց:

Ծ. Թ. բոլորգիր խոշոր. յորում են ճառք և մեկնութիւնք և տօնապատճառք, և ոչ վարք:

Ծ. Ժ. երկաթագիր՝ հին յոյժ. յորում կան ճառք մանդակունեայն և այլոց հարց. և 'ի վերջոյ քա-նի մի հին վկայաբանութիւնք և վարք:

Թո՛ղ զի և 'ի ձեռն բարեկամաց հատուածս ինչ եղև մեզ 'ի ձեռս բերել 'ի ճառընտրաց գաւառաց առ այլս. զորոց զվկայութիւնս լինի յիշել ընդ ան-ուամբս Ժ. կմ՟ ճառընտրաց առհասարակ: Ոչ կա-րեմ գտանել և այլ ճառընտիրք, յորս կայցեն այլ իրք՝ կմ՟ նոյն պատմութիւնք այլով շարադրութ՟բ և թարգմանութ՟բ. ոչ յայտ է 'ի վկայութեց, զորս բերեն երբեմն մատենագիրք մեր. մանաւանդ Նա-րեկացին 'ի մեկն. երգոց:

Յայսմաւուրք Հայոց:

Երեք և չորս ազգք են յայսմաւուրաց յազգէ մե-րում, որչափ ինչ եհաս ցայս վայր ունել մեզ տե-ղեկութիւն. զորօրինակ են այսոքիկ. Հ = Յ. ոմ՟ Հայոց ու Յունաց ամսոյ Յայսմաւուրք. որ սկսա-նի յեկեղեցական 'ի տարեգլխոյ հռոմոց, ոմ՟ 'ի սեպտեմբեր ամսոյ՝ 'ի տօնէ սրբ՟յն Սիմէոնի սիւնա-կեցի. զոր և մարթ է կոչել Մայր Յայսմաւուրք. ոչ զի մեծ է քան զառօրական օրինակս, այլ զի է սկզբնատիպ և ծնող նոցին, հին թարգմանութե

'ի

'ի յունէ հանդերձ սակաւ պատուաստաւորութեամբ 'ի հայոց ։ Վա՞ զի բաց 'ի տօնէ մեր լուսաւորչին և հռիփսիմեանց և գայիանեանց, և թարգմանչացն սահակայ և մեսրոպայ, բովանդակն է տօն և յիշատակ այլոց սրբոց հանդիպեցելոց առ յոյնս՝ հանդերձ չափաւոր պատմութեամբ վարուց միոյ միոյ 'ի նոցանէ, հասարակօրէն նովին շարադրութեամբ՝ զոր ընթեռնումք 'ի սովորական յայսմաւուրս հայոց ։ Ցորմէ իմանամք, թէ զայսպիսի օրինակ ունելով 'ի ձեռին՝ յարմարեցին այլք զհին և զնոր յայսմաւուրս հայոց, յաւելլով 'ի նոյն և զազգային սրբս, ամփ. և թողլով զոմանս 'ի սրբոց յունաց՝ որք ոչ էին ծանուցեալ հայոց ։ Զայսպիսի յունակերպ հայերէն յայսմաւուրս ունիմք 'ի ձեռին՝ մի ևեթ օրինակ՝ բոլորագիր հին, ուրեք ուրեք նորոգեալ և կարկատեալ նօտր գրչութեամբ, յայս է թէ հայելով յայլ օրինակ համանման. զոր թերևս մարթ է գտանել՝ ցարդ առ հայհոռոմս ։

ՏԻ ԵՒՍ օրինակ. զոր մարթ է կոչել յայսմաւուրք Հայոց ընդ Հռովմայեցւոցն ամսոց. զի սկսանի 'ի յունվար ամսոյ, առընթեր դնելով և զամսագիր հայերէն ընդ անշարժ հաշուին սարկաւագ վրդպին կամ յայսմաւուրաց. վասն հանդէպ առաջին աւուր յունվարի՝ որ է տօն սրբյն բարսղի, գրէ. * Քաղոցի ժդ. և յունվարի. ա ‖. և յերկրորդ աւուր՝ որ է տօն սրբյն սեղբեստրոսի, * քաղոցի. ժե, և յունվարի բ. ‖ և այնպէս երթայ մինչև 'ի տօնն աբգարու թգրի, դնելով * քաղոց. ժզ ։ դեկտեմբ. լա ‖ ։ Իսկ շարադրութիւն պատմութեան վարուց սրբց՝ է նոյն ընդ համառօտապէս ընդ առաջնոյն, այլ առաւել համառօտեալ. և յաւելուած իւր յընթացս սրբցն յունաց՝ է տօն և վարք սրբցն հայոց, վայելուչ ոճով. մինչ զի երանի թէ այս օրինակ լինէր հանդիպեցեալ յազգին՝ փոխանակ օրինակի խլաթեցւոյն.

՚ի դասն եւ ՚ի նեղ ժամանակի. զի յոյժ նեղիմք յանօրինաց եւ յանիրաւ պահանջողաց, ՚ի դասատու տարապարտեան ՚ի յանապատս յուրծայ, որ կոչի արքուա երեկ, ընդ հովանեաւ մը սուրբ եւ մը յակոբի. ՚ի հայրապետութեան տն սուրբ, եւ մերոյ հայրապետի տր մանուելի. եւ յաշակերտութեան պայ ազաւրի որդւոյ յաղպի։ ..... Աղաչեմ յիշել ՚ի քարին եւ զվարպետն իմ զխաչատուր քահանայն, որ զօրինակն շնորհեաց մեզ .... Եւ ստացող ըն-ծայ մը ստեփաննոսի նախամեկյայիս ՚ի գեղջս սա-կուաքերդայ, եւ սպասաւոր մը եկեղեցւոյս մը ստեփաննոսի՝ ըստեփանոս նորընծայի քահա-նայի։

Արդ՝ ոչ յերկրորդ օրինակէս կան տարբերութիւնք ինչ յառաջնոյն, եւս առաւել ՚ի յետին երկուս օրի-նակս գրեալս ՚ի կոստանդնուպօլիս յամի. ռԺբ. 1563. եւ ռՃիե. 1676. մուծանելով զանազան վարս՝ ոչ միայն նոր նահատակաց ոմանց, այլեւ զյետին վկայից ն կամի. ոչ եւ զբանս եւ զխնդիրս հակառակութե ՚ի վր սոնից ինչ, եւ զայլ աւելորդ եւ անպիտան բանս. զորս եւ տպագրողք ն յետ-նագոյն օրինակաց պահեցին եւ պաճուճեցին, թո-ղեալ եւ ինչ ինչ ՚ի կարեւորաց գտեալց ՚ի հին օրի-նակս. թող զակամայ սխալանս գրչութե եւ տպա-գրութե, որ չէ՛ մեղադրելի, ոչ մեղադրելի եւ ան-ներելի է կամաւորն։

Եւ զի փոքր մի խմոր զամ զանգուածն խմորէ, այսպիսի այլափոխութիւնք հետզհետէ մտեալք ՚ի յայս-մաւուրս՝ աղաւաղեցին զպատմական գործն, եւ ընդունայնացուցին զաշխատութե առաջնոց վկայից. մինչեւ մ՛ազդն գլխովին ընդվայր հարկանել՝ զոր ըն-թեռնու յաւուր յայսմիկ։ Եւ այս տաղտկալի վի-ճակ ոչ այլազգ ՚ի լաւ անդր փոխի, եթէ ոչ վերա-ծելով զգրեալսն յառաջին աղբիւրս յատակս. եւ այս իսկ եղեւ տամ փոյթ մեր, ոչ տեսանես յըն-

թացս

թացս գործոյս · զի զճշմարտասէր վկայաբերաց զաւանդս հոգ. կալաք աւանդել, և զստուգութիւնս կամ զախտալանս յետնոց 'ի բաց տարադրել: Եւ եթէ ազգն կամեսցի ըստ այսպիսի անաչառ ճշմարտասիրութեն փայլել և փայլեցուցանել զպայծառաւուրս, դիւրին է զյաւելուածս յապաւել, և ըզախտալանս ուղղագրել՝ առանց ծանր աշխատութեն, և այնպէս անստգիւտ ընթերցուած ըստ հնոց նախնեաց կարգաւ յեկեղեցւոջ յօգուտ և 'ի շահ լսողաց: Եւ ոչ վկայաբանութեն մերոց այնչափ է ուղիղ, որչափ միաբանն ընդ հին աւանդութե, նոյնպէս և տօնախմբութեն մերոց · այլ մեզ ժամ է առնել տակաւուք և զկարգմանէ տօնից:

## ԳԼ. Բ.

Կարգաւորութիւն Տօնից ըստ հին ցուցակաց, որ են հին Տօնացոյցք, և Տօնամակք կամ Ճաշոցք:

Ամենայն եկեղեցական կարգաւորութիւնք պահանջեն զհնութիւն՝ եթէ 'ի կաթուղիկէ եկեղեցւոջ, և եթէ յառանձին եկեղեցիս ազգի և ազգի · և զորօրինակ կայ ծագ. հնութեն սկսելոյ, նմանապէս կայ և ծայր հնութեն ոչ եթէ դադարելոյ, (զի ցորչափ կայ եկեղեցի քրիստոսի մինչ 'ի կատարած ժի, պահի 'ի նմա և կարգաւորութիւն նախնի), այլ ծայր հնութեն վաւերականի · յորմէ և անդր փոփոխեալն՝ կոչի և է նորաձևութիւն, ուր նորութեն՝ որ չմիաբանի ընդ հնոյն, մնայ և անընդունելի: Ծագ. հնութեան սկսելոյ ընդհանրապէս՝ է սկիզբն նորածնեալ եկեղեցւոյ, ուստի է ամ քնականն և առաքելական կարգաւորութե · և զի օրըստօրէ աճեաց հօտն փոքրիկ, և առաւել պայծառացաւ եկեղեցին 'ի դառնալ բազում ազգաց և թագաւորաց

 միան_

միանգամայն, ոպ̃ առ տրդատաւ և առ կոստան_
դիանոսիւ, հարկ էր և առաւելուլ բարեզարդու_
թեց եկեղեցւոյ. ոպ̃ և եղև իսկ 'ի չորրորդ դա_
րու անդ, և 'ի հինգերորդն. բայց որպէս. շինելով
'ի վ̃ն նոյն հիման, և զարդարելով վ̃պաց զկար_
գաւորութիւն առաքելոց: Իսկ յորժամ էառ զչափ
վայելչական սահմանի պայծառութե, այնուհե_
տև փոխել զպայծառն՝ լինէր նսեմացուցանել, և
զգեղեցիկն տգեղացուցանել. վ̃յ և հարք և վար_
դապետք՝ որ 'ի հինգեր̃դ դարէ մինչև 'ի տասնե_
րորդն, և առ առաւելն ցերկոտասաներ̃դն, ոչ
դիւրէին նոր յաւելուած առնել 'ի վերայ առաջնոյ
կարգաւորութե, այլ զխաթարեալն յանկարգուէ
անհոգացելոց՝ յառաջին բարեկարգութե վերա_
ծել. զորօրինակ է տեսանել 'ի բազմապատիկ աշ_
խատութիւն շնորհալւոյն և լամբրոնացւոյն. մինչ
զի եթէ պահեսցուք մեք՝ զոր առ նոքօք խրատս
և զկարգաւորութիւն, լի՞նիմք հաւատարիմ աւան_
դապահք, և հետևօղք հարցն մերոց և վ̃պաց
հետևողաց առաքելոց. ապա թէ ոչ՝ նորաձևութեց
զհետ կրթեալ՝ ո՛չ լինիմք բարեկարգիչ, այլ՝ խան_
գարիչ եկեղեցական կարգաց: Ապա ծայր հնութե
մերոյ՝ քան զոր չէ՛ արժան նորաձևել ինչ երևելի.
է դար շնորհալւոյն և լամբրոնացւոյն. զի և յետ
նոցա ոչ ոք եղ նման նց̃. և միանգամայն բարձաւ
թագ̃րութե և իշխանութիւն ազգիս՝ որ ոչ սակաւ
սատար լինէր 'ի կարօղ լինել առնել զարժանն յա̃մ
կարգի:

Զայսօսիկ կանխեցաք, նախ՝ զի մի՛ ոք զարմասցի,
թէ դարուց 'ի դարս յաւելան պէսպէս կարգաւո_
րութիւնք յա̃մ եկեղեցիս. զի այդ էր նշանակ պայ_
ծառութե և յառաջադիմութե. զորօրինակ ս̃րն
բարսեղ և ո̃ք ոսկեբերան զարդարեցին զպատա_
րագամատոյցս յունաց, և ս̃ր նոցին՝ թարգմանիչք
մեր զմերն: Երկրորդ՝ զի մի՛ ոք ասիցէ, թէ որպ̃ս

առաջին հարք զարդարեցին զառաքելական քա-
րեկարգութիւն, և միջինք զառաջնոցն պայծառա-
զարդեցին, նոյնպէս և յետինք զմիջնոցն և ըզ-
վերջնոցն կարեմք և ևս փայլեցուցանել զլուսա-
փայլութեան. զի որպէս ոչ ոք 'ի յետնոց կարող
կա՞ կարէ յօրինել զշարական համեղ և անստգիւտ՝
քն ոճոյ նախնեաց 'ի շնորհալւոյ և այլոց, քն որում
փորձեցին և 'ի դերև ելին կեղեկեցին, նոյնպէս և
չէ՛ օրէն վստահիլ 'ի նորաձևութեն ինչ՝ որ սատարա-
նայ 'ի հետոց առաջնոց. մանաւանդ եթէ չիցէ
յաւելուած 'ի զարդ (որ քն իմիք մարթի արդա-
րանալ), այլ՝ բացբարձումն կա՛ այլափոխութիւն
(որ ո՛չ ի՛ն՛իք արդարանայ): Ժամ է արդ նշանա-
կել զմեր խնդրելին, թէ ո՞րպիսի էր՝ կարգաւորութ̅
տօնից և տօնական մատենից՝ առաջին, միջին, և
վերջին, առ 'ի չտալ տեղի յետնագունից:

Առաջին կարգաւորութիւն տօնից յազգի մերում
յայտ է թէ 'ի մեր լուսաւորչէն մերմէ սկիզբն առ-
նու. զորմէ և յայտնապէս գիտեմք, թէ կարգեաց
զտօն տ̅ց Յարութեան, և զս̅ց կատարելոյն.
ուստի իմանամք, թէ նոյնպէս և զայլոց տ̅ց Հան-
գստացելոց յում եկեղեցիս ցուցուրս իւր՝ կարգեաց
կատարել անթերի զտօնախմբութիւնս և զյիշա-
տակս. որպէս և զգլխաւորս 'ի տօնից Տէրունակա-
նաց. և այն է՝ զոր Տօնակրանն յարգէ Լուսաւորչի
կոչէ արշարունին գրիգոր. 'ի Գլ. Ը. ըստ հին ջեռ:
Եւ այսմ ո՛չ միայն ազգային աւանդութիւն գրաւոր
և անգիր՝ վկայէ յանեղկրայս, այլև ինքնին մեր
հայրն մեր բազմօք հաստատէ 'ի յաճախապատում
գիրս իւր. տեսլով 'ի Գլ. ԺԳ.

* Ամենայն ժողովուրդք՝ որ ժողովեալն 'ի Յիշա-
տակս Մ̅ցն, 'ի միա տեղեն հաւատով. և մեք սի-
րով զհանդէս նահատակութեն նց. և նց բարեխօ-
սութեամբ աղաչել զա̅ծ ջերմեռանդ արտասուօք
հսկելով զտիւ՝ և զգիշեր 'ի պաղատանս մեր սրտի՝,

զի

մի զերծուցէ յՃէ սատի չարէ առաքինատեր վարուք՝ որպէս զՍրբոյն զայնոսիկ, որոց Ցեշտակքն կատարին 'ի փառս ԱՃ... Զի այս իսկ են Սրբոյն կամք, զի և ժողովուրդք՝ նոցա բարեխօսութբն յՃյ պաշտօնն յորդորեսցին. և այնպէս առնուն զաշխատութեան փոխարէնս յամենայնք Երրորդութէն....

Ես Ամենայն Սրբք՝ իւրեանց առաջնորդութեամբ Ճշմարտեալ խոնարհութբ առ Ածն 'ի բարձունս ընթացուցանեն զմիտ հաւատացելոյ յԱծ. զի արժանի լիցին յամենեցունց մեղց փրկութե և քաւութե սխալանացն բարեխօսութբ Սրբցն. և այլ մի ևս զանձնալ 'ի գժնդակ վարս սատանայի. այլ Լսել զիւրաքանչիւրոցն Նահատակութե, և զկատարեալ մք սէրն, որ առ Ած էր յոյսն նց համբերութեանն. Նախանձ Ոանել Քրիստ. որ հրով և ջրով, Ջրով և սառամանեօք, քերանօք և հարուածովք, բանդիւք և կապանօք, սովով և ծարաւով, սրով և մահու, սպառնալեօք և ողոքանօք... Արդ զհետ երթիցուք կոչողին զհետ Սրցն մք սիրով... զի Ճշմարտեալ սիրովն՝ որ առ Ած, կարասցուք մասին Սրցն աւետեացն արժանի լինել՝ յետ զկեանս Ցիս լուծանելոյ: Զի այսպէս 'ի ժողովս մեր հաղորդեսցուք. և Տօնեսցուք 'ի փառս ամենակալին Ծյ, որ ետ նց զյաղթութիւն առ չար բռնաւորս, և փառաւորեցան յերկինս և յերկրի, որ կան և մնան ... Այսպէս է իմանալ զՍրբցն զԲարեխօսութե առ հաւատացեալ ժողովուրդն. զի իւրեանց մեծըմ վաստակովքն, որք զմարմինս իւրեանց պատարագեցին յերկրի վս անուանն Ծյ 'ի հոտ անուշից, և մք Հոգւք նց հոգևոր բարեխօսութբն զԱծ յողորմութիւն Ցի ածեն. և Նշխարք Ոսկերաց նոցա՝ փրկութե շնորհք ընծայեն 'ի ժողովս հաւատացելոց...

Զի այսպիսի շնորհք տուան յայ Առաքելոց և Մարգարէից և Մարտիրոսաց և Այլ ընտրելոց Սրբոց յերկրի աստ և 'ի յերկինս, զի նոքա առաջնորդական հանդիսիւքն և Առաքինական վարուք հաճոյացուք այ. և նոքա պատճառաւ լինին մեզ փրկութեան և կենաց միշտ բարեխօսութեամբ իւրեանց ‖:
Սոցին հանգոյն խօսի և յայլ բազում տեղիս մեր լուսաւորչին մեր, յայտ արարեալ՝ թէ յաւուրց անտի իւրոց կարգեալ և սահմանեալ կային տօնք և յիշատակք սրբոց. այլ թէ որպէս կամ զիարդ, չաւնիմք ինչ յիշատակարան. բայց յանընդհատ աւանդութենէ և 'ի սովորութենէ ազգին իմանամք, թէ բաց 'ի կիւրակէէ և յայլոց տէրունական տօնից, և յաւուրց պահոց՝ որ երկիցս 'ի շաբաթու, և 'ի շաբաթապահոց, և յաղուհացից, մնացեալ աւուրքն էին յիշատակք սրբոց. որպէս և յաւուր յայսմիկ. զոր աներկբայ ընծայեն և յաջորդ կարգաւորութիւնքն:
ՄԻՋԻՆ, կամ ԵՐԿՐՈՐԴ գլխաւոր կարգաւորութեան տօնից և սրբ եկեղեցական բարեկարգութեանց եղև 'ի հայս, որպէս և ազգն ողջոյն գիտէ և դաւանի, 'ի ձեռն սրբոց Թարգմանչաց մերոց, այսինքն սրբոյն Սահակայ պարթևի հայոց հայրապետի, և սրբոյն Մեսրոպայ՝ որ և Մաշտոց վարդապետ, և նոցուն աշակերտաց 'ի հինգերորդ դարու: Առ այս ունիմք և ապացոյց ոչ միայն զգիրս ծիսարանաց, որ յանուն սրբոյն Մեսրոպայ՝ Մաշտոց կոչի, և 'ի հին երկաթագիրս 'ի սկզբան անդ դրոշմեալ կայ անուն Յովհաննու մանդակունւոյ աշակերտի նորին իբրև լրացուցչի, այլ և զկարգ օրհնութեանցն ցուցակի՝ ուր նշանակին անուանք միոյ միոյ յաշակերտաց Թարգմանչաց, կամ ժամագիրս՝ որ սովորաբար մակագրի * Կարգաւորութիւն հասարակաց աղօթից հայաստանեայց եկեղեցւոյ, արարեալ սրբոյն Սահակայ հայրապետին, և Մեսրոպայ վարդապետին. Գիւտայ, և Յովհաննու մանդակունւոյ ‖, այլև զսա-

վր-

վերակացն մակագրութեան հին օրինակաց տօնացու_ցի, որ ունի այսպէս. * Աւետարանացոյց, և Տօնացոյց, և Կարգաւորութիւն, և Հրահանգ տէրու_նական Տօնից. զոր կարգեալ և սահմանեալ է սրբոյն Սահակայ Հայրապետին ||:

Ցայտ է և 'ի կարգէ ազգային պատմութեան, զի է գտանել սրբոյն մեսրոպայ զհայերէն գիր 'ի վերին տուչութենէ, իսկևիսկ ձեռն էարկ 'ի թարգմանութիւն սբ. գրոց մեծն սահակ 'ի խնդրոյ վռամշապհոյ բարեպաշտ արքային հայոց և ընդ եպսաց Յլին. Թարգմանեցան և բազում մատեանք և ճառք սրբոց հարց 'ի ձեռն սահակայ և մեսրոպայ և աշակեր_տաց նց. և զարդարեցան եկեղեցիք հայաստա_նեայց ընդ գրաւորական իմաստիւք և բարեկար_գութբ. վսյ ոչինչ մնաց պակաս 'ի հայաստան ընդ եկեղեցական կարգաց՝ ընդ նմանութեան երևելի աթոռոց իւրաքանչիւր եկեղեցեաց, հռովմայեց_ւոց, աղեքսանդրացւոց, եմացւոց, անտիոքաց_ւոց, և բիւզանդացւոց. զի և յամէ 'ի սոցանէ ժողովեցին ընտրանաւ ազգի ազգի կարգաւորու_թիւս, և յարմարեցին ազգի իւրեանց և հին աւան_դութեանց ազգին 'ի լուսաւորչէ հետէ:

Եւ ընդ կարգաւորութեան տօնից յաւելան բաց 'ի սրբոց առաջնոց, որոց լինէր յիշատակութիւն և յառաջա_գոյն, եղեալքն 'ի լուսաւորչէ անտի մինչև 'ի ժո_ղովն եփեսոսի. զորօրինակ մեծամեծ սրբք ծաղ_կեալք 'ի չորրորդ դարու, և անուանի վկայք նա_հատակեալք 'ի յուլիանոսէ և յարիանոսաց. ընդ_որս և սրբք ազգայինք. ոչ և ընդ փոխել իւրեանց 'ի կենաց՝ ինքեանք իսկ կենդանւոյն տօնելիք՝ սրբն սահակ և սրբն մեսրոպ՝ իսկևիսկ անցին 'ի կարգ տօնացուցի. և ամ ըստ ամէ կատարիւր տօն յիշատա_կի նց փառօք. ոչ գրեն աշակերտաց նց: Նոյնպէս և որ զկնի եղեն սրբք անուանիք յազգին՝ մանա_ւանդ նահատակք, մտին 'ի նոյն կարգ տօնացու_

րակ մարտիրոսաց ընթերցուած մի՛ առ 'ի կարդալ 'ի յիշատակի իւրաքանչիւր վկայից ․ ըստ նմին և մի՛ ճգնաւորի, մի՛ Թղթոյ ․ և Աւ̃ ․ զոր յետոյ ճոխացոյց վկայասէրն ․ և ըստ այսմ նշանակեցաւ յաւելուա֊ ծով ընթերցուած 'ի յետադայ ճաշոցս և 'ի տօ֊ նացոյցս ։

Այս վերջին՝ այն է երրորդ կարգաւորութի տօնից, ընդ նմին և ճաշոցի և տօնացուցի եղև 'ի ձեռն Գրիգորի վկայասէրի, որ և էառ զլրումն յաւուրս շնորհալւոյն տմ̃ սարօք ։ Վս̃ վկայասէրին ունիմք յինքնագիր յիշատակարան 'ի հին ճաշոց լըրացեալ՝ օրինակ զայս, զկնի առաջին աւուր պենտեկոս֊ տէի ․

* Այս ինչ կայ 'ի գիրս ․ և այս է յիշատակարան Տօնից Տէրունականաց, և Սրբոց նոյ, ցուցմամբ աւուրց հռոմի ամսոց ըստ իւրաքանչիւր սրբոց՝ համ֊ գիտմամբ չարչարանաց կատարման, և կմ̃ ըստ խա֊ ղաղական ելից հանգստեան՝ Մարտիրոսաց և Հայրապետաց սրբոց, որք հաճոյացան նոյ նեղ և անձուկ ճանապարհաւն յմ̃ի ։ Զոր Ես Գրիգորիս ծառայ նոյ և Դիտապետ հայաստան ազգիս, համարձակեալ վս̃ սիրոյ Վկայից քմ̃ի, յաւելի 'ի նա֊ խակարգեալ տօնան հռոմի ամսոց՝ ընտրեալ 'ի Տօնամակաց՝ յոքունց զպակասս ․ որ 'ի բազմաց անփոյթ էր լեալ ․ և մեք աշխատեալ՝ զայսպիսի համառօտահաւաք Տօնամակս գրեցաք 'ի պայծա֊ ռութիւն եկեղեցւոյ ․ զոր ընթերցցի 'ի նմա՝ 'ի ժա֊ մու տօնական պատարագին ․ զոր մի ոք աւելորդ վարկցի ։ Զորոց զՎարս քաղաքավարական պատ֊ մութեանց, զոր ոչ գոյր առ մեզ հայ գրով, մեք աշ֊ խատութբ̃ թարգմանեցաք 'ի յունականէն 'ի մերս գիր և բառ ։ Վս̃յ աղաչեմ Սրբովք Վկայիւքս զա֊ մենեսեան առհասարակ, մի անփոյթ առնել զմեր աղետանց երկս աշխատութե, այլ ը̃օրինակել գա֊ ղափարաւ, և գրելով պարհել յոմ̃ ներ եկեղեցիս ․

և անխափան առանց յերկուանալոյ կատարել զկանոն ընթերցուածիս 'ի Տօնս Յիշատակի Սրբոց: Եւ որ ոք գրէ զգիրս զայս, աղաչեմ գրել 'ի գլուխս գրոյն զգոյզն բան յիշատակի մերոյ, և աղօթիւք յիշել 'ի քս զարարօղ գրոյս: Եւ զԳրիգորիս Համանուն իմ և համազգի, որ և գրիչ և յօրինիչ գրոցս, յիշեսջիք 'ի քս. և որք յիշէքդ. յիշեա՛լ լիջիք օրհնութք 'ի տր: Յիշեա՛ տր և ողորմեա՛:

Ես Կիւրակոս տրուպ գիտնական, և անարժան ծառայ այ՝ ծանուցանեմ ձեզ վս որ Կոչակիս Տօնամակի եկեղեցւոյ սբյ, և անձայնւոյ յիշատակի: Ուստի գիտէք, 'ի սկզբանէ հաւատոց մերոց՝ մեր ուղղադաւան ազգիս արամեան որդիացեալք աշակերտութբ սբյն Գրիգորի անձանման Լուսաւորչին մերոյ, համօրէն ամ սրբովք՝ որ եղեն յազգս մեր հաճոյ այ, զայս Գրոյ Եկեղեցւոյ (յն կատարեալ ճաշոցի) անփոյթ արարին վս ժամանակին: Եւ մեծ և անձայնին տօնքն Խաչի կամ Ածածնի, Վկայիցն և որք Հայրապետացն, Հարցն և Ճգնաւորացն, և Կուսանաց վկայիցն՝ անփառաւոր և անկատար և անյարմար լինէր առանց այս Գրոց: Այս հոգին որք ազդեաց որք հայրապետին Գրիգորիսի Ածաւորի և Վկայասէրի. և նոր սկսեալ յօրինեաց զսա ը Ամենայն Տօնից արժանապէս՝ 'ի դէպ սաղմոսիւք և ընթերցուածովք անձախօսիւք: Բայց ոչ 'ի գլուխ աւարտեաց զամ, զոր պարտ և արժան էր Տօնելոյ:

Ապա ինձ՝ որ մեղօք ը նմ էի, և յամ իրս անձայնիս կցորդ, և յորդորիչ և փոյթ յաշխատութիւն հադեւորաց և այլ սիրելեաց, հող եդ 'ի վախճանելն իւրում (որ եղև յամի. 1105. շծդ.) մի անփոյթ առնել զսմանէ, այլ յանկել ընթերցուածովք ը արժանին. զոր և արարի. զի հարկ եդեալ էր մեզ յայլ տօնել զսոսա. և է այսպէս: Քառասուն և

վեց

վեց Տօն (խառն ընթերցուած տօնից) մէջ Հայրա-
պետոն կարգեաց. և երեսուն եօ տրուպս յաւելի.
որ լինին եօթանասուն և վեց. զորս բոլոր տար-
ւոյն բաւական համարեցաք, ընթերցուածովքն
և մարտիրոսօքն ։ (Ձ՛ ՃԻ ընթերցուածքն եղան,
նոյնպէս և վկայաբանութիւնքն պատրաստեցան.
կմ՛ տօնաղադիւք և կցուրդք մարտիրոսաց)։

Իսկ եթէ տարւոյն աւուրքն չլինի բաւական. զի
է տարի՝ որ երկոտասան լաւսին լինի, և է՝ որ ե-
րեքտասան, և տօնքն՝ կարճ տարին յաւելուն,
զաւք զերկուսն 'ի մի տօնեցէք, (եւ և) երեք և
չորս. և այնպէս զընաւն 'ի գլուխ տարէք. զի ԺԲ
հաւատոց մերոց և Տօնք Սրբոց պայծառ է որ կատա-
րին ։ Իսկ զեսկզբնից (կմ՛ զբանքս) սոց և ծածա-
րաց գրեցի, զի մի՛ հայեցիք 'ի ծայլ և յորովայնա-
մոլ կրօնաւորաւնն, և Է նորին կարնչեցէք 'ի կե-
նացն այ, այլ սոց նմանեալ՝ մեծ փափագմամբ
տօնեսջիք ։ Մեք զընթերցուածքն առաւօտապէս
որէշ որէշ եդաք ԺԲ ամսոյն, զի մի՛ աղքատ եղեցի
կարգք եկեղեցւոյ ։

Հարկ և հրաման ունիք յայ՝ զատկաւ յիշատակա-
րանս խրատու, 'ի գիրսն՝ զոր նորոգեցէք, յօրի-
նակկ. ամս և զհոգևոր մն յիշատակ 'ի նոր գիր ։
Եւ 'ի վճ՛ ամի՝ զմեզ զերբեքեանս 'ի նոյն, զմր կա-
թողիկոսն (Գրիգոր Վկայասէր), և զհամանուն
կարևոր եւր գրիգորիս (որ եղև եպս եղիպտոսի),
և զհս զմիւրակոս յիշեսջիք առաջի քմի 'ի մր խոր-
հրդին, և 'ի խորոց սրտէ թողութի խնդրեցէք 'ի
քմէ. և նոյն ինքն յա՛ քո ամենեցուն ողորմեսցի,
և արժանի արասցէ արքայութեն երկնից. որում
փառք յաւիտեանս ԱՄ ։ Սա ինքն է կիւրակոս վէհալ
Թարգմանիչ՝ գործակից վկայասէրին յայսմ ։

Ըրանի՛ թէ երախտագէտ գրիչք լինէին և փոխան-
ցէին զայս յիշատակարան յամ օրինակս, զոր մեք
գտաք յօրինակն ձաշոցի գրելոյ, * 'ի թուականու-

թէ Հայկազեան տումարի ՈՀԹ (այն է ամ. տն 1230), ՚ի լեառն մը լուսաւորչին՝ յանապատն որ կոչի կապոյտ, հրամանաւ պատուհանականն քահանայեցն վարդանայ և սարգսի՝ որ են ՚ի գաւառէն եկեղեցաց, ՚ի գեղջէն որ կոչի Խշոխտա, ՚ի մխիթար անուն գրչէ: Զոր և Լևոն արքայ Հայոց որդի Հեթմոյ՝ յամի. ՉԻԸ. 1279. պարգև է առաքեալ յարևմուտ՝ Հայոց ընակելոց ՚ի փերուժ քաղաք ՚ի յիշատակ եկեղեցւոյ սբ͞յն մատթէոսի աւետարանչի:

Արդ՝ ՚ի հատուածին յիշատակարանէ տոմարի, հանդերձ կարգաւորութ͞ն նորին հին օրինակի ճառցին, և համեմատութ͞ն ͞Է հնագոյն երկաթագիր ճառնգի գրելոյ յառաջ քան զայդ կարգաւորութն, աներկբայ իմանամք զայսպիսի իրս: Նախ՝ թէ թէպէտև ունք սբ͞ց երբեմն այսքանեաց, և հետզհետէ յոլովագունից՝ կատարէին անխափան յազգի մերում ͞Ը առաջին կարգաւորութ͞ն լուսաւորչին, և ͞Ը երկրորդ պայծառութն եղելոյ ՚ի ձեռն թարգմանչաց, բայց ՚ի տօնացուցի տարընթեր անւանց սբ͞ց աւուր աւուր՝ չկային միշտ աւետարանացն և ընթերցուածս առանձին, այլ ՚ի սակաւս ւեթ. և նշանակեալքն ͞Ը նոցին ունէին զկարգացմունս. և այսպէս նաև ճառցն էր աղքատ ընթերցուածովք. ոչ և տեսանեմք ՚ի հնագոյն օրինակի, զի միայն իբր քան, կամ իմն՝ կարգ ընթերցւածոց կայ վ͞ս սբ͞ց. և քանի մի վասն գլխաւոր տէրունականն տօնից, մանաւանդ ծննդեան և զատկի, աղուհացից և յինանց: Իսկ գրիգոր միկայանէր՝ գործակցօք իւրովք հանդերձ՝ յաւել այլ ևս եօթանասուն և վեց. և այնպէս եղեն ͞Ը ամ՝ իբր հարիւր ընթերցուածք սբ͞ց ՚ի տարւոջն. որք ոչ միայն բաւական լինէին վ͞ս միոյ տարւոյ, այլև երբեմն առաւելուլին. զի ՚ի բաց բարձեալ ՚ի միջոցէ տարւոյն զաւուրս կիրակէից և տէրունական տօնից և յինանց, և աղուհացից, և շաբաթապահաց.

հոց, և ամ չորեքշաբաթու և ուրբաթու, յորս ոչ լինի՝ ի մեզ յիշատակ սրբոց, միան աւուրք վասն սրբոց տօնելեաց երրև հարիւրիւ չափ. և ահա նովին չափով են յօրինեալ՝ ի վերջին կարգաւորութեան ընթերցուածք սրբոց. որպէս և տեսաք և տեսանեմք ։

Երկրորդ՝ թէ կարգաւորութիւն Տօնացուցին նոյն է Է կարգաւորութեան Ճաշոցի (որ առ նախնիս Տօնական կոչէր, որպէս ցուցակ տօնից ամի ամի. որպէս յիշէ և կամրջաձորեցին սամուէլ). զի տօնացոյցն է երբ ցանկ ճաշոցի, և ճաշոցն է հանդիսարան տօնացուցի. վասն զոր ինչ յաւել վկայաբանս՝ ի ճաշոցն, նմին այնուհետև նշանակեցաւ՝ ի տօնացուցի, որպէս որ ինչ կարգալին է՝ ի ժամ ճաշոյեց կամ՝ ի պատարագի. աւանդի և ճաշոցն յայտ առնէ զգիրս ճաշոյից. որպէս և տօնացոյցն զցանկ պաշտամանց աւուր աւուր. և ըստ նմին յարմարութեան նշանակեցան և այլ եւրք ըստ աւուր պատշաճի յառաւօտեան և յերեկոյեան ժամու. որպէս շարականք, աղէլուք, կամ թագաւորք, մեսեդիք, կցորդք են. յորոց ինչ ինչ և յառաջագոյն էր կարգեալ, և ինչ ինչ հետ զհետէ յօրինեցաւ՝ յաւուրց անտի թարգմանչաց մինչև՝ ի շնորհալին և՝ ի լամբրոնացին ։

Երրորդ՝ թէ շնորհալին իւրովք գործակցօք մինչև՝ ի լամբրոնացին՝ եղև հանդիսացուցիչ կարգաւորութեան վկայաբանից. և զոր ինչ բարեզարդութիւն յաւել՝ ի նա՝ ոչ էր նոր կարգաւորութիւն, այլ հաստատութիւն նախընթաց կարգաւորութեանց. և այնպէս նոյնն մնաց յետնոց դարս անյեղլի. մինչ զի թէպէտև կիլիկեցիք փորձեցին բազում հնարիւք այլաձևել ինչ ինչ, բայց ոչ եղիտ տեղի յաջողին ։

Իսկ շնորհալւոյն շնորհքն յայտնի են՝ ի գործոց նր և՝ ի յիշատակարանաց իւրաքանչիւր գրոց պաշտամանց. զորօրինակ՝ ի տօնացուցէ, ՝ի ճաշոցէ, ՝ի շարականէ, և՝ ի ժամագրոց, յորս փայլեն բարեզարդութիւնք նր առ՝ ի փառաւոր առնել զպաշտօնն

կարգեցաւ տօն նոր 'ի տօնացուցի՝ որպէս վերջին 'ի Հարս և 'ի վերջս . և այժմ տօնելի է նմա եղաւ 'ի կարգ յայսմաւուրաց և արժանին յիշատակաց Լամ-բրոնացին, 'ի փետր . 19 . ուր գրի վարք Ներսէ-սեանց է մեսրոպեանց՝ ըստ հին օրինակի մր կիրա-կոսին . իսկ յայլ օրինակս յօգոստ . 9 . դնի . * Յի-շատակ մբ հայրապետացն մերոց գրիգորիսեանցն և ներսիսեանցն ||։ Յորմէ և անդր ոչինչ տօն կամ յիշատակ յաւելաւ յազգի մերում . և ոչ այլ կար-գաւորութիւն եղև կամ պարտի լինել 'ի տօնացուցի . վասնզի զոր ինչ ոք արար կամ առնէ ինչ յայնմ հետէ, է նորաձևութիւն և օտարութիւն յաւանդութէ հարցն մերոց սրբոց ։

## ԳԼ. Է ։

### Տօնապատճառք ։

Զայս անուն կրեն գիրք ոմանց ոմանց 'ի վար-դապետաց, յորս աւանդին պատճառք տօ-նից, առաւել մրունականաց, ցուցմամբ հնութե-նց, և բացադրութե խորհրդոց նոցին . այլ և դի-տաւորութիւն աւուրց առաջաւորաց և քառասնոր-դաց և այլ պահոց ։ Եւ արդարև եթէ ըստ արժան-ւոյն յօրինեալ գտցի գիրք այդպիսի, մեծապէս արդիւնաւոր լինի գործն և մր գործոյն . որպէս և յայտ է ամ տօնասիրաց՝ որք փափագեն խելամուտ լինել պատճառաց և խորհրդոց տօնից . ապա թէ ոչ՝ անպիտան ճանաչի գործն և գործելին ։

'Ի գովելի մասին նախ զառաջինն յօրինեցաւ գործ այսպիսի իմաստուն բանիւք 'ի Գրիգորիսէ արշա-րունեաց եպսէ 'ի վախճան եօթներորդ դարու և 'ի սկիզբն ութերորդին՝ 'ի խնդրոյ տն վահանայ պատրկի՝ պահլաւեան կամսարականի, անուանեալ

Մէկ-

Մեկնութիւն ընթերցուածոց. զորոյ զՏէրն օրինակ նր-կաթագիր ունիմք 'ի ձեռին. ուր վայելուչ խորհր-դածութիւն առաջի դնի խորհրդոյ գլխաւոր տօնից և պահոց, և ընթերցուածոց նոյն աւուրց. որէշ 'ի պարզ մեկնութեան անտի մարգարէական ընթերց-ուածոց եղելոց 'ի գիրս կիւրղի նէմացւոյ, որ առաջադրեալ է յանուն արշարունւոյն 'ի վախճան կոչման ընծայութեան. զի երկրորդիս այս հեղինակ յետին ոք է, և գուցէ գանձակեցին յովհան. զոր-մէ տես 'ի ծանօթութեան պատմ. հյ. հատ. Գ. երես. 562 = 564:

Խոհական իմաստութիւն արշարունւոյն՝ բաց յայ-լոց բանից իւրոց, հանդիսանայ և յայնմ, զի 'ի խօսելն՝ թէ գլխաւորքն 'ի տէրունական տօնս են երկոքին տօնք, ծնունդ և յարութիւն, որոց և կարգ-ճրագալուցի է յար և նման, պարզապէս յայտնա-բանէ զհնութիւն սովորութեան ազգին, առանց արտա-դնելոյ սովորութեան յունաց կամ այլոց եկեղեցեաց: Ուր եթէ և այլք նովին ոճով ընթանային 'ի բանս, չլինէր ինչ հակառակութիւն:

Այլ 'ի տասներորդ դարու՝ սամուէլ կամրջաձո-րեցի յերասխաձորոյ, 'ի խնդրոյ անանիայի արշա-րունեաց եպ̃ի արար զայլ գործ՝ յաղագս տօնից տէրունականաց, գովանալով ինչ ինչ 'ի բանից գրի-գորի արշարունւոյ, և այլ ինչ ինչ պատճառա-լով յիւրմէ՝ հոգւով հկ̃կուն Ըդդէմ յունաց. վ̃այ է տեսանել 'ի բանս սորա այնպիսի ալեկոծութիւն, մինչև կամել Ը̃ իւր ընկզմել և զայլս, և կրկին մկր-տել զյոյնս, ոչ̃ ոմանք 'ի նոցանէ առ ատելութե̃ ակնեալ էին առնել Ը̃ հայս. և զի՞նչ տպաւղ յայս-պիսի բանից 'ի մէջ քրիստոնէից, եթէ ոչ պառակ-տումն միոյ հօտին քր̃ի հերձուածով, և պատա-ռումն անկար պատմուճանին քր̃ի, ո̃ եկեղեցւոյ:

Յետ այսորիկ իբր 'ի վախճան ժբ̃ դարուն յով-հաննէս վ̃դ̃ող ոմն գանձակեցի ձեռն էարկ գրել

զայլ

զայլ ընդարձակ մատեան, եթէ իբրև մեկնութիւն ընթերցուածոց, և եթէ իբրև տօնապատճառ, մակագրելով՝ Պատճառք տօնից, առ իւրաքանչիւր տէրունական տօնս, առ տօնս եկեղեցւոյ և խաչի, առ սուրբ տօնս, այլ և առ գլխաւոր կիւրակէս և առ աւուրս պահոց, խառն ՚ի պիտանի և յանպիտան բանից. զի ոչ միայն պարզաբանելով իմն ընդարձակէ զպիտանի բանս արշարունւոյն, այլև առաւելութեամբ երկրորդէ զանպիտանս ՚ի բանից կամրջաձորեցւոյն. ոչ միայն քաղէ բազում ինչ պատմական ՚ի գրոց նախնի հարց, այլ և միջնոց և վերջնոց՝ մինչև ՚ի լամբրոնացին և ՚ի վանականն և ՚ի վարդանն, այլև կարկատէ յոլովագոյն իրս ՚ի զրուցաց վիպաց հասակակցաց իւրոց, ևս և յաւանդութեանց ռամկաց:

Եւ որ ձեծն է, եթէ միօրինակ պահէր առ գրիչս բան հեղինակին, չէր ինչ. այլ տեսանեմք, զի կամ երկու և երեք տեսակք նորին գործոյն ՚ի հին և ՚ի նոր օրինակս (յամենեւին տեանց անուանն հեղինակի՝) բազմօք տարբեր, և աւելի և պակաս բանիւք. և չարագոյնն այն է, զի ՚ի յետին օրինակս լաւագոյնքն ՚ի բանից պակասին, և յոռեգոյնքն առաւելուն. յայտ է՝ թէ ՚ի տխմար, միանգամայն և ՚ի հերետիկոսակերպ արանց անկեալ ՚ի ձեռս, հետ զհետէ այլափոխեալ է գործն:

Զայսորիկ ընդհանրապէս ևեթ շատ լիցի նշանակել, զի ոչ կամիմք իջանել ՚ի մանրամասունս. վն զի զի՞նչ շահ յանշահ բանից, և ՚ի դեդերանաց ՚ի նիւթս բանակռուութեն ՚ի կործանումն լսողաց. մանաւանդ զի և առ յոյնս ոչ պակասին, այլ առաւելուն այսպիսի դիմախօսութիւնք ընդդէմ տօնական սովորութեանց և պահոց հայոց. և ՚ի նոցանէ փոխանցեալ չարախօսութիւնք առ այլս. զորովք լուեալ է բաւական զգօնութեն:

Այն յայտ իսկ է, զի մեծ ոչ է խուովութեն, այլ՝

խա_

խաղաղութեան. և տօնք և պաշտամունք և առ-
ավօրութիւնք եկեղեցեաց ոչ են 'ի դէպս՝ եղբայ-
րասիրութեան, այլ՝ անօրէնութեան. այլ քանզի
սատանայ նախանձի ը̅ պաշտօնն այ̅ և ընդ փառս
նր̅, սերմանէ անդադար զորոմն իւր չար 'ի մէջ
քրիստոնէից, առ 'ի քաղել նաև 'ի բարի ագարա-
կէ նիւթս գեհենոյն: Եթէ ոք կամի լիով հասու
լինել բանիցս, զԼամբրոնացւոյն ընթերցցի զատեն-
բանութի̅՝ հոգւով այ̅ բարբառեալ:
Կամէի բերել աստ բազմապատիկ բանս վս̅ սոցին
երեաց 'ի սբ̅ վրդպաց մերոց և յունաց և հռովմայեց-
ւոց, 'ի ցուցանել՝ թէ յինչ խորհուրդ և որով օգ-
ւով կարգեցան տօնք սմ̅ 'ի փառս այ̅ և 'ի պատուի̅
սմ̅ սբ̅ց նր̅ և 'ի պայծառութի̅ և 'ի ցնծութի̅ եկե-
ղեցւոյ, և թէ քանի խոտորին 'ի հեռոց առաջին
սբ̅ վրդպաց՝ որք փոխանակ զայսոսիկ քարոզելոյ,
յօտարոտի բանս կրթին. այլ աւելորդ համարե-
ցայ զկայսոնիքան երկարօրդել: Զի զայդ ինքնին ընտ-
րեն տօնասէրք և վկայասէրք հոգւով անձպաշտու-
թե̅, ը̅ չափու գեղեցիկ տենչանաց առ յանչափն
տենչալին վերբերութե̅՝ մշտափափաք կարօտով
ժամանս լինելոյ յօթևանս երկնաւորս՝ պարակցու̅
ամենաժողով տօնի երանելեացն երկնաքաղաքա-
ցեաց՝ հրեշտակաց, և մարդկան հրեշտակացելոց.
որոց լիցի և մեզ դասակից լինել յանեզրական և
յանսպառ 'ի կեանս՝ շնորհօք և մարդասիրու̅
տն̅ մերոյ և փրկչին յս̅ի քս̅ի. ընդ որում հօր ամե-
նակալի և ամենասբ̅ հոգւոյն տացուք գոհութի̅
և փառս՝ երկրպագութե̅ հոգւոյ յաւիտեանս յա-
ւիտենից. Ամէն:

# ՎԱԽՃԱՆ

Գործոյս:

# ՑԱՆԿ

## գլխոց Գ.Ա. Հատորոյ։

---

## ՏՕՆԱԿԱՆ ՃԱՌՔ

# ՅԱՒԵԼՈՒԱԾ

Իբրև ներածութիւն և բովանդակութիւն գործոյս :



Գ.

ՎԱԽՃԱՆ

Հատորիս ։

